# ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8

ՕԳՈՍՏՈՍ, 1980

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



Издательство ЦК КП Армении. «Ленинакан», 1980.



# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՂԲՅՈՒՐՈՅՈՒՄ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆՈՒՄ, ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴՈՒՄ

# ՍՍՀՄ-Ի ԵՎ ԳՖՀ-Ի ՂԵԿԱՎԱՐՆԵՐԻ ԲԱՆԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, քննարկելով ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ա. Ն. Կոսիգինի, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ արտաքին գործերի մինիստր Ա. Ա. Գրոմիկոյի և Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության ֆեդերալ կանցլեր Հ. Շմիդտի ու ֆեդերալ կանցլերի տեղակալ, արտաքին գործերի մինիստր Հ. Դ. Գենշերի բանակցությունների արդյունքները, ամբողջովին ու լիովին հավանություն են տալիս Լ. Ի. Բրեժնևի գլխավորած սովետական պատվիրակության գործունեությանը: Բանակցությունների արդյունքները լուրջ ներդրում են խաղաղության ու անվտանգության ամրապնդման, միջազգային կլիմայի առողջացման, Սովետական Միության և ԳՖՀ-ի համագործակցության հետագա զարգացման գործում:

Առանձնահատուկ նշանակություն ունի այն փաստը, որ, չնայած միջազգային դրության բարդացմանը և գոյություն ունեցող տարակարծությունների առկայությանը մի շարք հարցերում, բանակցությունների շնորհիվ երկու կողմերը ամենայն որոշակիությամբ հայտարարեցին, որ լարվածության թուլացումը համարում են անհրաժեշտ, հնարավոր ու օգտակար և արտահայտեցին իրենց կամքը՝ ըստ ամենայնի նպաստելու, որպեսզի այն լինի միջազգային հարաբերությունների առաջատար միտումը:

Հետևելով լենինյան արտաքին քաղաքական փորձված կուրսին և եղբայրական սոցիալիստական պետությունների համաձայնեցված գծին՝ սովետական պատվիրակությունը, արտահայտելով սովետական ժողովրդի կամքը, ուշադրության կենտրոնում էր դրել խաղաղության ու միջազգային անվտանգության ամրապնդման, սպառազինությունների մրցավազքի սանձահարման և զինաթափման հարցերը:

Լ. Ի. Բրեժնևը Սովետական Միության անունից առաջ քաշեց մի շարք նոր գաղափարներ և կոնկրետ առաջարկություններ, որոնք նպատակամղված են պայմանավորվածությունների ձեռքբերմանը տվյալ հարցերի, այդ թվում՝

միջին հեռավորության հրթիռամիջուկային զենքին վերաբերող հարցերի շուրջ:

Հավաստելով ավելի վաղ շարադրված իր դիրքավորումը Եվրոպայում միջին հեռավորության զենքի հարցի լուծման առավել ճիշտ ուղիների նկատմամբ, սովետական կողմը, ղեկավարվելով խաղաղության ու անվտանգության լայն շահերով, առաջարկեց միջին հեռավորության հրթիռամիջուկային զենքի հարցի քննարկմանը ձեռնամուխ լինել, այն միաժամանակ և օրգանապես շաղկապելով առաջավոր բազավորման ամերիկյան միջուկային միջոցների հարցի հետ: Ընդ որում, նկատի է առնվում, որ այդ հարցերի շուրջ հնարավոր պայմանավորվածությունները կարող են պրակտիկայում իրականացվել միայն ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման սովետա-ամերիկյան պայմանագրի (ՍՍՍ—2) ուժի մեջ մտնելուց հետո:

Սովետական կողմը մի շարք կոնկրետ նկատառումներ շարադրեց նաև Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերն ու սպառազինությունները փոխադարձաբար կրճատելու Վիեննայի բանակցությունների կապակցությամբ՝ այդ առաջարկությունների հիման վրա փոխադարձաբար ընդունելի որոշումների մշակման համար նոր ազդակ տալու նպատակով:

Սովետական Միությունում սպասում են, որ արևմտյան պետությունների ղեկավարությունները պատասխանատվության զգացում կցուցաբերեն և բարյացակամության ոգով կպատասխանեն սովետական նոր նախաձեռնություններին, որոնք բխում են Եվրոպայի և ամբողջ աշխարհի ժողովուրդների կենսական շահերից:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը գոհունակություն են հայտնում բանակցությունների ընթացքում ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի երկկողմ հարաբերություններին վերաբերող հարցերի քննարկման արդյունքների առթիվ: Կողմերի այն հավաստումը, որ իրենց քաղաքականությունն այսուհետ ևս մշտապես և անշեղորեն կհիմնվի կնքված պայմանագրերի ու համաձայնագրերի, նախ և առաջ 1970 թվականի օգոստոսի 12-ի պայմանագրի վրա, հստակ կողմնորոշիչ է հանդիսանում երկու պետությունների կոնստրուկտիվ համագործակցության զարգացման համար:

Էկոնոմիկայի և արդյունաբերության բնագավառում ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի համագործակցության հիմնական ուղղությունների երկարաժամկետ ծրագիրը, որը բանակցությունների ընթացքում ստորագրվեց Մոսկվայում, պատկառելի ավանդ է տնտեսական փոխադարձ կապերի կայունացման և դրանով իսկ նրանց քաղաքական հարաբերությունների նյութական հիմքի ամրապնդման գործում:

Համապատասխան սովետական գերատեսչություններին ու կազմակերպություններին հանձնարարվում է անհրաժեշտ բոլոր միջոցները ձեռնարկել ընդունված ծրագրի պրակտիկ կենսագործման համար: Դրա արդյունավետ կենսագործումը, անշուշտ, կոնստրուկտիվ մոտեցում է պահանջում նաև ԳՖՀ-ի կողմից:

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

**1980 թվականի հուլիսի 8-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի պլենումը:**

**Պլենումը լսեց Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ զեկուցումը Հայաստանի կոմունիստական կուսակցության հերթական՝ XXVII համագումարի հրավիրման մասին:**

**Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը այդ հարցի վերաբերյալ ընդունեց որոշում:**

**Դրանով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը:**

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ 1980 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒԼԻՍԻ 8-Ի ՈՐՈՇՈՒՄԸ

**1. Հայաստանի կոմունիստական կուսակցության հերթական՝ XXVII համագումարը հրավիրել 1981 թվականի հունվարի 22-ին:**

**2. Հաստատել համագումարի հետևյալ օրակարգը՝**

**1) Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը:**
**Զեկուցող՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյան:**

**2) Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը:**
**Զեկուցող՝ Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի նախագահ ընկ. Գ. Ս. Փահլևանյան:**

**3) Հայաստանի կոմկուսի ղեկավար մարմինների ընտրություններ:**

**4) ՍՄԿԿ XXVI համագումարի պատգամավորների ընտրություններ:**

**3. Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVII համագումարի ներկայացուցչության նորման սահմանել՝ մեկ պատգամավոր կուսակցության 180 անդամից:**

**4. Հայաստանի կոմկուսի XXVII համագումարի պատգամավորները ընտրվում են փակ (գաղտնի) քվեարկությամբ քաղաքային, շրջանային կուսակցական կոնֆերանսներում:**

# ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՐԴԻ ԲՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ

**Վ. Գ. ԹՈՐՈՍՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԲՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆՆ ապրում է մի հեղա-
փոխություն, որը, սկսված լինելով արդեն XIX—XX
դարերի սահմանագծում, ստիպեց վճռականորեն վերանայել ավանդական
պատկերացումները ո՛չ միայն մեզ շրջապատող աշխարհի մասին, այլև, որ
պակաս կարևոր չէ, աշխարհի բուն ճանաչողության մասին:
XIX դարի վերջերին թվում էր, թե ֆիզիկայի՝ բնագիտության այդ առաջա-
տար բնագավառի, զարգացումն ընդհուպ մոտեցել է սպառիչ, բացարձակ ու
միանշանակ գիտության իդեալին: 1900 թվականին հանդես գալով ֆիզիկային
նվիրված համաշխարհային կոնգրեսում, նիստի նախագահ Վ. Թոմպսոն-Կել-
վինը վստահություն հայտնեց, որ ֆիզիկոսները XX դարը թևակոխում են՝
գործնականորեն մինչև վերջ կառուցելով իրենց գիտության բացառիկ կուռ
շենքը, այնպես որ, ֆիզիկոսների մնացած սերունդներին մնում է լոկ ճշգրտել
համաշխարհային կոնստանտները: Ճիշտ է, Վ. Թոմպսոնը նշել է նաև երկու
աննշան ամպիկներ, որոնք պահպանվել են դասական ֆիզիկայի շենքի վրա՝
բացարձակ սև մարմնի ճառագայթման լուսապատկերը և Մայքելսոն-Մորլիի
նշանավոր փորձի արդյունքը բացատրելու նրա անկարողությունը:
Անցավ ընդամենը մի քանի տարի, և այդ երկու ամպիկներից ճայթեցին
երկու մեծ փոթորիկներ՝ հարաբերականության տեսությունը և քվանտային մե-
խանիկան: Քվանտային մեխանիկայի, հարաբերականության հատուկ տեսու-
թյան և հարաբերականության ընդհանուր տեսության ու դրանց ժամանակա-
կից վերափոխությունների առաջացումն ու հետագա զարգացումը լրիվ ցրեցին
նայիվ, մետաֆիզիկական մատերիալիզմի այն պատրանքը, թե բնագիտական
իմացությունը տալիս է օբյեկտիվ իրականության բացարձակ, վերջնական և
ընդմիշտ բառացի պատկերը, «պատճենը»: XX դարի գիտության մեջ աշխարհը
դադարեց ժամացույցի մեխանիզմի նման մի բան լինելուց, որի աշխատանքը
կարելի է մեկընդմիշտ կանխատեսել բոլոր մանրամասներով:
Նշված իրավիճակը պահանջեց փիլիսոփայական խոր իմաստավորում: Եթե
անտիկ դարաշրջանում փիլիսոփայությունը զբաղեցնում էր բնագիտության
տեղը (բնագիտության՝ որպես գիտության բացակայության հետևանքով), իսկ
նոր ժամանակների գիտությունը, վճռականորեն ազատագրվելով բնափիլիսո-
փայական ազդեցություններից, սահմանազատվում էր փիլիսոփայությունից,
ամբողջովին ապավինելով մեխանիկայի ուժին ու մաթեմատիկական խստու-
թյանը, ապա XX դարում իմացության մետաֆիզիկական, մեխանիստական կա-
նոնների բուն ճգնաժամը գիտության փիլիսոփայական հիմունքների վերլու-
ծությունը դիմելն անխուսափելի դարձրեց: Բնագիտության մեջ տեղի ունեցած
հեղափոխությունն ստիպեց գիտակցել, թե փիլիսոփայական նախադրյալներն



ու դրույթները ինչպիսի նշանակալիությամբ են որոշում ինչպես բնագիտական
հետազոտության բնույթը, այնպես էլ դրա արդյունքների իմաստավորումը:
Ստեղծված իրավիճակը հանճարեղ կերպով ներկայացրել է Վ. Ի. Լենինը:
Իր Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ աշխատությունում նա վերլուծել է
բնագիտության նոր առանձնահատկությունները, դրա զարգացման հիմնական
միտումները, բացահայտել է բնագիտության մեջ ծագած պրոբլեմների իմա-
ցաբանական արմատները: Իմացաբանական սկզբունքորեն նոր իրավիճակը
բնագիտության մեջ չէր կարող հող չստեղծել զանազան տեսակի իդեալիստա-
կան հետևությունների համար, որոնք բնագիտության մեջ կատարված հեղա-
փոխության անխուսափելի հետևանքներն էին՝ դրա արդյունքների դիալեկտի-
կան իմաստավորման անկարողության պայմաններում: «Ֆիզիկոսները դեպի
իդեալիզմ գլորվեցին գլխավորապես այն պատճառով, որ չգիտեին դիալեկտի-
կան»,— նկատել է Լենինը դեռ մեր դարասկզբին:
Փիլիսոփայական ուղղությունների պայքարի խիստ սրումը, որը XX դարի
բնագիտության մեջ կատարված հեղափոխական հեղաշրջման հետևանք էր և
որը բնորոշ էր մեր դարի բնագիտության ամբողջ զարգացմանը, վկայում է,
որ կուսակցականության սկզբունքն ամենևին էլ խորթ, իսկ առավել ևս բնա-
գիտությանը պարտադրված բան չէ: Հարկ է նշել, որ փիլիսոփայության կու-
սակցականության սկզբունքի նկատմամբ բնախույզների մի որոշ մասի կաս-
կածոտ, իսկ երբեմն էլ նիհիլիստական վերաբերմունքը պայմանավորված է
ամենից առաջ նրանով, որ նրանք ծանոթ են միայն այդ սկզբունքի պարզու-
նակ, խեղաթյուրված ձևակերպմանը, ըստ որի գիտության կուսակցականու-
թյունը նշանակում է ուղղակի ծառայություն այս կամ այն դասակարգին: Այդ-
պիսի ուղղագիծ, պրիմիտիվ ձևակերպումն ընդունելու դեպքում, որը, դժբախ-
տաբար, որոշ շրջանում տարածված էր մեր փիլիսոփայության մեջ, միանգա-
մայն տեղին երկյուղ է առաջանում, որ կուսակցականության սկզբունքը հա-
կասում է գիտական օբյեկտիվության պահանջին, օրինականացնում է մի-
տումնավորությունը, գիտական ճշմարտության որոնումներում կաշկանդում է
հետազոտողին, պարտավորեցնելով բնագիտական հետազոտության կոնկրետ
արդյունքների դասակարգային ուղղվածության գրեթե ակնառու դրսևորում-
ների:
Վ. Ի. Լենինը շեշտում էր, որ փիլիսոփայության մեջ կարող է լինել միայն
երկու կուսակցություն, երկու լագեր՝ մատերիալիստների և իդեալիստների:
Այլ բան է, երբ, ինչպես Լենինն է բացահայտել, գիտական տեսությունների
ստեղծման և դրանց հետագա իմաստավորման պրոցեսում մատերիալիստա-
կան կամ իդեալիստական փիլիսոփայական դրույթների ընդունումը (լինի գի-
տակցաբար, թե՝ տարերային) օրինաչափորեն բնագիտական և փիլիսոփա-
յական հետևությունները ի սպաս է դնում առաջադեմ, հեղափոխական կամ թե
հետադիմական, իր դարն ապրած դասակարգին:
Փիլիսոփայական կուսակցությունների բաժանվելն սկսվում է փիլիսոփա-
յության հիմնական հարցի, ավելի ճիշտ՝ նրա առաջին կողմի, այս կամ այն
լուծումից, իսկ այդ հարցի էությունն այն է, թե որն է առաջնային. մատերիա՞ն,
թե՞ գիտակցությունը, գաղափարը: Փիլիսոփայության հիմնական հարցի առա-
ջին կողմով սերտորեն, թեպետև ոչ միշտ, բացահայտորեն պայմանավորված
է նրա երկրորդ կողմը՝ աշխարհի ճանաչելիության հարցի լուծումը: Ակնհայտ
է, որ աշխարհի ճանաչելիության հարցի սկզբունքային լուծումը զգալի չափով
որոշում է բնագիտական ամեն մի հետազոտության դրվածքն ու ընթացքը և,
առհասարակ, կողմնորոշում է գիտնականի ողջ բնագիտական գործունեությունը:
Ի՞նչ է շահում բնագիտական հետազոտությունը մատերիալիստական ելա-
կետային դրույթներն ընդունելու դեպքում և ինչո՞ւ անցումը իդեալիստական
փիլիսոփայական դիրքերին արգելակում է բնագիտական որոնումները: Այդ
հարցի պատասխանը ուրվագծվում է արդեն XX դարի բնագիտության զար-
գացման համառոտ վերլուծությամբ:
Արդի բնագիտական տեսությունների համար բնորոշ են շեշտված մաթե-
մատիկանացումը և ձևականացումը, աբստրակցիաների տեսակարար կշռի
աճը, որոնք անշեղորեն հեռանում են գիտական մոդելների ակներևության

ավանդական իդեալից: Ժամանակակից բնագիտության մեջ ավելի ու ավելի է հարկ լինում հաշվի առնել այն, որ հետազոտողը գործ ունի ոչ թե անմիջականորեն օբյեկտիվ ռեալության հետ, այլ նրա տեսական պատկերացումների, բնության կառուցվածքային հարաբերակցությունների մաթեմատիկական արտահայտությունների հետ: Նույնիսկ հետազոտության փորձարարական փուլում, դիտումներում ու փորձերում ժամանակակից գիտության մեջ առավել հազվադեպ է վիճակվում հանդիպել «զուտ» փաստերի, երևույթների, քանի որ դրանց մասին սովորաբար հարկ է լինում դատել կողմնակի հատկանիշներով (օրինակ, Վիլսոնի խցիկում տրեկներից եզրակացություններ են արվում տարրական մասնիկների տեսակի, նրանց լիցքի, մասսայի, իմպուլսի, հետագծի մասին): Բնագիտական փաստերի թվին են դասվում այն դիտարկումների արդյունքները, որոնք մեկնաբանվում են տվյալ փուլում գիտության տրամադրության տակ եղած տեսական գիտելիքի սիստեմում (այսպես, մենք խոսում ենք Տիեզերքի ընդլայնման փաստի մասին՝ տիեզերական օբյեկտների լուսապատկերներում եղած կարմիր տեղաշարժման հարաբերականության ընդհանուր տեսության շրջանակներում համապատասխան մեկնաբանման հիման վրա):

Եթե գիտության մետաֆիզիկական իդեալները պահանջում էին իմացության սուբյեկտը դուրս մղել իմացության տեսությունից, գիտական արդյունքները մշտապես «զտել» սուբյեկտի ազդեցությունից, ապա XX դարում հարկ եղավ ոչ թե պարզապես հաշտվել այդպիսի «զուտ» գիտելիքի անհնարինության հետ, այլև գիտակցել, որ սուբյեկտը իմացության անբաժանելի բաղադրամասն է ճանաչողական պրոցեսի բոլոր փուլերում, սկսած արդեն իմացության օբյեկտի բուն առանձնացումից:

Սակայն ստացվում էր այնպես, որ իմացության սուբյեկտի խիստ աճած դերը բացարձականացնելը XX դարի մի շարք խոշոր բնախույզների հանգեցրել է այն հետևության, որ բնական գիտությունները, ըստ էության, այլևս ոչ մի առնչություն չունեն օբյեկտիվ ռեալության հետ, ավելի ու ավելի նմանվելով, ասենք, շախմատի խաղին. մենք ինքներս ենք հորինում խաղի կանոնները և կարող ենք այնքան հրապուրվել այդ խաղում ծագող հարաբերակցությունների ուսումնասիրմամբ, որ մեզ համար ստեղծվում է այն բանը մոռանալու վտանգը, թե գործ ունենք խաղի և ոչ թե իրական աշխարհի հետ: (Հետաքրքրական է, որ իբրև օրինակ բերվում էր հարաբերականության տեսությունը, որի արդյունքները, չնայած տեսության մաթեմատիկական անթերիությանն ու համոզկերությանը, հակասության մեջ էին ընկնում «ողջամտության» հետ): Վերը բերված դատողություններից բխում է մի անխուսափելի հետևություն, որ մենք ոչ թե բացահայտում ենք բնության օբյեկտիվ օրենքները, այլ բնությանն ենք վերագրում, պարտադրում այն սուբյեկտիվ արդյունքները, որոնք ստացվում են մեր մաթեմատիկական հաշվարկներում և որոնք մենք կամայականորեն խցկում ենք նկարագրության ընտրված սխեմայի «պրոկրուստյան մահիճը» («մատերիան չքացավ, մնացին հավասարումները»):

Այս տեսակետը, որ 30-ական թվականներին ձևակերպել է անգլիացի ականավոր ֆիզիկոս և աստղաֆիզիկոս Ա. Էդինգտոնը, բավականին զգալի ազդեցություն է ունեցել արևմտյան մի ամբողջ շարք բնախույզների հայացքների և բուն գիտական գործունեության վրա, բնախույզներ, որոնք ղեկավարվում էին Ա. Էդինգտոնի այն հետևությամբ, որ XX դարի գիտությունն իր իբր մտահայեցողական, սուբյեկտիվ բնույթի հետևանքով «ձերբազատվել է փորձի կապանքներից» և ֆիզիկական տեսությունների հետագա զարգացումը կարող է ընթանալ խիստ ապրիորի, առանց փորձնական տվյալներին ուշադրություն դարձնելու: Հետաքրքրությունից զուրկ չէ, որ Էդինգտոնն ինքը փորձ կատարեց «ապրիորի» կերպով ստեղծել մի «հիմնարար տեսություն», որը պետք է միավորեր բոլոր համաշխարհային կոնստանտները: Բնորոշ է, սակայն, ոչ միայն այն, որ այդ փորձն անհաջող եղավ, այլև այն, որ, գերի մնալով իր սուբյեկտիվ-իդեալիստական ապրիորիստական փիլիսոփայության դոկտրինային, Ա. Էդինգտոնը բազմիցս ստիպված է եղել դիմելու «տվյալները հարմարացնելու» մեթոդին, որը աննախադեպ է այդ կարգի գիտնականի համար:



«Ապրիորիզմի» անհաջողությունները, որոնք հաջորդեցին մաթեմատիկական մեթոդների հաջողություններով չափից դուրս ոգևորվելուն, 50—60-ական թվականներին հանգեցրին այն բանին, որ լրջորեն խարխլվեցին սուբյեկտիվ-իդեալիստական դիրքերը: Հազիվ թե մեր օրերում գտնվի մի ֆիզիկոս, որն ուղղակի պնդի, թե ֆիզիկական տեսությունները ոչ մի առնչություն չունեն իրականության հետ: Դրա հետ մեկտեղ դեռևս հազվադեպ չեն այնպիսի պնդումները, որ բնագիտական տեսությունները կրում են բավական պայմանական բնույթ և որ մեկը մյուսին հաջորդող տեսությունների ու կոնցեպցիաների թվում նորերը բնավ ավելի խոր կամ ավելի ճիշտ չեն նախորդներից, այլ պարզապես ավելի հարմար են: Նման հայացքները բնորոշ են այն գիտնականներին, որոնք կրել են նեոպոզիտիվիզմի փիլիսոփայության ազդեցությունը, որը միմիայն ժամանակակից ճյուղավորում է սուբյեկտիվ իդեալիզմի ընդհանուր հոսանքում: Թեև սկզբում նեոպոզիտիվիզմի փիլիսոփայությունը շատ բնախույզների հրապուրում էր թվացող տրամաբանությամբ, դեպի խիկական գիտականությունն ունեցած ձգտումով (օրինակ, ոչ դիտարկելի մեծությունները գիտությունից դուրս վանելու պահանջում), շուտով այն երևան հանեց իր սահմանափակությունը, բնագիտության իմացաբանական պրոբլեմները լուծելու անկարողությունը, քանի որ գիտության ողջ փիլիսոփայությունը նեոպոզիտիվիզմը հանգեցնում էր գիտության մեջ փորձի տվյալներն «արձանագրելու առաջարկություններով» սահմանափակվելու պահանջին, իսկ գիտական տեսությունները դիտել լոկ որպես այդ տվյալները մեզ համար առավել հարմար (ընդսմին միանգամայն պայմանական) ձևի մեջ միավորելու փորձերի արդյունք:

Գիտականության հավակնող սուբյեկտիվ իդեալիզմը ի վիճակի չեղավ խելամտորեն բացատրելու օբյեկտիվ աշխարհի հետազոտության հաջողությունները, որոնք հաջորդեցին «տատանումների» շրջանը հաղթահարելուց հետո: Այս առումով որոշ գիտնականների համար անսպասելիորեն սկսեց ավելի հրապուրիչ թվալ օբյեկտիվ իդեալիզմի փիլիսոփայությունը, որի դասական (Պլատոնի) գիծն այն է, որ չնայած ընդունվում է աշխարհի ռեալ, օբյեկտիվ (սուբյեկտից անկախ) գոյությունը, դրա հետ մեկտեղ ենթադրվում է, որ նյութական աշխարհը ինչ-որ մի բարձրագույն գիտակցության, արարչի ստեղծածն է:

Իսկ ինչպե՞ս կարող էր հնարավոր դառնալ օբյեկտիվ իդեալիզմի որևէ մի ձևով վերածնունդը XX դարի բնագիտության մեջ: Օբյեկտիվ-իդեալիստական բնույթի հետևությունները պայմանավորված էին բնագիտական նոր հայտնագործությունների անհավանականությամբ, «արտասովորությամբ»: Այսպես, ընդլայնվող Տիեզերքի տեսությունից ենթադրվում էր, որ Տիեզերքը ծագել է ժամանակի մի որոշակի պահին՝ մի կետից, իսկ, հետևաբար, ստեղծվել է. մաթեմատիկորեն նույնքան էլ ապացուցված էր թվում նյութական աշխարհի կործանման անխուսափելիությունը, որը դիտվում էր էնտրոպիայի աճի օրենքի մեջ: Նույն կերպ էին մեկնաբանվում նաև քվանտային մեխանիկայի արդյունքները: Սակայն օբյեկտիվ իդեալիզմի փիլիսոփայությունն առավել մեծ չափով մի շարք ֆիզիկոսների միտքը զբաղեցրեց նրանով, որ, ընդունելով օբյեկտիվ աշխարհի գոյությունը (այլապես ի՞նչը պետք է ուսումնասիրեր ֆիզիկան), նա թույլ էր տալիս յուրովի ռացիոնալ կերպով բացատրել (իհարկե, համապատասխան մակարդակով) նաև աշխարհը ճանաչելու հնարավորությունը: Այսպես, եթե այնպիսի խոշորագույն բնախույզների, ինչպիսին է, օրինակ, Նոբելյան մրցանակի դափնեկիր Յու. Վիգները, թվում է «ռացիոնալ բացատրություններ չունեցող մաթեմատիկայի անհասանելի արդյունավետությունը բնական գիտությունների մեջ» (հատկապես այն, որ «մաթեմատիկական հավասարումներից ստացվում են այնպիսի արդյունքներ, որ մենք նրանց հիմքում չենք դրել»), ապա ժամանակակից օբյեկտիվ իդեալիզմի շրջանակներում այդ պրոբլեմը լուծվում է բավականին «հեշտությամբ»: Դատողությունների ընթացքն այսպիսին է. աշխարհը գոյություն ունի օբյեկտիվորեն, և չնայած այն ստեղծել է արարիչը, բայց այն լիովին տրված է մեզ (անկախ այն բանից, թե նա որտեղից է ծագել) որպես հետազոտության օբյեկտ, որը բնության մեջ մա-

թեմատիկական օրինաչափությունների հայտնաբերման շնորհիվ բացահայտում է, թե «Տիեզերքի մեծ ճարտարապետը» մեծ մաթեմատիկոս է, և քանի որ մենք նույնպես որոշակի չափով ունենք մաթեմատիկական ունակություններ, ապա մենք ի վիճակի ենք «կարդալու բնության գիրքը» (ճիշտ այնպես, ինչպես կարդում ենք վեպը կամ լսում երաժշտությունը, որոնց հեղինակն է մեկ ուրիշը)։

Ջ. Ջինսի ձևակերպած այս տեսակետը հետագայում զարգացրել են մեր ժամանակի մի շարք խոշոր ֆիզիկոսներ և, առաջին հերթին, Վ. Հայզենբերգը։ Նա իր վերջին աշխատություններում ուղղակի հայտարարում է, որ «արդի ֆիզիկան փիլիսոփայությանն ստիպում է Դեմոկրիտից շուռ գալու դեպի Պլատոնը», համոզելով, թե բնության մեջ առաջնային են մաթեմատիկական ձևերը։ Նման դիրքորոշումը հարմար է լոկ նրանով, որ հնարավորություն է ընձեռում շրջանցելու (բայց ոչ լուծելու) տեսական-իմացաբանական բարդ պրոբլեմները, որ առաջադրել է բնագիտության արդի զարգացումը, տառապում է, սակայն, մի այլ անչափ լուրջ թերությամբ (նույնիսկ եթե վերանալու լինենք նրա միստիֆիկացված, թեիստական բովանդակությունից)։ Բանն այն է, որ օբյեկտիվ-իդեալիստական իմացաբանության հետևողական զարգացումը ստիպում է ընդունել, որ գոյություն ունեն մի ամբողջ շարք «հավիտյան անպատասխան» հարցեր, որոնք անմատչելի են հետազոտությանը և որոնցում իրավասու է միայն արարիչը։ Հարկ եղավ «հավիտյան անպատասխան» հարցերի կարգը դասել կյանքի ծագման, գալակտիկաների, արեգակնային համակարգի, Տիեզերքի ընդլայնման սկզբնական փուլի առաջացման պրոբլեմների հետ կապված և այլ կարևորագույն հարցերը։

Այսպիսով, իրենց ողջ տարբերությամբ հանդերձ, ինչպես սուբյեկտիվ-իդեալիստական, այնպես էլ օբյեկտիվ-իդեալիստական փիլիսոփայական դիրքորոշումները հանգեցնում են փիլիսոփայության հիմնական հարցի երկրորդ կողմի՝ աշխարհի ճանաչելիության հարցի միատեսակ բացասական լուծման, դրանով իսկ արդեն ելակետային դրույթներում կաշկանդելով, սահմանափակելով բնագիտական որոնման հնարավորությունները։

Սկզբունքորեն այլ մոտեցում է մշակվում դեպի դիալեկտիկական մատերիալիզմի փիլիսոփայությունը կողմնորոշվելիս։ Նյութական աշխարհի առաջնայնության և օբյեկտիվության ընդունումն արդեն կանխորոշում է նրա՝ սկզբունքային ճանաչելիության վերաբերյալ հետևությունը, հետազոտության լեյտմոտիվը դարձնելով դեռ XVII դարի ականավոր մատերիալիստ Բ. Սպինոզայի ձևակերպած այն դրույթը, թե «բնությունն ինքն իր պատճառն է» և ուստի բնության ամեն մի երևույթի բացատրություն պետք է փնտրել իր իսկ մեջ։

Նման դրույթը անմիջապես անհարկի է դարձնում «արարչի կամքի» ամեն մի վկայակոչում՝ մեզ շրջապատող աշխարհը բացատրելու գործում։ Մարդկային մտքի պատմության մեջ է մտել Լապլասի նշանավոր պատասխանը Նապոլեոնին, երբ վերջինս, հիացած նրա կոսմոգոնիական սիստեմի մաթեմատիկական համոզկերությամբ, բացականչել է. «Բայց ո՞ւր է այստեղ աստվածը», ապա մեծ մատերիալիստ գիտնականը պատասխանել է. «Իմ սիստեմը աստծո հիպոթեզի կարիքը չունի»։ Այդպես էլ XX դարի գիտության զարգացումը, խելամիտ բացատրություններ գտնելով բնության ամենից ավելի «արտառոց» երևույթների համար, անշեղորեն «արարչին» դուրս է մղում բոլոր այն ամրոցներից, որ արդի գիտության անունից նրա համար փորձում է ստեղծել օբյեկտիվ իդեալիզմը։

Դիալեկտիկայի, տրամաբանության և իմացաբանության միասնության մեջ մաթեմատիկայի բնագիտական արդյունավետության իմացաբանական արմատները բացահայտվում են այն դիալեկտիկամատերիալիստական վերլուծությամբ, որ սկսել է դեռևս Վ. Ի. Լենինը։ Մաթեմատիկան ունի իրականության «առաջանցիկ արտացոլման» կարողություն այն իսկ պատճառով, որ ծագել ու զարգացել է օբյեկտիվ իրականության արտացոլման պրոցեսում, շարունակ պահպանելով (գոնե պոտենցիալ կերպով) «հետադարձ կապը» իրականության հետ։ Բնության օբյեկտիվ կապերը արտահայտելով մաթեմատիկորեն, մենք դրանով իսկ իրավասու ենք սպասելու այնպիսի արդյունքներ, որոնք դեռևս



բացահայտված չեն փորձերի միջոցով (հենց այդպես, զուտ կռահումով են կանխատեսվել պոզիտրոնները, նեյտրինոն և մի շարք այլ տարրական մասնիկներ)։ Ավելին, զարգացնելով մաթեմատիկական ապարատը և այն հանդեցնելով ֆիզիկական նոր բովանդակությամբ, իմացությունը միջոցներ է նախապատրաստում իր ապագա զարգացման համար (այսպես, օրինակ, Լենգրանժի և Համիլտոնի տեսական մեխանիկայի մշակումը հիմք ծառայեց էլեկտրադինամիկայի և քվանտային մեխանիկայի ձևավորման համար)։

Աշխարհի իմացությունը դիտելով որպես «իրականության արտացոլում իր սեփական օրենքների հիման վրա», դիալեկտիկամատերիալիստական իմացաբանությունը միաժամանակ պարզաբանում է, թե ինչպես է հնարավոր իրականության օբյեկտիվ իմացությունը ճանաչողության սուբյեկտի և օբյեկտի փոխներգործության շնորհիվ։ Ձևով լինելով սուբյեկտիվ, գիտական իմացությունը օբյեկտիվ է բովանդակությամբ, որը մեզ տալիս է իրական աշխարհի առավել լրիվ, առավել համարժեք պատկերներ, որոնց ճշմարտացիության չափանիշը պրակտիկան է. ընդսմին, պրակտիկան դիտվում է որպես պրոցես, այլ ոչ թե վերջնական դատավճիռ։

Հարկավոր է առանձնապես շեշտել, որ դիալեկտիկամատերիալիստական փիլիսոփայության ելակետային դրույթների պարունակած աշխարհի ճանաչելիության սկզբունքորեն ընդունելը ամենևին չի ենթադրում իմացության բոլոր պրոբլեմների «ինքնին» լուծում, վերացում։ Օբյեկտիվ իրականության ու նրա ճանաչելիության ընդունումից դեպի բուն իմացությունը տանող ուղին դիալեկտիկորեն բարդ է ու հակասական։ Դիալեկտիկական մատերիալիզմի իմացության տեսությունում փիլիսոփայության հիմնական հարցի լուծումը կապվում է իմացության պրոցեսի դիալեկտիկայի հետ, Վ. Ի. Լենինի ձևակերպմամբ, «երևույթներից դեպի I կարգի էությունը, I կարգի էությունից դեպի II կարգի էությունը և այդպես անվերջ» կատարվող անցումների հետ։

Այսպիսով, մատերիալիստական դիալեկտիկայի փիլիսոփայական դրույթները հնարավորություն են ընձեռում, մի կողմից, լուծելու հակասությունը նյութական աշխարհի անսպառելիության և ճանաչելիության միջև, իսկ, մյուս կողմից՝ մշակելու բնության ու նրա իմացության օրինաչափությունների բացատրությունները, խթանելով գիտական որոնումը բոլոր տեսակի ամենաբարդ ու խոր պրոբլեմներն ուսումնասիրելիս։ «Անպատասխան հարցերի» ուսումնասիրության ուղիներում իսկ ձեռք են բերվել բնագիտության վերջին տարիների առավել աչքի ընկնող հաջողությունները։ Այսպես, օրինակ, Տիեզերքի ընդարձակման «զրոյամերձ» բնագավառի հետազոտությունները, որոնք Տիեզերքում տեղի ունեցող պրոցեսները վերագրում են ֆիզիկայի, այլ ոչ թե «Մեծ ճարտարապետի» իրավասությանը, պարզել են, որ արդեն «զրո կետից» շատ առաջ զգալիորեն շոշափելի են դառնում քվանտամեխանիկական էֆեկտները, որոնք էապես փոխում են ընդարձակման պատկերը։ Մի կողմից դա նշանակում է, որ որևէ կետից Տիեզերքի ոչ մի ծագման մասին խոսք անգամ չի կարող լինել, իսկ մյուս կողմից առանձնապես հրապուրիչ է դարձնում ուսումնասիրությունը Տիեզերքի ընդարձակման բուն իսկ գերխիտ փուլի, որը անմատչելի էր թվում իմացությանը։

Տիեզերքի էվոլյուցիայի այդ փուլի ուսումնասիրումն ինքնին բացառիկ կարևոր է, ընդ որում, խոստումնալի հեռանկարներ է բացում տարրական մասնիկների հետազոտությունների, համաշխարհային կոնստանտների հարաբերակցությունների ըմբռնման բնագավառում և այլն, պարզվում է, որ դրանք ծնվել են հենց այդ ժամանակաշրջանում և, պատկերավոր ասած, «պետք է հիշեն իրենց պատմությունը»։ Այսպիսով, հնարավոր է դառնում զգալիորեն առաջ ընթանալու այն հարցի լուծման գործում, որ Ա. Էյնշտեյնը համարում էր «գլխավորը բնագիտության համար բոլոր ժամանակներում». ոչ թե պարզապես նկարագրել, թե ինչպես է «կառուցված աշխարհը» (կոնստանտները, մասնիկները, փոխգործողությունները), այլև բացատրել, թե ինչու է այն հենց այդպես կառուցված։

Նկատենք, որ գերխիտ վիճակները, նման նրանց, որոնք պետք է որ գոյություն ունեցած լինեն Տիեզերքի ընդարձակման նախնական փուլերում, կարող

պրոֆեսորի ոչ մի խոսքին չի կարելի հավատալ, հենց որ խոսք է բացվում քաղաքատնտեսության ընդհանուր տեսության մասին» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 18, էջ 451)։ Ահա այդպիսի հարցերում է, որ անխուսափելիորեն երևան են գալիս, բացահայտվում համապատասխան դասակարգային արմատները։ Այն բնախույզը, որը դաստիարակված է իդեալիստական փիլիսոփայությամբ կամ հակված է դեպի այդ փիլիսոփայությունը, որը, վերջապես, փորձում է պահպանել փիլիսոփայական չեզոքությունը՝ բնագիտական պրոբլեմների ու արդյունքների համապատասխան իմաստավորման հետևանքով անպայման, կամա թե ակամա, ջուր կլցնի բուրժուական գաղափարախոսության, բուրժուական աշխարհայացքի ջրաղացին ու դրանով էլ՝ բուրժուազիայի դասակարգային շահերի ջրաղացին։ Եթե մենք այնքան էլ հաճախ չենք հանդիպում այնպիսի դեպքերի, երբ բնախույզները անմիջականորեն ծառայում են բուրժուազիային, ապա դրա փոխարեն մենք հանդիպում ենք բազմաթիվ դեպքերի, երբ «բուրժուական ռեակցիան իրոք դասակարգայնորեն օգտագործում է» նրանց համապատասխան աշխարհայացքային ու իմացաբանական հետևությունները։

Այն հետևությունները, թե իբր բնագիտությունը ապացուցում է նյութական աշխարհի երկրորդային, արարված լինելը, սուբյեկտիվ-իդեալիստական և օբյեկտիվ-իդեալիստական պատկերացումները, որոնք զանազան ճանապարհներով հանգեցնում են այն եզրակցության, թե անհնար է ճանաչել բնության ու հասարակության օբյեկտիվ օրինաչափությունները (իսկ դրանով իսկ վերափոխել դրանք այդ օրինաչափությունների իմացության հիման վրա), միշտ «ըստ արժանվույն» կգնահատեն ու կորդեգրեն հասարակության իրենց դարն ապրած հետադեմ խավերը, որոնք ձգտում են պահպանել իրենց դիրքերը։

Լիովին հակադիր «սոցիալական ելք» է ենթադրում մատերիալիստական դիալեկտիկայի կիրառումը։ Ֆոյերբախի մասին նշանավոր 11-րդ թեզիսում Կ. Մարքսը գրել է. «Փիլիսոփաները լոկ տարբեր կերպ են բացատրել աշխարհը, բայց խնդիրն այն վերափոխելն է»։ Պատմությունը ցույց է տվել, որ միայն դիալեկտիկական մատերիալիզմի փիլիսոփայությունն ընդունակ եղավ առաջադրելու և հաջողությամբ լուծելու աշխարհի ճանաչման ու մարդկության կարիքների համար նրա ակտիվ վերափոխման խնդիրը։ Հենց այդպիսի փիլիսոփայություն է անհրաժեշտ հեղափոխական դասակարգին, որը գիտակցաբար կերտում է մարդկային հասարակության պատմությունը։

---

# ԿՐՈՆԻ ՃԳՆԱԺԱՄԸ ԵՎ ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ

Հ. Ա. ՀԱՐՈՅԱՆ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ արդի փուլը բնութագրվում է զարգացման անհամեմատ արագ տեմպերով։ Դրա պերճախոս վկայություններից է այն, որ մարդկության կուտակած գիտելիքների երկու երրորդը բաժին է ընկնում XX դարին։ Գիտական գիտելիքի արագ տարածման, գիտության ու տեխնիկայի զարգացման հետևանքով կրոնը, որ նախկինում մեծ տեղ ուներ հասարակական կյանքում, մղվեց ետին պլան։

Կրոնի ընդհանուր ճգնաժամը հասարակական և գիտական առաջընթացի անհրաժեշտ արդյունքն էր։ Կրոնական գիտակցության «դարակազմիկ ճգնաժամը» կրոնի գաղափարախոսները բացատրում են հասարակական կյանքի ապակրոնացմամբ, հավատացյալի գիտակցության առասպելազրկմամբ, աթեիզմի ու լուսավորության տարածմամբ։

Եկեղեցու խարխլված դիրքերն ամրապնդելու, կրոնի հեղինակությունը վերականգնելու և կրոնական գիտակցության մեջ գոյություն ունեցող ճգնաժամի հաղթահարումը աստվածաբանները համարում են կրոնի նորացումը, որում կարևորագույն տեղ ու դեր է հատկացվում գիտության և դրա նվաճումների աստվածաբանական մեկնաբանմանը կամ «յուրացմանը»։ Ձեռնամուխ լինելով այդ գործին, նրանք նախ աշխատում են նենգափոխել և վերաիմաստավորել գիտության և ազատախոհության դեմ եկեղեցու մղած պայքարը, մասնավորապես՝ միջնադարյան դաժանություններն ու հալածանքները, որոնք համարում են «թյուրիմացություն» և «կրոնական նեղմտության» արդյունք։ Այդ նպատակով Վատիկանը հատուկ դատավարությամբ արդարացրեց Գալիլեյին և կաթոլիկ եկեղեցու մյուս նահատակներին, նրանց կոչելով անմեղ զոհեր, որոնց համար պատասխանատու համարվեցին ո՛չ թե կրոնը, եկեղեցին, այլ առանձին մոլեռանդ հոգևորականներ և պատմական պայմանները։ Պատմական իրողությունը բացահայտորեն աղավաղելու և միտումնավոր մեկնաբանելու միջոցով կղերականները ձգտում են հնարավոր դարձնել կրոնի ու գիտության համագործակցությունը։ Դեռևս XIII դարում այդպես էր վարվում Թովմա Աքվինացին, որի ուսմունքն այսօր Վատիկանի պաշտոնական գաղափարախոսությունն է։ Աքվինացին արիստոտելյան փիլիսոփայությունն օգտագործեց հավատը, եկեղեցական դոգմատիկան հիմնավորելու համար։

Այսօր, երբ գիտության արագ զարգացումը կրոնական բազմաթիվ դրույթներ զրկել է միստիկական քողից և խորհրդավորությունից, խարխլել է կրոնի հիմքերը, շատ տեսաբաններ փորձում են կրոնական հավատը «գիտականորեն» հիմնավորել։ Այսպես, թոմիզմին լրացնելու եկավ թեյարդիզմը։ Ֆրանսիացի գիտնական-աստվածաբան Պիեռ Թեյար դը Շարդենն առաջինը խնդիր դրեց մշակել այնպիսի աշխարհայացք, որը միաժամանակ լինի և՛ գիտական, և՛ կրոնական։ Նա «գիտական» աստվածաբանություն ստեղծելու փորձ արեց՝ իր «քրիստոնեական էվոլյուցիոնիզմի» տեսությամբ ջանալով գիտական հիմքերի վրա հաշտեցնել կրոնը և գիտությունը։ Այդ խնդիրն իրականացնելու համար

ցահայտելով կրոնի սոցիալ-դասակարգային էությունը, մարքսիզմը ցույց տվեց, որ շահագործողական ֆորմացիաներում տիրող դասակարգը միշտ էլ կրոնն օգտագործել է իր նեղ դասակարգային շահերի համար, սատծո անունով վավերացրել և հավերժացրել է ճնշումն ու շահագործումը: «Կրոնը,— գրում է Մարքսը,— ճնշված արարածի հառաչանքն է, անսիրտ աշխարհի սիրտը, այնպես, ինչպես նա անհոգի կարգերի ոգին է: Կրոնը ժողովրդի հաշիշն է» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Վ. Ի. Լենին, Կրոնի մասին, «Հայաստան» հրատ., 1977 թ.: էջ 14): Եվ այսօր էլ, դառնալով սոցիալիզմի ու կոմունիզմի դեմ իմպերիալիզմի պայքարի գաղափարական զենքերից մեկը, կղերական հակակոմունիզմն ամեն կերպ ճգնում է աղավաղել և աղճատել հասարակության զարգացման վերաբերյալ մարքսիստական ուսմունքը:

Գաղափարական անզիջում պայքարում ոչ մի կերպ չկարողանալով կասեցնել կամ չեզոքացնել մարքսիստական գաղափարների տարածումն ու սոցիալիզմի օրեցօր աճող ազդեցությունը համաշխարհային զարգացման ընթացքի վրա, կրոնի գաղափարախոսները դիմում են մարքսիզմի դրույթների կոպիտ նենգափոխմանը: Հակակոմունիստներ Ի. Բոխենսկին և Գ. Վետտերը մարքսիզմը ներկայացնում են որպես քաղաքական կրոն, իսկ ամերիկյան «մարքսոլոգ» Ռ. Տակերը՝ «Ինդուստրիալ դարի և հեղափոխության կրոն»: Ավելին, արևմտագերմանական հակամարքսիստ Կ. Մանհայմը մարքսիզմը համարում է ոչ գիտական ուսմունք, քանի որ, նրա կարծիքով, ամեն մի գաղափարախոսություն, այդ թվում և մարքսիզմը, օբյեկտիվ չէ, ուրեմն այն ուտոպիա է, կրոնական մարգարեություն, իսկ անդասակարգ հասարակության կառուցումը՝ սոցիալական առասպել: Այս արդեն մարքսիզմի և կոմունիզմի դեմ պայքարի բոլորովին նոր, նրբին մի ձև է: Մարքսիզմն ու կրոնը նույնացնելու հակակոմունիզմի բոլոր փորձերը սնանկ են, զուրկ գիտական հիմքից: Մարքսիզմն ու կրոնը հակադրություններ են, անհամատեղելի աշխարհըմբռնումներ: Մի՞թե Մարքսը չէր, որ կապիտալիստական հասարակարգի քննադատությունն ու մերժումը պահանջում էր սկսել կրոնի քննադատությունից, այն համարելով ամեն մի այլ քննադատության նախապայման, քանզի «պայքարը կրոնի դեմ անուղղակիորեն պայքար է այն աշխարհի դեմ, որի հոգևոր սփոփանքն է կրոնը» (նույն տեղը, էջ 14): Մարքսիզմն իր էությամբ ժխտում է ճնշման բոլոր ձևերը: Իսկ կրոնը եղել և մնում է հոգևոր և սոցիալական ճնշման հիմնական միջոցներից մեկը: Մարքսիզմ-լենինիզմը ներթափանցված է ապագայի մեծագույն լավատեսությամբ: Մարդկությունն ապագայի կանխագուշակման իր հայեցակետը հիմնում է ո՛չ թե երևակայության, կամ լոկ ցանկության վրա, այլ գիտության, բնության ու հասարակության զարգացման օրենքների ճանաչման և դրանց գիտակցական, մարդասիրական գործադրման վրա: Մինչդեռ աշխարհի վերջի, «ահեղ դատաստանի» վերաբերյալ կրոնական գուշակությունները մարդկության ապագայի կանխատեսման ամենահոռետեսական, մարդատյաց ուսմունք է:

Դեն նետելով աշխարհի վերջի մասին կրոնական մարգարեությունները, որպես կույր հավատի վրա հիմնված հիվանդագին երևակայության արդյունք, մարքսիզմ-լենինիզմը գիտական իր ուսմունքով հնարավորություն է ընձեռում ճշմարտացիորեն կանխատեսելու ապագան և գիտակցորեն կերտելու այն: Մարքսի, Էնգելսի, Լենինի կանխատեսումները ճշմարիտ են և գործնականում ապացուցվել են, որովհետև հիմնված են հասարակական զարգացման օբյեկտիվ օրենքների իմացության և դրանց կոնկրետ կիրառման վրա: Այստեղից էլ նրանց սոցիալ-բարոյական հակադիր ուղղվածությունը. մեկը մարդուն մղում է ստեղծագործական ակտիվ, աշխարհն իր նպատակներին համապատասխան վերափոխող գործունեության, իսկ մյուսը՝ ճակատագրին հնազանդվելու խոր պասսիվության:

Կրոնական ուսմունքների նորացման բոլոր փորձերն ակնբախորեն վկայում են կրոնի և եկեղեցու լուրջ ճգնաժամի մասին: Զգտելով կրոնը դուրս բերել այդ ճգնաժամից, աստվածաբանները ջանում են կրոնական հավատը հիմնավորող փաստեր գտնել արդի գիտության նվաճումներում: Եվ դա հասկանալի է: Ժամանակակից մարդը չի ուզում հավատալ առանց հիմնավորման, կրոնի ջատագովներն էլ փորձում են հավատի համար փաստեր «կորզել» բնագիտական տեսություններից, որը և հիմնականում իրականացվում է գիտական տեսությունների նենգափոխման միջոցով: Հասարակական և գիտական բուռն առաջընթացի մեր օրերում, երբ կրոնը որպես գաղափարախոսություն սպառել է իրեն և զրկվել հասարակական կյանքը կառավարելու իր երբեմնի համընդհանուր ֆունկցիայից, կղերականները փորձում են օգտագործել գիտությունը՝ այս անգամ արդեն «բանական» կրոն ստեղծելու միտումով: Ընդունելով գիտության ու տեխնիկայի արժեքավորությունն այնքանով, որքանով դրանք օգնում են «աստվածային ճշմարտությունների» բացահայտմանն ու տարածմանը, աստվածաբանները, մի կողմից, աշխատում են գիտական հիմնավորում տալ կրոնական դոգմաներին և մշակել կրոնի նոր ըմբռնում, մյուս կողմից, գիտությունն արժեքավորելով կրոնի միջոցով և կրոնի համար, դրանով իսկ արժեզրկում ու հեղինակազրկում են գիտությունը՝ որպես հասարակական կյանքը հեղափոխական միջոցներով վերափոխելու հզոր գործոնի:

Ինչ խոսք, որ գիտության նվաճումների աստվածաբանական այս մեկնաբանությունները վկայում են, որ գիտության ու կրոնի պայքարը թևակոխել է զարգացման նոր փուլ, երբ գիտական առաջընթացի ճնշման տակ կրոնը մեկը մյուսի հետևից զիջում է իր դիրքերը, նրա տեսաբանները հարկադրված են կրոնական նոր տեսություններ ստեղծելու միջոցով հասնել նրա դիրքերի ժամանակավոր կայունացմանը: Բայց անկախ իր նորացման ձևից ու ստրճանից, կրոնը շարունակում է մնալ հետադիմական, իր դարն ապրած գաղափարախոսություն, որը և շահագործողների ձեռքին միջոց է աշխատավորների դասակարգային գիտակցությունը թմրեցնելու, նրանց դասակարգային պայքարից հեռու պահելու և սոցիալական պրոբլեմները գիտության միջոցով լուծելու ճշմարիտ ուղուց նրանց ուշադրությունը շեղելու համար: Ահա թե ինչու կուսակցության XXV համագումարը շեշտեց, որ «...երկու սիստեմների գաղափարական հակամարտությունը դառնում է ավելի ակտիվ, իմպերիալիստական պրոպագանդան՝ ավելի խորամանկ... հարկավոր է ժամանակին հակահարված հասցնել թշնամական գաղափարական դիվերսիաներին» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 111):

Արդի փուլում հակակրոնական պրոպագանդայի հիմնական ուղղություններից են գիտության և հասարակական առաջընթացի դեմ կրոնի պայքարի նոր ձևերի բացահայտումն ու քննադատությունը:

## Եղբայրական հանրապետություններում

# ՀԱՎԱՍԱՐԸ ՀԱՎԱՍԱՐՆԵՐԻ ՄԵՋ

**ԿԱՐԼ ՎԱՅՆՈ**
Էստոնիայի կոմկուսի Կենտկոմի
առաջին քարտուղար

ՉՈՐՍ ՏԱՍՆԱՄՅԱԿՆԵՐԻ ստեղծարար աշխատանքով գեղեցկացած, անճանաչելիորեն վերափոխված էստոնական երկիրը նշում է իր պայծառ տոնը՝ հանրապետությունում սովետական իշխանության հաստատման 40-ամյակը։

Իմաստավորելով այն ուղին, որ մենք անցել ենք տասնյոթ թվականի հաղթական Հոկտեմբերից ու քառասուն թվականի անմոռանալի հուլիսից մինչև մեր օրերը, մենք սրտով ու մտքով նորից ու նորից ենք դիմում այն ակունքներին, որոնք չափազանց թանկ են մեր ժողովրդի համար՝ մարքսիզմ-լենինիզմի անմահ ուսմունքի վրա հիմնված հեղափոխական վերակերտիչ պրակտիկային, ժողովրդի արմատական շահերի և հանճարեղ Լենինի ստեղծած ու դաստիարակած կոմունիստների կուսակցության բազմակողմանի գործունեության անխզելի կապին։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը էստոնական ժողովրդին ազատագրեց սոցիալական ու ազգային ճնշումից։ Պատմության մեջ առաջին անգամ նա ստացավ ազատորեն իր ուղին ընտրելու իրավունք։ Էստոնիայի աշխատավորներն ընտրեցին հին աշխարհի դեմ ապստամբած ռուսաստանյան պրոլետարիատին ակտիվորեն պաշտպանելու, հեղափոխական նվաճումների ամրապնդման համար նրա հետ համատեղ պայքարելու ուղին։

Մերձբալթիկայում սովետական իշխանության հաղթանակը կատաղի զայրույթ առաջացրեց Արևմուտքի ռեակցիոն շրջաններում։ ԱՄՆ-ի, Անգլիայի և իմպերիալիստական մյուս տերությունների կառավարությունները հրաժարվեցին ճանաչել Էստոնիայի, Լատվիայի և Լիտվայի աշխատավորների որոշումը՝ միավորվելու Սովետական Միության ժողովուրդների հետ։ Նույնիսկ այսօր, 40 տարի հետո, աշխարհում դեռևս կան առանձին խմբավորումներ ու կառավարություններ, որոնք փորձում են կասկածի տակ առնել Սովետական Էստոնիայի գոյության օրինականությունը և ոչ մի կերպ չեն ցանկանում հաշտվել վաղուց կատարված այն փաստի հետ, որ Էստոնիան ընդմիշտ դարձել է Սովետական Միության եղբայրական ժողովուրդների մեծ համագործակցության լիիրավ անդամը։ Այսօր էլ հակակոմունիստները, բոլոր երանգների «սովետագետները», վտարանդի թափթփուկները փորձում են կեղծել մեր պատմական անցյալը, սակայն պատմությունն ինքը հերքում է նրանց անհիմն փաստարկները։

1917 թվականի հոկտեմբերին Վ. Ի. Լենինը, ի դեմս Էստոնիայի պրոլետարիատի, Տալինի հեղափոխական զինվորների ու նավաստիների, տեսնում էր այն վճռական ուժերից մեկը, որոնք ընդունակ էին ապահովելու զինված ելույթի հաջողությունը։ Տալինն արդարացրեց այդ հույսերը։ Ինչպես որ նախատեսում էր զինված ապստամբության լենինյան պլանը, իշխանությունն այստեղ արդեն հոկտեմբերի 23-ի երեկոյան փաստորեն անցել էր ռազմահեղափոխական կոմիտեի ձեռքը։

Քաղաքացիական պատերազմի բոցերում՝ 1918 թվականի վերջին, հին Նարվայում հռչակվեց Էստոնիայի պատմության մեջ առաջին սովերեն բանվորագյուղացիական պետությունը՝ Էստլանդական Աշխատավորական Կոմունան։

Կոմունայի ծնունդը պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների եղբայրության, իրավահավասարության և սուվերենության սկզբունքները հաստատող մեծ Հոկտեմբերի գաղափարների, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության անմիջական մարմնավորման օրինակ էր։ Ուղիղ գծով միանալով Մոսկվայի հետ, Կոմունայի խորհրդի նախագահ Յա. Անվելտը հաստատակամորեն ու անվերապահորեն հայտարարեց. «Խնդրում եմ Էստլանդական Աշխատավորական Կոմունայի խորհրդի անունից կուսակցության Կենտկոմին հայտնել, որ մենք կընթանանք ռուսաստանյան պրոլետարիատի հետ միասին...»։

Էստլանդական Աշխատավորական Կոմունան բանվոր դասակարգի գործի համար պայքարի փորձված մարտիկներ Յա. Անվելտի, Վ. Կինգիսեպի, Խ. Պեգելմանի և ուրիշների ղեկավարությամբ կարողացավ պատմական կարճ ժամանակամիջոցում սոցիալիստական կարևոր վերափոխումներ իրականացնել օտարերկրյա ինտերվենտներից և սպիտակգվարդիականներից ազատագրված շրջաններում։ Դա հնարավոր եղավ Սովետական Ռուսաստանի անշահախնդիր օգնության, մեծ Լենինի ուշադրության ու հոգատարության շնորհիվ։ Կոմունան շոշափելի ավանդ ներդրեց նաև արտաքին ու ներքին հակահեղափոխության դեմ մղված հեղափոխական պայքարում, Հոկտեմբերի նվաճումների պաշտպանության ընդհանուր ինտերնացիոնալ գործում։

Էստլանդական Աշխատավորական Կոմունային, որի իշխանությունը 1919 թվականի սկզբին տարածվել էր Էստոնիայի տարածքի երեք հինգերորդի վրա, այն ժամանակ վիճակված չէր ամրապնդելու հաղթանակը։ Միջազգային իմպերիալիզմի և էստոնական բուրժուազիայի միացյալ ուժերին հաջողվեց ոչնչացնել պրոլետարիատի հեղափոխական նվաճումները։

Սակայն էստոնական ժողովրդի մեջ գնալով ամրապնդվում էր սովետական իշխանությունը վերականգնելու ձգտումը։ Այդ բանը դարձավ բանվոր դասակարգի ավանգարդի՝ կոմունիստական կուսակցության պայքարի գլխավոր նպատակը Էստոնիայում, բուրժուական դիկտատուրայի ժամանակաշրջանում, աշխատավորների հեղափոխական շարժման հիմնական բովանդակությունը՝ ընդհուպ մինչև 1940 թվականի սոցիալիստական հեղափոխությունը, որի հաղթանակով Էստոնիայի վրա նորից ծածանվեց Հոկտեմբերի կարմիր դրոշը՝ այս անգամ ընդմիշտ։

Ահա արդեն չորս տասնամյակ է, ինչ մեր ժողովուրդը ամեն տարի նշում է իր պատմության երեք նշանավոր տարեթիվ՝ հունիսի 21-ը, հուլիսի 21-ը և օգոստոսի 6-ը։

Համեմատաբար ոչ մեծ ժամանակահատվածը՝ 1940 թվականի հունիսի 21-ից մինչև օգոստոսի 6-ը, հավիտյան կմնա Սովետական Էստոնիայի աշխատավորների հիշողության մեջ՝ որպես վերածննդի, հարյուրավոր ու հազարավոր էստոնացի հեղափոխականների, բանվորների ու գյուղացիների նվիրական երազանքների իրականացման ժամանակաշրջան։

1940 թվականի հունիսին ստեղծված իրադրությունը նպաստում էր հեղափոխական իրավիճակի հասունացմանը. բուրժուական կառավարությունը երկիրը հասցրել էր տնտեսական անկման, ծանր էր աշխատավոր զանգվածների դրությունը։ Մերձբալթյան պետությունների սահմաններից դուրս բորբոքվել էր երկրորդ համաշխարհային պատերազմի կրակը։ Հիտլերը գրավել էր Ավստրիան, Չեխոսլովակիան, Լեհաստանը։ Էստոնական ժողովուրդը կանգնած էր երկընտրանքի առջև՝ շարունակե՞լ, արդյոք, հանդուրժել բուրժուաֆաշիստական դիկտատուրան և ռիսկ անել դառնալու Հիտլերի դաշնակիցը ՍՍՀՄ-ի դեմ

մղված պատերազմում, թե՞ տապալել ատելի պրոֆաշիստական կառավարությունը և մտնել ՍՍՀՄ կազմի մեջ, դրանով իսկ ապահովելով իր անվտանգությունը:

Սովետական Միությունը, որը Էստոնիայի հետ կապված էր փոխօգնության պակտով, չէր միջամտում իրադարձությունների զարգացմանը: Բայց հզոր հարևանի ամեն մի քայլը, որն ուղղված էր այդ շրջանի անվտանգության ամրապնդմանը, օբյեկտիվորեն օգնում էր էստոնական աշխատավորների լայն խավերին՝ հասնելու իրենց քաղաքական նպատակներին: Մանավանդ որ միմյանց դեմ պատերազմող խոշոր իմպերիալիստական պետությունները չէին կարող օգնության հասնել էստոնական բուրժուազիային, որն աշխատավորների դեմ իր պայքարում մեն-մենակ էր մնացել:

1940 թվականի հունիսի 21-ին հնչեցին Տալինի գործարանների ու ֆաբրիկաների շչակները: Բանվորների շարասյուները շարժվեցին դեպի քաղաքի կենտրոն: Նրանց գլխավերև ծածանվում էին 1905 և 1917 թվականների հեղափոխական կարմիր դրոշները: Տեղի ունեցավ բազմամարդ միտինգ: Աշխատավորները մեծ ոգևորությամբ ընդունեցին մի բանաձև, որը պահանջում էր ստեղծել Սովետական Միությանը բարեկամ նոր, դեմոկրատական կառավարություն: Այդ պահանջը հաղորդվեց պրեզիդենտ Կ. Պյատսին: Ժողովուրդը գրավեց պրեզիդենտական պալատը, ազատեց քաղաքական բանտարկյալներին, ստեղծեց ինքնապաշտպանության ջոկատներ: Նույն օրը միտինգներ և ցույցեր տեղի ունեցան նաև մյուս քաղաքներում: Պրեզիդենտն ստիպված եղավ հաստատել նոր կառավարության կազմը՝ հայտնի գրող և հասարակական գործիչ Իոհաննես Վարես-Բարբարուսի գլխավորությամբ: Կառավարության կազմի մեջ մտան բանվոր դասակարգի և դեմոկրատական մտավորականության միասնական ճակատի ներկայացուցիչները: Ժողովրդի կողմից ընտրված Պետական դուման հուլիսի 21-ին Էստոնիայում հռչակեց սովետական իշխանություն, իսկ օգոստոսի 6-ին Էստոնիան ընդունվեց ՍՍՀ Միության կազմի մեջ: Այսպիսին է իրադարձությունների իրական ընթացքը, որի շնորհիվ Էստոնիան մտավ ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական միության մեջ:

Սովետական իշխանության տարիներին մեր հանրապետությունը հուժկու առաջընթաց թռիչք կատարեց: Այժմ այն դինամիկորեն զարգացող արդյունաբերություն և ինտենսիվ գյուղատնտեսություն, բնակչության կրթության և կուլտուրայի բարձր մակարդակ ունեցող երկիր է: 1940 թվականի համեմատությամբ Սովետական Էստոնիայի արդյունաբերական արտադրության ծավալն աճել է 46 անգամ, գյուղատնտեսական արտադրությանը՝ երկու անգամ:

Երկրի ինդուստրիալ արագ զարգացումը արմատապես փոխեց ժողովրդական տնտեսության կառուցվածքը: Եթե բուրժուական Էստոնիայում արդյունաբերությունը տալիս էր համախառն (արդյունաբերական և գյուղատնտեսական) արտադրանքի մեկ քառորդ մասը միայն, ապա այժմ այն արտադրում է հասարակական ամբողջական արդյունքի երկու երրորդը: Երևան եկան արդյունաբերության նոր ճյուղեր, օրինակ, սարքաշինականը, թերթաքարաքիմիականը, էներգետիկան:

Էստոնական ՍՍՀ-ում ստեղծվել է վառելիքաէներգետիկ հզոր կոմպլեքս, որը բաղկացած է 11 հանքահորերից ու հանքակտրվածքներից, հինգ էլեկտրակայաններից, որոնցից երկուսը՝ Մերձբալթիական և Էստոնական ՊՇԷԿ-ները, 1.600-հազարական կիլովատ-ժամ կարողությամբ, աշխատում են վառելիքի անմիջական այրմամբ: 1979 թվականին հանրապետությունը արտադրել է 19,4 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, այսինքն՝ 102 անգամ ավելի շատ, քան 1940 թվականին:

Էստոնական թերթաքարագործներն ու էներգետիկները հպարտանում են թերթաքարերի արդյունաբերական օգտագործման իրենց փորձի այն բարձր գնահատականով, որ 1980 թվականի փետրվարին ընկեր Լ. Ի. Բրեժնևը տվել է մեր հանրապետության վառելիքային ու էներգետիկ ձեռնարկությունների բանվորներին, ինժեներատեխնիկական աշխատողներին ու ծառայողներին, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին հղած իր սրտագին ողջույնում: Այդ գնահատականը ոգեշնչում է նրանց՝ գտնելու թերթաքարերի արդյունահանումն ու վերամշակումը ընդլայնելու, էժանագին էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելացնելու նորանոր ռեզերվներ:



Շարունակվում է հանրապետության հիմնական բնական հարստության՝ վառվող թերթաքարերի, ռացիոնալ մշակումն ու շահագործումը: Էստոնական ՍՍՀ պետպլանը, հանրապետության գիտությունների ակադեմիան, համապատասխան մինիստրություններն ու գերատեսչությունները միութենական մարմինների հետ ուսումնասիրել են թերթաքարերի արդյունաբերության և էներգետիկայի կոմպլեքսային զարգացման հնարավոր տարբերակները: Այն քննարկվել է Էստոնիայի կոմկուսի Կենտկոմի պլենումում:

Նախատեսվում է կառուցել նոր հանքահորեր ու հանքակտրվածքներ, վերակառուցել մի շարք արդյունահանող ձեռնարկություններ: Էլեկտրաէներգիայի արտադրությունը ավելանալու է թերթաքարերով աշխատող երրորդ ջերմային էլեկտրակայանի շինարարության ու գործարկման հաշվին: Յուրացվելու են թերթաքարերի էներգատեխնոլոգիական վերամշակման արդյունաբերական եղանակները, թերթաքարերի մոխրի ավելի լրիվ օգտագործումը շինարարական ինդուստրիայում, թթու հողերի կրապարարտացման համար և այլն:

Սովետական Էստոնիայի վառելիքաէներգետիկ կոմպլեքսի հիմքը կազմող երեք ճյուղերը՝ թերթաքարերի արդյունահանումը, դրանց վերամշակումն ու էլեկտրաէներգետիկան, այսուհետ ևս կապահովեն ժողովրդական տնտեսության պահանջմունքները էլեկտրական ու ջերմային էներգիայի, քիմիական շատ արտադրանքների և հեղուկ վառելիքի բնագավառում:

Բուռն զարգացում են ապրում նաև արդյունաբերության այնպիսի կարևոր ճյուղեր, ինչպիսիք են մեքենաշինությունն ու մետաղամշակումը, ճշգրիտ սարքերի արտադրությունը, ձկնարդյունաբերությունը, մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերությունը: Էստոնական ՍՍՀ արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի 23 տոկոսից ավելին թողարկում են թեթև ինդուստրիայի ձեռնարկությունները: Սովետական իշխանության 40 տարում վերնազգեստի տրիկոտաժի արտադրությունը մեզ մոտ ավելացել է 28 անգամ, բամբակե գործվածքներինը՝ մոտավորապես հինգ անգամ, տրիկոտաժե սպիտակեղենինը՝ տասը անգամ:

Վերջին հնգամյակների տարիներին մեծացել է արդյունաբերության համակենտրոնացումը: Հազար մարդուց ավելի աշխատող ունեցող ձեռնարկությունների տեսակարար կշիռը մեծացել է ավելի քան երեք անգամ: Արդյունաբերական-արտադրական անձնակազմի գրեթե կեսը աշխատում է արտադրամիավորումներում:

Այժմ արդյունաբերությունը տալիս է հանրային համախառն արտադրանքի երկու երրորդը և հանրապետության ազգային եկամտի կեսից ավելին:

Սովետական իշխանության տարիներին անճանաչելիորեն փոխվել է նաև էստոնական գյուղը: 143 կոլտնտեսություններ և 158 սովխոզներ այժմ ունեն 2,5 միլիարդ ռուբլուց ավելի ընդհանուր արժողությամբ հիմնական ֆոնդեր: Միջին հաշվով մեկ տնտեսությանը բաժին է ընկնում 4500 հեկտար հողատարածություն, 2300 գլուխ խոշոր եղջերավոր անասուն և 2800 խոզ, 58 տրակտոր, 11 հացահատիկահավաք կոմբայն, 29 բեռնատար մեքենա և մեծ քանակությամբ այլ ժամանակակից տեխնիկա:

Գյուղատնտեսական արտադրանքի ամբողջ աճը իններորդ և տասներորդ հնգամյակներում ձեռք է բերվել աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ: Տասներորդ հնգամյակի տարիներին միջին հաշվով բնակչության մեկ շնչի համար արտադրվել է ավելի քան 850 կիլոգրամ հացահատիկ, մոտ 800 կիլոգրամ կարտոֆիլ, 70 կիլոգրամ բանջարեղեն, 125 կիլոգրամ միս, 800 կիլոգրամից ավելի կաթ և 316 հատ ձու:

Գյուղում ընդլայնվել է բարձր մակարդակի մեքենայացում ունեցող ժամանակակից արտադրական օբյեկտների շինարարությունը: 1970 թվականից կառուցվել են ֆերմաներ 213,3 հազար գլուխ խոշոր եղջերավոր անասունների և ավելի քան 444 հազար գլուխ խոզի համար: Կառուցվել են թռչնաբուծական ֆերմաներ ու ֆաբրիկաներ 1,4 միլիոն տեղով: Այդ ամենը հնարավորություն ավեց գյուղատնտեսության համակենտրոնացման ու մասնագիտացման միջո-

ցով անցնելու անասնապահության արտադրանքի արտադրության ինդուստրիալ տեխնոլոգիայի: Ներկայումս հանրապետությունում կա կաթնամթերքների արտադրության 256 խոշոր կոմպլեքս, որտեղ աշխատանքի ծախսումներն այժմ մեկ ցենտներ կաթի համար կազմում են միջին հաշվով 3,2 մարդ-ժամ, կամ երկու անգամ ավելի քիչ, քան 1971—1975 թվականներին:

Հանրային արտադրության դինամիկ զարգացման հիման վրա բարձրանում է բարեկեցությունը, բարելավվում ու գեղեցկանում է ժողովրդի կյանքը: Տասը տարում հանրապետության աշխատավորներն ստացել են 121,9 հազար նոր բարեկարգ բնակարաններ՝ 6,6 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ: Դա նշանակում է, որ հանրապետության յուրաքանչյուր չորրորդ բնակիչ ստացել է նոր բնակարան: Բանվորների ու ծառայողների ամսական միջին աշխատավարձը բարձրացել է 33,2 տոկոսով, կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը՝ 53 տոկոսով, սպառման հանրային ֆոնդերի հաշվին կատարվող վճարումներն ու արտոնությունները ավելացել են 64 տոկոսով:

Ինչպես տեսնում ենք, լրիվ չափով իրականացվում է մեծ Լենինի կանխատեսումը. «Միայն սոցիալիզմը հնարավորություն կտա պրոդուկտների հասարակական արտադրությունն ու բաշխումը լայնորեն տարածել և գիտական նկատառումներով իսկապես ենթարկել այն նպատակին, թե ինչպես բոլոր աշխատավորների կյանքը դարձնել առավել հեշտ, և այնպես, որ նա բարեկեցության հնարավորություն ընձեռի աշխատավորներին» (Երկեր, հ. 27, էջ 511):

Մեր հաջողությունները բանվորների, կոլտնտեսականների, ժողովրդական մտավորականության ներկայացուցիչների ոգեշունչ աշխատանքի արգասիքն են: Նրանց ստեղծագործական նախաձեռնությունն ու եռանդը բազմակողմանիորեն երևան են գալիս սոցիալիստական մրցության մեջ: Հանրապետությունում, ասենք, նրա սահմաններից դուրս էլ, հայտնի են մեր առաջավորների անունները: Նրանց թվում են անվանի լեռնագործներ, սոցիալիստական աշխատանքի հերոսներ Աքսել Պերտելը, Էնդել Պաապը, Վասիլի Իվանովը, Վ. Ի. Լենինի անվան «Կրենգոլմսկայա մանուֆակտուրա» բամբակեղենի կոմբինատի մանող բանվորուհիներ, հնգամյակի սկզբից մինչև այժմ 12-ական տարվա նորմա կատարած սոցիալիստական աշխատանքի հերոս Սվետլանա Պետրովան, Լյուբով Վիխոդինան, Եկատերինա Զուևան, «Վիլյանդի» հենակետային ցուցադրական սովխոզի կթվորուհի Լեյդա Պեյպսը: Էստոնիայի 1200 կթվորուհիներ այժմ աշխատում են Լ. Պեյպսի առաջավոր օրինակով, որը հանդես է եկել մի կովախմբից տարեկան 100 տոննա կաթ ստանալու նախաձեռնությամբ: Նա հետևորդներ ունի նաև հանրապետության սահմաններից դուրս: Լ. Պեյպսի հետ անհատական մրցության մեջ են մտել Մերձմոսկովյան շրջանից սոցիալիստական աշխատանքի հերոս Մարիա Գրոմովան, առաջավոր կթվորուհի Մուխթարամա Գաֆարովան Ուզբեկստանից, մերձնայական կթի վարպետների համամիութենական մրցույթի հաղթող Նինա Կողինան Ռյազանի մարզից: Լ. Պեյպսի փորձը ներդրվել է Բուլղարիայի Պլևենի օկրուգում և այլուր:

Անցյալ տարի Լ. Պեյպսը կթեց գրեթե 500 տոննա կաթ՝ ամեն մի կովից 5141 կիլոգրամ, իսկ ընդհանուր առմամբ 1976—1979 թվականներին անվանի կթվորուհին իր կովախմբից կաթի մի իսկական գետ է ստացել՝ 2045 տոննա: Նյութական արտադրության ոլորտի հազարավոր այսպիսի մարդկանց հիրավի հերոսական աշխատանքով է էստոնական ՍՍՀ-ն նվաճել այժմյան իր տնտեսական բարձունքները:

Հասուն սոցիալիզմի աչքի ընկնող նվաճումները, սովետական երկրի հզորության և միջազգային հեղինակության աճը, բոլոր դրական փոփոխությունները մեր ժողովուրդը իրավամբ կապում է կոմունիստների փառապանծ կուսակցության առաջատար դերի, նրա հետևողական լենինյան կուրսի հետ, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած լենինյան քաղբյուրոյի ներքին և արտաքին իմաստուն քաղաքականության, կազմակերպչական ու քաղաքական վիթխարի գործունեության հետ:

Մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուսմունքով զինված՝ կուսակցությունը մասսաների եռանդը հմտորեն ուղղում է կոմունիստական շինարարության



խնդիրների լուծմանը, արժանավայել կերպով կատարում բանվոր դասակարգի, ողջ սովետական ժողովրդի քաղաքական առաջնորդի դերը, տանում է մեզ միակ ճիշտ ճանապարհով՝ ճշմարտության, ազատության ու ժողովրդական երջանկության ճանապարհով:

Էստոնիայի կոմունիստական կուսակցությունը՝ հանրապետության աշխատավորների ղեկավարն ու կազմակերպիչը, ՍՄԿԿ հավատարիմ մարտական ջոկատը, այս տարի նշում է իր վաթսունամյակը: 1940 թվականի ամռանը ընդհատակից դուրս էին եկել ընդամենը մոտ հարյուր հիսուն էստոնացի կոմունիստներ: Այսօր Էստոնիայի կոմկուսակցությունը, որի մեջ կան 60-ից ավելի ազգերի ու ազգությունների ներկայացուցիչներ, իր շարքերում ունի 96 հազարից ավելի ՍՄԿԿ անդամներ ու անդամության թեկնածուներ: Նրանց գրեթե կեսը բանվորներ ու կոլտնտեսականներ են, մեկ երրորդից ավելին՝ կանայք: Հանրապետությունում գործում են 2650 սկզբնական կուսակցական կազմակերպություններ, որոնք դարձել են բազմազգ աշխատավորական կոլեկտիվների իսկական քաղաքական կորիզը:

Մենք իրավացիորեն գտնում ենք, որ հանրապետության առաջընթացն ապահովող վճռական գործոններից մեկը հանդիսացավ կուսակցական և սովետական, ինչպես նաև արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների, մեր տնտեսավարների կազմակերպչական ու գաղափարախոսական գործունեության ուժեղացումը: Տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարման, մարդկանց դաստիարակության գործում ավելի ու ավելի կարևոր դեր են կատարում ժողովրդական դեպուտատների սովետները:

Հանրապետության կուսակցական կազմակերպությունն այսօր իր խնդիրն է համարում մասսաների մարտական տրամադրությունն ու նրանց ջանքերն ուղղել բարձր արտադրողական աշխատանքի ապահովմանը, ռեզերվների բացահայտմանը, թերությունների ակտիվ վերացմանը՝ այդ հիման վրա ժողովրդական տնտեսության զարգացման տեմպերի արագացմանը:

Մենք դեռևս անելիքներ շատ ունենք նաև կազմակերպական-կուսակցական և գաղափարախոսական աշխատանքը է՛լ ավելի կատարելագործելու, էկոնոմիկայի ղեկավարման մակարդակը բարձրացնելու, արտադրության կազմակերպումը բարելավելու և աշխատանքի կարգապահությունն ամրապնդելու համար:

Հանրային արտադրության հետագա զարգացման, աշխատանքի արդյունավետության և որակի բարձրացման համար մղվող պայքարում հանրապետության կոմունիստների, բոլոր աշխատավորների մարտական ծրագիրն են ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1979 թ.) և հունիսյան (1980 թ.) պլենումներում ընկեր Լ. Ի. Բրեժնևի ունեցած ելույթներում պարունակվող դրույթներն ու հետևությունները: Կուսակցական կազմակերպությունների պարտքն է՝ ամեն կերպ կատարելագործել իրենց աշխատանքի ոճն ու մեթոդները, աշխատավորական կոլեկտիվներում ստեղծել բարձր պահանջկոտության, կազմակերպվածության, գործի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքի իրադրություն:

«Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նախանշված է աշխատավորների դաստիարակությունը բարելավելու, տասներորդ հնգամյակի ժողովրդատնտեսական պլանների կատարումն ապահովելու գործողությունների ամբողջական ծրագիրը: Այդ աշխատանքին նոր թափ հաղորդեցին Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթը Մոսկվայի Բաումանյան ընտրական օկրուգի ընտրողների առջև:

Մեր խնդիրն է՝ ամեն կերպ ընդլայնել մեր բազմազգ հայրենիքի ժողովուրդների միջև հաստատված կապերի ու հաղորդակցման բոլոր ձևերը, ավելի ակտիվորեն կատարել կադրերի, նյութական ու հոգևոր արժեքների փոխանակում, ազգային ավանդույթները զարգացնելու հետ միասին բազմապատկել այն ընդհանուր ավանդույթները, որոնք բնորոշ են ամբողջ սովետական ժողովրդին:

Այսօրվա Սովետական Էստոնիան ուժեղ է մեր բազմազգ երկրի հզորությամբ: Բավական է նայել չորս կողմը. ամենուրեք՝ գործարանների արտադրամասերում, ինստիտուտների լաբորատորիաներում, ստեղծագործական և գիտական կոլեկտիվներում, կարելի է տեսնել բազմաթիվ ազգությունների մարդկանց հերոսական աշխատանքի պտուղները: Մեր դաշտերում աշխատում են Մինսկի և Վոլգոգրադի տրակտորները, ճանապարհներով սլանում են ԿամԱԶ-ում և ՎԱԶ-ում արտադրված ավտոմեքենաները, լատվիական միկրոավտոբուսները. մենք վերամշակում ենք Կարելիայից և Սիբիրից ստացվող անտառանյութը, օգտվում ենք Բելոռուսիայում և Հայաստանում ստեղծված էլեկտրոնային-հաշվիչ մեքենաներից:

Սոցիալիստական Հայաստանը ոչ պակաս կարևոր տեղ է գրավում այդ կապերի բարդ կառուցվածքում: Միջհանրապետական ապրանքափոխանակությունը ակնբախ կերպով արտացոլում է մեր երկու հանրապետությունների տնտեսական պոտենցիալի զարգացումը: Դրա վառ վկայությունն են բժշկական սարքավորումների, հաշվողական տեխնիկայի, մեքենաշինական ու էլեկտրատեխնիկական արդյունաբերության արտադրանքի, էլեկտրոնային և ռադիոչափիչ սարքերի մատակարարումները մեզ հեռավոր Կովկասից: Էստոնական ձեռնարկությունները Հայաստանից ստանում են նաև գունավոր մետաղներ, քիմիական և նավթաքիմիական արդյունաբերության արտադրանք, կերպարտադրության սարքավորումներ, ընդհանրապես Հայաստանը մեր հանրապետությանն է առաքում չորս տասնյակի չափ արտադրատեսակներ: Պակաս տպավորիչ չէ նաև այն ապրանքների ցուցակը, որ մենք մատակարարում ենք Հայաստանին: Հիմնական տեղը այստեղ գրավում է թեթև և սննդի արդյունաբերության արտադրանքը՝ բամբակե, բրդե ու մետաքսյա գործվածքներ, տրիկոտաժ, մորթիներ, մսամթերքներ ու կաթնամթերքներ, ձկան պահածոներ: Այդ ցուցակում կան նաև կահույք, ռադիոընդունիչներ, դաշնամուրներ:

Ընդլայնվում են նաև երկու հանրապետությունների մշակութային կապերը, որոնք, ի դեպ, ունեն խոր արմատներ: Տարտուի պետական համալսարանի լսարաններից մեկում չեն թառամում թարմ ծաղիկները, որ դրված են յուրաքանչյուր հայի ծանոթ հարթաքանդակին. համալսարանը հարգում է իր սանի՝ հայ գրող ու լուսավորիչ Խաչատուր Աբովյանի հիշատակը:

Մեր հանրապետությունների մշակութային կապերի զարգացմանը մեծ զարկ տվեցին գրականության և արվեստի օրերը, որ փոխադարձաբար անցկացվեցին 1964 թվականին: Բարեկամության ու եղբայրության այդ տոները մեր ժողովուրդներին հնարավորություն ընձեռեցին ավելի խորությամբ ճանաչելու և հասկանալու միմյանց:

Կուլտուրական փոխանակության կարևոր ձև են դարձել հայ գրականության երկերի թարգմանությունները էստոներեն և էստոնական գրողների գըրքերի թարգմանությունները հայերեն: 1940—1979 թվականներին հայերենից էստոներեն է թարգմանվել 30 ստեղծագործություն՝ 621.000 օրինակ ընդհանուր տպաքանակով: Դրանցից են «Սասունցի Դավիթ» էպոսը, Ս. Խանզադյանի, Վ. Պետրոսյանի, Կ. Սիմոնյանի, Վ. Գրիգորյանի և ուրիշ շատ հեղինակների ստեղծագործությունները:

Իրենց հերթին հայ ընթերցողները մայրենի լեզվով ծանոթացել են էստոնական այնպիսի հայտնի դասական ու ժամանակակից գրողների, ինչպիսիք են՝ Ա. Խ. Տամսաարեն, Վ. Բեեկմանը, Պ. Կուուսբերգը, Օ. Լուտսը, Վ. Գրոսը, Է. Վետեմաան:

Անսահման մեծ է ազգային մշակույթների փոխազդեցության և փոխհարստացման նշանակությունը մեր հանրապետությունների համար: Այդ պրոցեսը նոր մարդու ձևավորման, նրա սոցիալական կերպարում ինտերնացիոնալիստի ու հայրենասերի հատկանիշների հաստատման ներգործուն միջոց է:

Էստոնիայի հեղափոխական շարժման ողջ պատմությունը, նրա յուրաքանչյուր հերոսական էջը անխզելիորեն կապված են զանազան ազգությունների աշխատավորների պրոլետարական ինտերնացիոնալ համերաշխության, եղբայրության ավանդույթների հետ: Մեր ազգային հպարտությունը օրգանապես առնչված է մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի ինտերնացիոնալ մեծ եղբայրությանը պատկանելու վեհ և ազնիվ զգացման հետ: Դրանում իր հաստատումն է գտել լենինյան այն կանխատեսումը, որ սոցիալիզմը «ստեղծում է մարդկային համակեցության նոր, ավելի բարձրագույն ձևեր, երբ ամեն մի ազգության աշխատավոր մասսաների օրինական պահանջմունքներն ու առաջադիմական ձգտումներն առաջին անգամ կբավարարվեն ինտերնացիոնալ միասնության մեջ» (Երկեր, հ. 21, էջ 33):

Սովետների երկիրը ժողովուրդների բարեկամության մասին, ազատագրված աշխատանքի մարդկանց եղբայրության մասին մարդկության մեծագույն զավակների, գիտական կոմունիզմի հիմնադիրների իրականացված երազանքն է: Այնպիսի բարեկամություն, այնպիսի դաշինք, այնպիսի հարաբերություններ, ինչպիսիք հաստատվել են մեր ժողովուրդների միջև, պատմությունը չի իմացել և չէր կարող իմանալ: Միայն Լենինի գաղափարներով զինված կոմունիստական կուսակցությունն է, որ, վարելով լենինյան իմաստուն ազգային քաղաքականություն, կարողացավ ստեղծել ժողովուրդների այնպիսի անխախտ դաշինք, այնպիսի միաձույլ բազմազգ պետություն, ինչպիսին է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների մեր մեծ Միությունը:

Մեր միասնական մեծ Միության մեջ,
որպես հավասարը քեզ նմանների հետ,
Դու հավերժ հյուսել ես քո անունը պարզ,
Իմ Էստոնիա՝ սովետական դու երկիր:

գրել է էստոնական բանաստեղծ Ա. Ալլեն:

Հանրապետության աշխատավորները իրավամբ հպարտանում են իրենց աշխատանքի պտուղներով, գիտակցելով, որ դրանք ամենից առաջ սովետական բոլոր ժողովուրդների և հատկապես ռուս ժողովրդի համատեղ ջանքերի արդյունքն են: Բարեկամության հետագա զարգացումն ու ամրապնդումը ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների, հատկապես ռուս մեծ ժողովրդի հետ այն սոցիալական հարստությունն է, որը բազմապատկում է մեր հանրապետության ուժերն ու հնարավորությունները: Հենվելով մեր բազմազգ պետության հզոր ուժի վրա, էստոնական ժողովուրդը արժանավոր տեղ է գրավել ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում, իսկ մեր հանրապետությունը, ինչպես երգվում է նրա հիմնում, «ոգի առավ ծաղկի պես փթթած երջանկության ու հաղթանակների համար»:

Ոչինչ ի վիճակի չէ սասանելու սովետական ժողովուրդների եղբայրական բարեկամության մեծ ուժը: Դա մեր հաջողությունների կենարար աղբյուրն է, մեր ապագա հաղթանակների գրավականը:

Էստոնիայի աշխատավորները, հավատարիմ իրենց ավանդույթներին, լի են վճռականությամբ՝ նոր հաղթանակների հասնելու տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարում, արժանավոր կերպով դիմավորելու ՍՄԿԿ առաջիկա XXVI համագումարը:

# ՀՆԳԱՄՅԱԿԻՆ՝ ՀԱՋՈՂ ԱՎԱՐՏ

**Կ. Ե. ԵԳԱՆՅԱՆ**
ՀԿԿ Կրասնոսելսկի շրջկոմի առաջին քարտուղար

ԻՆՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ Կրասնոսելսկի շրջանը չկատարեց գյուղատնտեսության զարգացման նախատեսված առաջադրանքները. պետությանը պարտք մնաց զգալի քանակությամբ հողագործական ու անասնապահական մթերքներ: Ինչ խոսք, դա պատիվ չէր բերում շրջանի կուսկազմակերպությանը, և ստեղծված վիճակից դուրս գալու համար մենք պետք է արմատապես բարելավեինք կազմակերպչական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, մարդկանց տոգորեինք առաջադրված խնդիրները կատարելու վճռականությամբ, իրենց ուժերի նկատմամբ վստահությամբ:

Ինչպես շրջանային կուսակցական կազմակերպության XXVI կոնֆերանսը, այնպես էլ ՍՄԿԿ XXV համագումարի ու Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի արդյունքների և շրջանի կուսկազմակերպության խնդիրների քննարկմանը նվիրված կուսակցական ակտիվի ժողովները, քննադատորեն գնահատելով իններորդ հնգամյակում շրջանի կուսկազմակերպության ծավալած գործունեությունը, բացահայտեցին ետ մնալու պատճառները, նշեցին տասներորդ հնգամյակում էկոնոմիկայի և սոցիալ-կուլտուրական զարգացման խնդիրներն ու դրանց լուծման գործում սկզբնական կուսկազմակերպությունների, տնտեսական ղեկավարների և մասնագետների անելիքները: Խնդիր դրվեց յուրաքանչյուր տնտեսությունում հաշվի առնել գյուղատնտեսական արտադրության զարգացման առկա հնարավորություններն ու ռեզերվները, մոբիլիզացնել գյուղական աշխատավորության ուժերը տասներորդ հնգամյակի բնագծերը ժամկետից շուտ նվաճելու համար: Իսկ այդ բնագծերը բավականաչափ բարձր էին: Նախատեսվում էր նախորդ հնգամյակի համեմատությամբ գյուղատնտեսության համախառն արտադրանքի տարեկան ծավալը մեծացնել 22—25 տոկոսով (այն էլ՝ միմիայն աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին), հացահատիկային կուլտուրաների տարեկան համախառն արտադրանքը հասցնել 7000—7500 տոննայի, կարտոֆիլինը՝ 18—19 հազար, ծխախոտինը՝ 600, մսինը՝ 1700—1800, կաթինը՝ 5200— 5500 տոննայի, բրդինը՝ 1700—1800 ցենտների:

Կուսշրջկոմը, նրա բյուրոն, սկզբնական կուսկազմակերպությունները հետագայում ևս պարբերաբար անդրադարձել են պետական պլանների կատարման ընթացքին, ուղիներ որոնել գյուղատնտեսական արտադրության համակողմանի զարգացման, նոր ռեզերվների ու հնարավորությունների բացահայտման ու օգտագործման համար:

Մեր գործունեության մեջ մենք նախ և առաջ ելնում էինք այն բանից, որ անհրաժեշտ է ըստ ամենայնի բարձրացնել սկզբնական կուսկազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը, արմատապես բարելավել ու ամրապնդել կուսակցական, պետական, աշխատանքային ու կատարողական կարգապահությունը ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում և օղակներում: Այդ առնչությամբ կուսշրջկոմի պլենումներում, բյուրոյի նիստերում քանիցս անդրադարձել ենք ՍՄԿԿ XXV համագումարի պահանջների ոգով կուսկազմակերպությունների մարտունակության և արտադրության կուսակցական ղեկավարման մակարդակի բարձրացման հարցերին, գործնական միջոցառումներ մշակել նրանց կազմակերպական ու քաղաքական գործունեության ձևերն ու մեթոդները կատարելագործելու, արտադրության մեջ և հասարակական-քաղաքական կյանքում կոմունիստների ակտիվությունը բարձրացնելու համար:

Այս առումով մեր գործունեության համար հսկայական խթան հանդիսացավ ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումը, որը ցույց տվեց գյուղատնտեսության կուսակցական ղեկավարումն արդի պահանջների մակարդակին բարձրացնելու կոնկրետ ուղիները: «Գյուղատնտեսության հետագա վերելքի համար մղվող պայքարի նոր փուլին,— ասված է պլենումի որոշման մեջ,— պետք է համապատասխանեն նաև կուսակցական ղեկավարման առավել բարձր մակարդակը, մասսաների մեջ կատարվող կազմակերպչական և քաղաքական աշխատանքի առավել կատարյալ մեթոդները: Անհրաժեշտ է է՛լ ավելի բարձրացնել կոլտնտեսությունների և սովխոզների, ինչպես նաև... գյուղատնտեսական արտադրության հետ առնչված մյուս ձեռնարկությունների ու հիմնարկությունների սկզբնական կուսակցական կազմակերպությունների դերը: Մշտապես բարելավել կոմունիստների տեղաբաշխումը աշխատանքի կաբևորագույն բնագավառներում, ապահովել նրանց ավանգարդային դերը, ըստ ամենայնի ամրապնդել կուսակցական և պետական կարգապահությունը»:

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը գյուղատնտեսության կուսակցական արդյունավետ ղեկավարման գլխավոր պայմաններից մեկը համարեց կադրերի հետ տարվող աշխատանքը: Առաջնորդվելով պլենումի պահանջներով, մենք նկատելիորեն բարելավել ենք գյուղատնտեսական արտադրությունը բանիմաց, սկզբունքային, կազմակերպչական ձիրքով օժտված կադրերով ապահովելու գործը:

Շրջկոմի բյուրոն պարբերաբար ուսումնասիրել է ետ մնացող տնտեսությունների վիճակը և համակողմանի քննարկել դրա բարելավման հարցը՝ կարևորելով հատկապես կադրերի ընտրության ու տեղաբաշխման գործը: Արտադրական պլանների կատարումը սիստեմատիկաբար ձախողելու, գյուղատնտեսության ինտենսիվացման հարցերով անբավարար զբաղվելու համար աշխատանքից ազատվել են Գյոլքենդի, Ամրխերի, Ջայքենդի, Թոխլուջայի, Կրասնոսելսկի, Շորժայի սովխոզների դիրեկտորները: Նրանց փոխարեն առաջ են քաշվել բարձրագույն կրթությամբ գյուղատնտեսության մասնագետներ, որոնք նկատելիորեն շտկել են դրությունը և այժմ գործնական աշխատանք են ծավալում՝ ապահովելու տնտեսությունների հետագա վերելքը: Ամրխերի սովխոզը, 1974 թվականի համեմատությամբ, գրեթե երեք անգամ ավելացրել է ծխախոտի, մսի, կաթի և մեկուկես անգամ՝ բրդի արտադրության ու պետական մթերումների ծավալը: Այստեղ իններորդ հնգամյակի վերջին տարում մեկ կովի կաթնատվությունը կազմել է 966, իսկ մթերակայան հանձնած տավարի միջին կենդանի քաշը՝ 193 կիլոգրամ: Մինչդեռ 1979 թվականին դրանք համապատասխանաբար կազմեցին՝ 2187 և 307 կիլոգրամ:

Ո՞րն է հաջողության գաղտնիքը: Այն ամենից առաջ պիտի որոնել ղեկավար և միջին օղակի կադրերի, սկզբնական կուսկազմակերպության (քարտուղար՝ Մ. Իսկանդարով) արդյունավետ գործունեության մեջ: Չէ՞ որ նույնն են հողը, մարդիկ: Փոխվել են միայն հանրային արտադրության կուսակցական ղեկավարման ոճը և մարդկանց վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ: Դիրեկտոր Ն. Աղամալիևը, անասնապահական ու դաշտավարական բրիգադավարները, որոնք առաջ քաշվեցին գյուղատնտեսության մասնագետների և երկարամյա փորձ ունեցող կադրերի թվից, ավելի մեծ պատասխանատվությամբ են վերաբերվում իրենց գործին, բարձրացել է կոմունիստների ակտիվությունը: Կուսկազմակերպության ժողովներում և բյուրոյի նիստերում պար-

բերաբար քննարկվում են հանրային արտադրությանը վերաբերող կենսական հարցեր, ղեկավար և միջին օղակի կադրերի, կոմունիստների հաշվետվություններ:

Նման օրինակները քիչ չեն, և դրանք վկայում են, որ շրջկոմին հաջողվել է էապես բարձրացնել սկզբնական կուսկազմակերպությունների, ղեկավար կադրերի և մասնագետների պատասխանատվությունը տնտեսությունների գործերի վիճակի համար: Կուսկազմակերպություններն այժմ ավելի գործնականորեն են հետևում գյուղատնտեսության վարման կուլտուրայի բարձրացմանը, նորի ու առաջավորի արմատավորմանը: Եթե Ամրխերում շարունակվում է վերակառուցման պրոցեսը, ապա Արծվաշենի սովխոզում ամրապնդվել է ձեռք բերածը, հաստատուն նախադրյալներ են ստեղծվել էկոնոմիկայի հետագա վերելքն ապահովելու համար:

Այս տնտեսության ղեկը երկու տասնամյակ է, ինչ գտնվում է արտադրության հմուտ կազմակերպիչ, ՍՄԿԿ անդամ Ս. Դանիելյանի ձեռքում: Հատկապես վերջին տարիները եղել են վերելքի ու լավ գործերի ժամանակաշրջան, որի ընթացքում սովխոզը դարձել է օրինակելի տնտեսություն: Դիրեկտորը կարողանում է հմտորեն ղեկավարել արտադրությունը, արդյունավետ կերպով գործադրել եղած միջոցները, մարդկանց նպատակամղել առաջադրված խնդիրների լուծմանը: Սովխոզի սկզբնական կուսկազմակերպությունը, նրա բյուրոն (քարտուղար՝ Ս. Չիլինգարյան) ուղղություն են տալիս կադրերի աշխատանքին, գլխավորում արտադրության մարդկանց խանդավառությունը: Ո՞րն է դրականը նրանց աշխատանքում: Ամենից առաջ այն, որ կուսկազմակերպությունն ու նրա բյուրոն մշտապես խորամուխ են լինում հանրային արտադրության հրատապ խնդիրների մեջ, ժամանակին պարզում դրա նեղ տեղերը: Կուսժողովներում և բյուրոյի նիստերում քննարկվում են այնպիսի հարցեր, որոնք տվյալ փուլում ունեն առաջնահերթ նշանակություն: Մշակվող միջոցառումները, ընդունված որոշումները բխում են արտադրական ճյուղերի, ողջ տնտեսության գործերի բարելավման շահերից, խթանում են գյուղատնտեսական մթերքների արտադրության աճը, մոբիլիզացնում մարդկանց ուժերը, նպաստում առաջադրված խնդիրների լուծմանը: Ղեկավար և միջին օղակի կադրերը, կոմունիստները կուսժողովներում ու բյուրոյի նիստերում հաշիվ են տալիս իրենց արածի ու անելիքների մասին:

Կուսկազմակերպության ծավալած կազմակերպչական ու քաղաքական-դաստիարակչական արդյունավետ աշխատանքը, հանրային արտադրության ղեկավարման և կադրերի ընտրության ու տեղաբաշխման բնագավառներում դիրեկցիայի հետ հաստատած սերտ համագործակցությունը նպաստել են կոլեկտիվում համերաշխության ու փոխադարձ հարգանքի, բարոյահոգեբանական առողջ մթնոլորտի ստեղծմանը, գիտակցական ամուր կարգապահության հաստատմանը:

Եվ օրինաչափ է, որ հենց Արծվաշենի սովխոզի բանվոր-ծառայողները, ծանր ու թեթև անելով տնտեսության հնարավորություններն ու ռեզերվները, հանդես եկան գյուղատնտեսական մթերքների պետական մթերումների հնգամյա պլանը չորս տարում կատարելու հայրենասիրական նախաձեռնությամբ, որն արժանացավ ո՛չ միայն կուսշրջկոմի, այլև ՀԿԿ Կենտկոմի հավանությանը և լայն արձագանք գտավ շրջանի ու հանրապետության շատ տնտեսություններում:

Արծվաշենցիների պայքարի արգասիքը նրանց ձեռք բերած հաջողություններն են: Նախաձեռնությունը կյանքի կոչելու համար պայքարի ելան արտադրության բոլոր օղակների կոլեկտիվները: Քննարկելով իր անելիքները, կաթնապրանքային ֆերմայի կոլեկտիվը, օրինակ, գտավ, որ իրական նախադրյալներ կան անասնապահական մթերքների արտադրության ու մթերումների հնգամյակի պլանը ոչ թե չորս տարում, ինչպես պարտավորվել էր նախկինում, այլ երեքուկես տարում կատարելու համար: Ֆերմայի մարդիկ այդպես էլ որոշեցին և իրենց խոսքը գործի վերածեցին: Նրանք այդ ժամանակամիջոցում նվաճեցին հնգամյակի բնագծերը: 1979 թ. կովերի միջին կաթնատվությունն այստեղ կազմեց 2534 կիլոգրամ, որը նախորդ հնգամյակի միջին մակարդակի



համեմատությամբ ավելի է 1543 կիլոգրամով: Այդ նույն ժամանակաշրջանում պետությանը հանձնած տավարի միջին կենդանի քաշը 185-ից հասցվեց 351 կիլոգրամի: Ֆերման, որի վարիչն է կոմունիստ Ա. Բրուտյանը, տվեց շրջանի առաջին երեքհազարական կթվորուհին՝ Թամամ Ղալեչյան: Այսօր շրջանում նրա օրինակով աշխատում են 22 կթվորներ, որոնցից 8-ը արծվաշենցիներ են՝ Ա. Բրուտյանը, Գ. Կիրակոսյանը, Ք. Բրուտյանը և ուրիշներ: Այժմ ֆերմայի ողջ կոլեկտիվն է պայքարում երեքհազարական դառնալու համար:

Տասներորդ հնգամյակում լավ աշխատեցին նաև Արծվաշենի դաշտավարները: Նրանք չորս տարում, ինչպես խոստացել էին, զեկուցեցին կարտոֆիլի, ծխախոտի և հացահատիկի արտադրության և պետական մթերումների հնգամյա առաջադրանքները կատարելու մասին: Առավել բարձր արդյունքների հասան Աղասար Թուխտարյանի և Ալեքսան Պողոսյանի ղեկավարած բրիգադների կոլեկտիվները, որոնք, նախորդ տարիների համեմատությամբ, զգալիորեն բարձրացրին այդ կուլտուրաների բերքատվությունը. 1979 թվականին նրանք ամեն մի հեկտարից ստացան 145—150 ցենտներ կարտոֆիլի բերք, 30—32 ցենտներ ծխախոտի հումք:

Մրցություն ծավալելով ի պատիվ Հայաստանում սովետական կարգերի հաստատման ու Հայաստանի կոմկուսի կազմավորման 60-ամյակի՝ արծվաշենցիները պատրաստակամություն էին հայտնել տասներորդ հնգամյակի վերջին տարվա բնագծերը նվաճել մինչև հուլիսի 1-ը: Եվ ահա կատարվեց այդ խոստումը ևս:

Եվ այսպես, Արծվաշենի սովխոզի մարդիկ, հանդես գալով հայրենասիրական նախաձեռնությամբ, ամեն եռանդ ու ջանք ներդրեցին այն իրականացնելու համար: Նրանց լավ գործերը գնահատվում են ըստ արժանվույն: Համամիութենական սոցիալիստական մրցությունում հաղթելու համար սովխոզը երեք անգամ անընդմեջ արժանացել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին:

Արծվաշենցիների նախաձեռնությունը, ինչպես արդեն ասվեց, միայն տեղական բնույթի չէր: Այն որոշակի նշանակություն ունեցավ մեր շրջանի տնտեսական ծրագրերի իրագործման համար: Շրջկոմի բյուրոյի ընդլայնված նիստում համակողմանիորեն քննարկելով այդ նախաձեռնությունը, որոշեցինք ամբողջ շրջանում պայքար ծավալել պետական մթերումների հնգամյա պլանը չորս տարում կատարելու համար: Շրջսովետի գործկոմի հետ միասին հինգ տարվա առաջադրանքները բաշխեցինք չորս տարվա վրա՝ հաշվի առնելով, որ 1976 թվականը հաջող մեկնարկի տարի էր, և շրջանն արդեն զգալի առաջխաղացում ուներ: Ապա նախաձեռնությունից բխող առաջադրանքները բաժանեցինք ըստ տնտեսությունների: Այդպես վարվեցին նաև տնտեսություններում: Արծվաշենցիների նախաձեռնությունը և այդ առթիվ կուսշրջկոմի բյուրոյի որոշումը քննարկելուց հետո նոր պարտավորություններ ստանձնեցին ինչպես տնտեսություններն ամբողջությամբ վերցրած, այնպես էլ նրանց արտադրական ներքին օղակները:

Սակայն նախաձեռնությունը պաշտպանելը և նոր պարտավորություն ընդունելը միայն գործի սկիզբն էին: Անհրաժեշտ էր քաղաքական-դաստիարակչական, կազմակերպչական լայն աշխատանք ծավալել, ձգտել, որ յուրաքանչյուր տնտեսական ղեկավար, միջին օղակի աշխատող, մասնագետ, շարքային բանվոր ու կոլտնտեսական ամբողջ խորությամբ ըմբռնի գործի կարևորությունը և ձեռնամուխ լինի դրա կատարմանը: Այդ նպատակով էլ մշակեցինք ու իրականացրինք մի շարք միջոցառումներ: Հրավիրեցինք առաջավոր կարտոֆիլագործների, մեխանիզատորների, կթվորների ու անասնապահների հավաքներ, ստեղծեցինք կթվոր-անասնապահների երկուհազարականների ակումբ, սահմանեցինք ճյուղային փոխանցիկ կարմիր դրոշներ և դրամական մրցանակներ:

Կուսշրջկոմի բյուրոյի նիստերում, պլենումներում, ակտիվի ժողովներում պարբերաբար քննարկում էինք մրցության ընթացքն ու արդյունքները: Բյուրոյի նիստերում հաշվետվություններով հանդես էին գալիս ո՛չ միայն սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոներն ու կոմիտեները, այլև տնտեսու-

թյունների ու արտադրական ճյուղերի ղեկավարները, գյուղատնտեսության մասնագետները: Գործնական միջոցառումներ էին մշակվում նրանց աշխատանքում նկատված թերությունները վերացնելու, պետական պլանային առաջադրանքներն ու սոցիալիստական պարտավորությունները ժամանակին կատարելու համար: 1978 թվականի մայիսին շրջկոմի հերթական պլենումը քննարկեց «Հնգամյակը՝ չորս տարում» նախաձեռնության առնչությամբ շրջանի աշխատավորների ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը: Պլենումում հանգամանորեն վերլուծվեցին անցած տարիներին ձեռք բերված արդյունքները, բացահայտվեցին թերությունները և գործնական միջոցառումներ մշակվեցին գյուղատնտեսական մթերքների պետական մթերումների հնգամյա պլանը 1979 թվականին անպայմանորեն կատարելու համար:

Կազմակերպական և դաստիարակչական բնույթի միջոցառումների հետևողական իրականացումը խթանեց գյուղատնտեսական արտադրության վերելքը և մեծ չափով նպաստեց «Հնգամյակը՝ չորս տարում» նախաձեռնության արմատավորմանը, այդ առնչությամբ ստանձնած պարտավորությունների կատարմանը:

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման ասպարեզում, բացի արդեն նշված տնտեսություններից, նկատելի առաջընթաց կատարեցին նաև Մարտունու, Արտանիշի, Ն. Բաշգյուղի, Ջայքենդի, Ջիլի և այլ տնտեսություններ: Նրանք ևս հնգամյակը չորս տարում կատարելու խոստում տվեցին և գործի վերածեցին այն:

Հնգամյակը չորս տարում կատարելու վերաբերյալ նախաձեռնությունը վերածվեց հայրենասիրական մի հիանալի շարժման, որն իր ոլորտի մեջ առավ ոչ միայն պետական ու կոլեկտիվ տնտեսություններին, այլև նրանց ստորին օղակներին, առանձին ընտանիքների, ամբողջական գերդաստանների ու անհատ աշխատողների: Այդ մրցության ընթացքում հայտնի դարձան տասնյակ առաջավորներ, որոնք աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի հիանալի օրինակներ տվեցին:

Կուսշրջկոմի բյուրոյի անդամ է Հոկտեմբերյան հեղափոխության և «Պատվո նշան» շքանշանների ասպետ, հմուտ մեխանիզատոր Իվան Սամոդուրովը: Երկար տարիներ աշխատում է շրջկենտրոնի սովխոզում: Բարձր պարգևները ինքնին նրա գործադրած համառ ջանքերի արժանի գնահատականն են: Այժմ հոր օրինակով նույն տնտեսությունում մեխանիզատորի շնորհակալ գործով են զբաղված նրա երկու որդիները: Այլ խոսքով, մեխանիզատորների ընտանեկան մի օղակ, որը միշտ քայլում է մրցության առաջամարտիկների շարքերում:

Ջիլ գյուղի միջնակարգ դպրոցն ավարտելուց հետո Բալախանում և Սուչայաթ Թանրվերդիևները գնացին արտադրություն՝ հորթապահ հոր հետ աշխատելու: Տնտեսությունում նոր էր ներդրվում խոշոր եղջերավոր անասունների մատղաշների ինտենսիվ աճեցման ու բտման մեթոդը: Անասնապահների այդ ընտանեկան օղակը գերազանց է կատարում իր խնդիրը: Նրանց աշխատանքի փորձը շատերն են ուսումնասիրել ու կիրառել: Մատղաշապահ աղջիկները կոմունիստներ են, իսկ Սուչայաթը՝ նաև շրջանային կուսկազմակերպության վերստուգիչ հանձնաժողովի անդամ, ժողովրդական դեպուտատների շրջսովետի դեպուտատ:

Աշխատանքի գերազանց օրինակ են ցույց տալիս նաև ծխախոտագործներ, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի անդամության թեկնածու Յու. Մամեդովան, Հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ Ա. Ալիևան (Գյոլքենդ), Լենինի շքանշանակիր Հ. Բրուտյանը (Արծվաշեն), կթվորուհիներ Ս. Ճաղարյանը (Օրջոնիկիձե), Վ. Պողոսյանը (Ճամբարակ) և շատ ուրիշներ:

Մեր շրջանի գյուղատնտեսության առաջատար ճյուղը անասնապահությունն է, որի զարգացման գլխավոր պայմանը կերի կայուն բազայի ստեղծումն է: Եվ այդ խնդիրը մշտապես պահում ենք մեր տեսադաշտում: Շրջանի բոլոր տնտեսություններում խոշոր միջոցառումներ են իրականացվում դաշտային կերարտադրությունն ավելացնելու, խոտացանությունն ընդլայնելու, դրանց բերքատվությունը բարձրացնելու համար: Բավական է նշել, որ 1974



թվականի 475-ի փոխարեն այժմ շրջանի տնտեսություններում բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունը կազմում է ավելի քան չորս հազար հեկտար: Աշխատանքներ են տարվում առաջիկայում՝ 1981—1982 թվականներին, դրանց ցանքատարածությունը 7—7,5 հազար հեկտարի հասցնելու համար: Այդպիսով, ընդհանուր վարելահողերի շուրջ 70 տոկոսը կդրվի խոտացանության տակ: Եվ պատահական չէ, որ եթե նախորդ հնգամյակում տարեկան միջին հաշվով շրջանում կուտակվում էր 29—30 հազար տոննա ընդհանուր բալանսով կեր, ապա 1979-ին այն ավելի քան կրկնապատկվեց և հասցվեց 67 հազարի: Ընդ որում, միայն խոտի կուտակումը կազմեց 32 հազար տոննա:

Կերի բազայի ամրապնդման շնորհիվ շրջանի տնտեսությունները վերջին տարիներին կարողացան զգալի չափով ավելացնել անասնապահական հիմնական մթերքների արտադրությունը և, նախորդ հնգամյակի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, տասներորդ հնգամյակի չորս տարում պետությանն ավելի վաճառել 1809 տոննա միս, 6885 տոննա կաթ և 82 տոննա բուրդ:

Անասնապահական մթերքների արտադրության ու պետական վաճառքի պլանների հաջող կատարման գործում կարևոր նշանակություն ունեցավ այդ ճյուղում առաջավոր փորձի և գիտության նվաճումների արմատավորումը: Վերջին տարիներին լուրջ ուշադրություն է նվիրվում կերերի նախնական մշակմանը: Շրջանի ինը խոշոր տնտեսություններում կառուցվել ու ներկայումս գործում են կերախոհանոցներ, երեքը կգործարկվի ընթացիկ տարում: Իսկ այն տնտեսությունները, որոնք կերախոհանոց չունեն, մանրացնում են կոշտ կերը և նախնական մշակումից հետո միայն տալիս անասուններին:

Մեր առջև ծառացած գլխավոր խնդիրը հանրային հոտի մթերատվության բարձրացումն է և մթերքների համախառն արտադրության նկատելի աճի ապահովումը: Այդ խնդիրը միայն կերի ամուր բազայի ստեղծումով լուծել հնարավոր չէ: Հարկավոր է իրականացնել նաև այլ միջոցառումներ: Դրանցից մեկը ցեղաբուծական աշխատանքի խելամիտ կազմակերպումն է: Այժմ մեր տնտեսություններում հետևողական աշխատանք է տարվում անասունների ցեղի բարելավման համար: Եվ դա իրականացվում է ինչպես դրսից ցեղական երինջների ներմուծմամբ, այնպես էլ տնտեսություններում բարձր մթերատու երինջների աճեցմամբ: Ամեն տարի առանձնահատուկ պայմաններում պահվում է շուրջ 1200 գլուխ բարձրարժեք էգ մատղաշ, որոնցով հետագայում համալրվում է կովերի կազմը: Որոշակի քայլեր են արվում ոչխարաբուծության մեջ ևս ցեղաբուծական աշխատանքը բարելավելու համար: Այդ գործում մենք, իրոք, ունենք լուրջ թերություններ, որոնց համար մեզ միանգամայն իրավացիորեն քննադատեցին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1980 թ. ապրիլյան պլենումում:

Շրջանի տնտեսությունները նկատելի աշխատանք են կատարել նաև «Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսության մասնագիտացման ու համակենտրոնացման հետագա զարգացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1976 թվականի հայտնի որոշման կատարման նպատակով: Առաջին կոնկրետ քայլը Ճամբարակի սովխոզի Ներքին Ճամբարակի տեղամասի բազայի վրա խոշոր եղջերավոր անասունների արու մատղաշի ինտենսիվ աճեցման միջտնտեսային ձեռնարկության ստեղծումն էր (ի դեպ, մատղաշների ինտենսիվ աճեցման առաջավոր մեթոդը շրջանում դրանից մեկուկես տարի առաջ էր ներդրվել): Այդ ձեռնարկությունում տարվող աշխատանքներն ու ստացվող արդյունքները հույս են ներշնչում, որ այն կդառնա օրինակելի տնտեսություն: Այստեղ մեկ տարեկան մատղաշի քաշն արդեն հասցվում է 340—350 կիլոգրամի: Աստիճանաբար արմատավորվում է նաև գառների ինտենսիվ աճեցման մեթոդը:

Շրջանի տնտեսություններում լայնորեն օգտագործվում են գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման հետագա զարգացման հնարավորությունները: Կուսշրջկոմի և շրջսովետի գործկոմի մշակած մասնագիտացման պլանին համապատասխան՝ խոշոր եղջերավոր անասունները հիմնականում կենտրոնացվելու են Կրասնոսելսկի, Վ. Ճամբարակի,

Օրջոնիկիձեի, Թթուջրի և Արծվաշենի տնտեսություններում: Կրասնոսելսկի սովխոզում կառուցվում է 800 գլուխ կովի համար կաթնային համալիր, որի առաջին հերթն արդեն գործում է: Իսկ ոչխարաբուծությունը կենտրոնացվում է այդ ճյուղի զարգացման հեռանկարներ ունեցող Գյոլքենդի, Թոխլուջայի, Աղբուլաղի, Արտանիշի և Ջիլի տնտեսություններում: Նախատեսվում է ընդհանուր հոտում մայրական կազմը հասցնել 70—75 տոկոսի:

Սակայն անասնապահության զարգացումը, մասնագիտացումն ու համակենտրոնացումը պայմանավորված են նաև համապատասխան շենքերի առկայությամբ: Ավելորդ չէ նշել, որ այդ ասպարեզում նոր միայն որոշակի քայլեր են արվում: Շրջանի գրեթե բոլոր տնտեսություններում անասնապահական շենքերը կառուցվել են տասնյակ տարիներ առաջ և այսօր արդեն չեն համապատասխանում մեքենայացման և աշխատանքի կուլտուրական պայմանների պահանջներին: Հանրապետության պետպլանը և գյուղատնտեսության մինիստրությունը այս ասպարեզում մեզ պետք է ավելի շատ օգնություն ցույց տան:

Շրջանի գյուղատնտեսության մեջ իր որոշակի տեղն ունի կարտոֆիլաբուծությունը: Դրա համախառն արտադրության ծավալով Կրասնոսելսկը հանրապետությունում գրավում է երրորդ տեղը: Այդ ճյուղի հետագա զարգացման նպատակով վերջին տարիներին զգալի գործ է արվել: Բավական է ասել, որ ներկայումս կարտոֆիլի ցանքի, մշակության ու բերքահավաքի աշխատատար պրոցեսները հիմնականում մեքենայացվել են, առավել ուշադրություն է նվիրվում օրգանական ու հանքային պարարտանյութերի օգտագործմանը: Հիմնական թերությունը ցանքադաշտերի դեռևս ցածր բերքատվությունն է: Առաջավոր տնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ այս ասպարեզում դեռ չօգտագործված ռեզերվներ շատ կան: Այսպես, տարիներ շարունակ Թթուջրի, Մարտունու, Նոր Բաշգյուղի սովխոզները, ժամանակին կիրառելով բոլոր ագրոմիջոցառումները, կարողացել են կարտոֆիլի ցանքադաշտերի ամեն մի հեկտարից ստանալ 145—155 ցենտներ բերք, իսկ առանձին օղակներ ու բրիգադներ՝ 180 ցենտներից ավելի: Մինչդեռ կլիմայական գրեթե նույն պայմաններում գտնվող Կրասնոսելսկի, Օրջոնիկիձեի և Աղբուլաղի սովխոզները ամեն տարի թերակատարում են ինչպես բերքատվության, այնպես էլ համախառն արտադրանքի առաջադրանքները: Պատճառն այն է, որ նշված տնտեսություններում վատ են օգտագործվում բերքատվության բարձրացման հնարավորություններն ու ռեզերվները:

Վերջին տարիներին նկատելիորեն զարգանում է ծխախոտագործությունը, որը տարիներ ի վեր մեր շրջանում աննկամտաբեր է եղել: Տասներորդ հնգամյակի անցած տարիներին 230 հեկտար ծխախոտի ցանքատարածություն դարձրել ենք ջրովի: Դրա շնորհիվ այդ կուլտուրայի բերքատվությունը գրեթե կրկնապատկվել է: Եթե իններորդ հնգամյակում պետությանը տարեկան միջին հաշվով վաճառվում էր 380 տոննա հումք, ապա 1978 և 1979 թվականներին այդ ցուցանիշը հասավ 800-ական տոննայի:

Մեր հողերը բերրի են, ցանքադաշտերի մշակությունը կատարվում է արդի ագրոկանոններին համապատասխան, պարարտացումն ու սնուցումը՝ ժամանակին ու բարձր որակով, սակայն հուլիսի երկրորդ կեսերից սկսվող երաշտը բացասաբար է անդրադառնում բերքի վրա: Եվ մենք ձգտում ենք օգտագործել ցանքադաշտերը ոռոգելու բոլոր հնարավորությունները: Արծվաշենի սովխոզի տարածքում կառուցված ջրամբարը, օրինակ, հնարավորություն է ընձեռել ոռոգելի դարձնել 500 հեկտար կարտոֆիլի, ծխախոտի ցանքադաշտերն ու բազմամյա խոտհարքերը:

Մենք կարող ենք կապիտալ փոքր ներդրումներով ջրովի դարձնել ևս մոտ 500 հեկտար կարտոֆիլի ցանքադաշտ՝ Կրասնոսելսկի, Օրջոնիկիձեի և Ճամբարակի սովխոզներում: Միայն հարկավոր է, որ հանրապետության ջրային տնտեսության և մելիորացիայի մինիստրությունն օգնի կիսախողովակներ ձեռք բերելու գործում:



Տասներորդ հնգամյակում շրջանի տնտեսությունները զգալիորեն ավելացրել են գյուղատնտեսական արտադրանքի ծավալը՝ հողագործական կուլտուրաների բերքատվության և անասունների մթերատվության բարձրացման հիման վրա: Արդեն վեց ամիս է, ինչ մենք պետությանը անասնապահական մթերքներ ենք վաճառում հնգամյա պլանից դուրս: Աշնանը գերակատարման հաշվին մթերակայաններ կուղարկենք նաև մեծ քանակությամբ հացահատիկ, կարտոֆիլ և ծխախոտի հումք:

Այժմ մենք պայքար ենք ծավալում արտադրվող մթերքների որակի բարձրացման ու ինքնարժեքի իջեցման համար: Այդ խնդիրների լուծումը ժամանակ ու միջոցներ է պահանջում: Շրջանի գյուղատնտեսության հետագա ինտենսիվ զարգացմանը մեծապես կարող են նպաստել նաև ցանովի կերաբույսերի տարածությունների ընդարձակումը (ի հաշիվ հացահատիկի ցանքատարածությունների կրճատման) և արտադրական օբյեկտների, անասնապահական շենքերի շինարարության պլանավորումն ու իրագործումը:

Կուսակցության հերթական՝ XXVI համագումար հրավիրելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումը խանդավառությամբ ընդունեցին գյուղի աշխատավորները: Ամենուրեք սկզբնական կուսկազմակերպություններում քննարկվեցին հունիսյան պլենումի արդյունքները և մշակվեցին նոր, լրացուցիչ միջոցառումներ՝ հնգամյակը հաջողությամբ եզրափակելու համար: Եվ մենք խորապես համոզված ենք, որ տասներորդ հնգամյակի ծրագրի իրագործումը էական նախադրյալ կլինի հաջորդ՝ տասնմեկերորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական խնդիրները լուծելու համար: Այժմ շրջանի բոլոր տնտեսություններում, հիմնարկ-ձեռնարկություններում լարված, համակողմանի աշխատանք են ծավալում հնգամյակի եզրափակիչ տարվա խնդիրները ժամկետից շուտ՝ Սովետական Հայաստանի 60-ամյա տարելիցի նախօրեին կատարելու համար:

Կուսակցության շրջանային կոմիտեն, շրջսովետի գործկոմը, տնտեսությունների ղեկավարներն ու սկզբնական կուսկազմակերպությունները, քննադատաբար վերլուծելով հնգամյակի անցած տարիների իրենց գործունեությունը, անում են ամեն ինչ՝ եղած թերությունները արագորեն վերացնելու, տնտեսությունների շահութաբերությունը ապահովելու, Հայաստանի կոմկուսի XXVII համագումարն ու ՍՄԿԿ XXVI համագումարն արժանի գործերով դիմավորելու համար:

---

# ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԿԱՐԵՎՈՐ ԵՐԱՇԽԻՔԸ

**Ս. Ս. ԶԱՔԱՐՅԱՆ**
ՀԿԿ Սևանի շրջկոմի առաջին քարտուղար

ՍԵՎԱՆԻ ՇՐՋԱՆԻ աշխատավորները պայքարում են 1980 թվականի և, ամբողջությամբ վերցրած, տասներորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու, ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թ. նոյեմբերյան պլենումի որոշումները, կուսակցության սոցիալ-տնտեսական կանխագծումները իրականացնելու համար: Աշխատավորական կոլեկտիվներին նպատակամղելով տնտեսական ու կուլտուրական շինարարության, արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման խնդիրների լուծմանը, կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները ջանում են այդ պայքարում ըստ ամենայնի կիրառել քաղաքական-դաստիարակչական և կազմակերպական աշխատանքի բազմազան ձևերն ու միջոցները, շարժման մեջ դնել մարդկանց ստեղծագործական եռանդի ու նախաձեռնության աճի բոլոր գործոնները: Այդ համակարգում կարևոր դեր է վերապահվում նաև քննադատության և ինքնաքննադատության զարգացմանը, կուսակցական ժողովներում, շրջկոմի պլենումներում, ակտիվի ժողովներում, խորհրդակցություններում, անձնական զրույցների ժամանակ կոմունիստների արած դիտողություններին ու առաջարկություններին ընթացք տալուն: Դրանք կուսկազմակերպությունների մարտունակության աճի, եղած թերությունների վերացման, գործերի վիճակի բարելավման և առաջընթացի կարևոր երաշխիք են:

Սոցիալիզմի պայմաններում քննադատությունն ու ինքնաքննադատությունը հասարակական առաջընթացի մեծ ուժ են, իրականության ճիշտ գնահատման, հնացած պատկերացումների ու տեսակետների վերագնահատման հուսալի միջոց: Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս քննադատության ու ինքնաքննադատության զարգացմանը, սովորեցնում կադրերին՝ սթափ գնահատել իրավիճակը, համարձակորեն նայել ճշմարտության աչքերին, չտարվել ինքնաբավ լավատեսությամբ, տեսնել թերություններն ու սխալները, հաղթահարել և վերացնել դրանք:

Ղեկավարվելով Վ. Ի. Լենինի հիմնարար ցուցումներով և իր բազմաբովանդակ գործունեությունը ծավալելով հասարակական երևույթների խոր վերլուծության հիման վրա՝ ՍՄԿԿ-ն հետևողականորեն զարգացնում է ներկուսակցական դեմոկրատիան, պայմաններ ստեղծում կուսակցության քաղաքականության և պրակտիկ աշխատանքի համակողմանի քննարկման, որոշումների մշակման և իրականացման, հանուն կոմունիզմի իդեալների մղվող պայքարին կոմունիստների, բոլոր աշխատավորների լայն մասնակցությունն ապահովելու համար: Ներկուսակցական կյանքի խելամիտ կազմակերպումը, սոցիալիստական ողջ իրականությունը բարենպաստ հող են նախապատրաստում քննադատության ու ինքնաքննադատության լայն ծավալման համար: Կուսշրջկոմը հոգ է տանում, որպեսզի սկզբնական կուսկազմակերպությունները առավել արդյունավետությամբ օգտագործեն ներկուսակցական դեմոկրատիայի ընձեռած լայն հնարավորությունները, քննադատությունն իրոք ծառայեցնեն որպես գործերի բարելավման միջոց, սոցիալ-տնտեսական առաջընթացի արագացուցիչ:

Այդ գործի հաջողության կարևոր պայմանը նախ և առաջ կուսկազմակերպություններում այնպիսի մթնոլորտի ստեղծումն է, որը կոմունիստներին հնարավորություն տա անկեղծորեն արտահայտվելու, միմյանց ասելու ճշմարտությունը, խարազանելու թերացողներին, որպեսզի ինչպես նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, «...այս կամ այն աշխատողի գործունեության բոլոր կողմերը ստանան օբյեկտիվ գնահատական... եղած թերությունները համակողմանի վերլուծության ենթարկվեն դրանք վերացնելու նպատակով» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 102): Այդպիսի մթնոլորտում են ձևավորվում կոմունիստների լավագույն հատկությունները, ինչպիսիք են՝ ակտիվությունը, գործարարությունը, հօգուտ հասարակության գործելու խոր շահագրգռությունը:

Քննադատությունը կարող է ինքնանպատակ դառնալ, եթե դրան չեն հաջորդում կոնկրետ գործը, սխալների շտկումը, թերությունների վերացումը: Քննադատությունը մինչև վերջ տեղ հասցնելու նախանձախնդրությամբ շրջանային կոմիտեն առանձնակի ուշադրություն է նվիրում կոմունիստների առաջարկությունների ու դիտողությունների հետևողական կենսագործմանը, այդ առնչությամբ մշտապես բարձրացնում պահանջկոտությունը սկզբնական կուսկազմակերպությունների նկատմամբ: Շրջկոմն ուշադիր է հատկապես իրեն հասցեագրված դիտողություններին ընթացք տալու հարցում և ձգտում է դրանցից առանձնացնել ու օգտագործել այն ամենը, ինչ գնահատելի և օգտակար է: Այդ նպատակով շրջկոմում սահմանվել է քննադատական դիտողությունների և առաջարկությունների հաշվառման, դրանց կենսագործման հսկողության որոշակի կարգ: Կոմունիստների կարծիքներն ու խորհուրդները հանգամանորեն ուսումնասիրվում և ընդհանրացվում են, որոշվում են դրանց ընթացք տալու համար պատասխանատու անձինք և կազմակերպությունները: Տրված հանձնարարությունների կատարումը հանվում է հսկողությունից միայն կատարման վերաբերյալ գրավոր ինֆորմացիա ստացվելուց և տեղում իրավիճակը պարզելուց հետո:

Քննադատական դիտողությունների իրականացման ընթացքին և կատարման արդյունքներին շրջկոմը պարբերաբար անդրադառնում է պլենումներում և բյուրոյի նիստերում: Իսկ դա հսկողության ստուգված և արդյունավետ ձև է: Անցյալ տարվա մարտին բյուրոյում քննարկեցինք կոմունիստների քննադատական դիտողությունների կենսագործման վիճակը շրջանի սկզբնական կուսկազմակերպություններում: Նշելով, որ հաշվետու ժողովներում արծարծված հարցերի հիմնական մասը լուծվել է, բյուրոն միաժամանակ համապատասխան գնահատական տվեց «Հայէներգացանցշին» տրեստի Սևանի № 1 մեքենայացված շարժական շարասյան և Գագարին ավանի կոմունալ սպասարկման ու բարեկարգման գրասենյակի ղեկավարների վերաբերմունքին, որոնք ժամանակին ընթացք չէին տվել Սևանի նոր էլեկտրական ենթակայանի երկրորդ հերթի գործարկումը և Ծովագյուղի դպրոցի օժանդակ կառույցի նորոգումը ձգձգելու վերաբերյալ իրենց հասցեին արված քննադատական դիտողություններին: Բյուրոն սահմանեց կատարման ժամկետներ, շրջկոմի կուսակցական-կազմակերպական բաժնին վերապահեց տրված հանձնարարականների մինչև վերջ իրականացման հսկողությունը: Սահմանված ժամկետներում ենթակայանը գործարկվեց, իսկ օժանդակ շինությունը նորոգվեց: Այս փաստը վկայում է, որ ինչպես ամեն մի գործում, այնպես էլ կոմունիստների քննադատական դիտողությունների հարցում հարկ է ցուցաբերել մեծ հետևողականություն:

Կուսշրջկոմը ջանում է, որպեսզի ընդհանուր գործի շահերից բխող ոչ մի դիտողություն կամ առաջարկություն չմնա թղթի վրա, կուսկազմակերպությունները չանտեսեն դրանք և դրանց կատարումը համարեն իրենց հարազատ գործը: Այդ նպատակն էր հետապնդում Սևանի քաղաքային ավտոձեռնարկության, բուժհիմնարկների? 

ինչպես նաև շրջանային հիվանդանոցի մանկական բաժանմունքի ու պոլիկլինիկայի շենքերի ջեռուցումը կարգավորելու և այլ հարցեր: Սա, իհարկե, լավ է: Սակայն վատն այն է, որ առանձին դիտողություններ ու առաջարկություններ, այնուամենայնիվ, մինչև վերջ ընթացք չեն ստացել: Խոսքը վերաբերում է ավտոձեռնարկությունում ավտոմեքենաների լվացման կետի ստեղծմանը, երիտասարդության քաղաքական ուսուցման բարելավմանը, վարորդների շրջանում դաստիարակչական աշխատանքի ուժեղացմանը, հիվանդանոցում և Հայգյուղտեխսպետկոմի շրջանային միավորումում ու շրջկոոպում մի շարք կենսական նշանակություն ունեցող հարցերի լուծմանը: Շրջկոմի բյուրոն կոնկրետ հանձնարարություններ տվեց այդ հիմնարկությունների ղեկավարներին ու կուսկազմակերպություններին և հետամուտ եղավ դրանց կատարմանը:

Կուսակցական կազմակերպությունների անցած հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում նախորդ մեկ տարվա գործունեության արդյունքների վերլուծությունը ցույց տվեց, որ թե՛ շրջանային կոմիտեն, թե՛ կազմակերպությունները արդյունավետ աշխատանք են ծավալել կոմունիստների քննադատական դիտողությունների կենսագործման նպատակով: Տեղական և վերադաս կազմակերպությունների հասցեին արված բոլոր էական դիտողություններն ու առաջարկությունները կամ իրականացվել, կամ կատարման ընթացքի մեջ էին: Հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները միաժամանակ արեցին նոր դիտողություններ ու առաջարկություններ: Կուսշրջկոմի բյուրոն 1979 թ. դեկտեմբերի 7-ի նիստում քննարկեց դրանց իրագործման հարցը և այդ առթիվ ընդունեց համապատասխան որոշում: Առաջարկությունները խմբավորվեցին և ուղարկվեցին դրանց իրագործման հետ առնչվող տեղական կազմակերպություններին, հանրապետական գերատեսչություններին՝ կոնկրետ ժամկետներում ընթացք տալու և լուծելու համար: Շրջկոմի բաժինները հսկողություն սահմանեցին այդ առաջարկությունների կատարման նկատմամբ և արդյունքների մասին իրազեկ պահեցին դրանց հեղինակներին:

Հասկանալի է, որ առանձին դիտողությունների իրականացումը տևական ժամանակ է պահանջում: Դրանք, որպես կանոն, մտցվում են կուսշրջկոմի հեռանկարային պլաններում, նկատի առնվում համապատասխան որոշումներով նախատեսված միջոցառումների մշակման և կենսագործման ընթացքում:

Կուսակցական ժողովներում, շրջկոմի պլենումներում քննադատական դիտողություններ ու առաջարկություններ են եղել գաղափարական դաստիարակության վերաբերյալ: Դրանց իրականացման գործում հսկայական նշանակություն ունեցավ «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը: Կուսշրջկոմի բյուրոյում և կուսակցական ժողովներում այդ որոշման քննարկման ժամանակ շեշտը դրվեց առկա թերությունների վերացման, այդ առթիվ եղած դիտողությունների անհապաղ կատարման, դաստիարակչական խնդիրների կոմպլեքսային և արդյունավետ լուծման վրա: Հաշվի առնելով կոմունիստների դիտողությունները՝ շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը ուժեղացրել է հսկողությունը դասախոսական աշխատանքի կազմակերպման, կուսակցական քաղաքական ուսուցման և աշխատավորների տնտեսագիտական կրթության կազմակերպման, միասնական քաղօրերի անցկացման նկատմամբ: Կազմակերպված, բարձր մակարդակով և ունկնդիրների ակտիվ մասնակցությամբ են անցնում հատկապես միասնական քաղօրերը: Այդ միջոցառման ժամանակ առաջադրվում են աշխատավորներին, կոմունիստներին հուզող և լուծում պահանջող հարցեր, որոնք խմբավորվում են կուսշրջկոմում, քննարկվում բյուրոյում: Դրանց մի մասը լուծվում է տեղում, մյուս մասն ուղարկվում համապատասխան կազմակերպություններին: Ընդ որում, հաջորդ քաղօրվա ընթացքում ինֆորմացիա է տրվում ունկնդիրներին դրանց կատարման ընթացքի և արդյունքների մասին:

Վերջին ժամանակներս, հատկապես 1979 թ. դեկտեմբերին, տեղի ունեցած շրջանային կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովում աշխատավորների նամակների առնչությամբ տարվող աշխատանքի և նրանց ընդունելության կազմակերպման հարցի քննարկումից հետո, այդ ասպարեզում ևս էական տե-



ղաշարժ է նկատվում: Ինչպես կոմունիստների դիտողությունների ու առաջարկությունների, այնպես էլ աշխատավորների գրավոր ու բանավոր դիմումներում արտահայտված բողոքների ու խնդրանքների ընդհանրացումն ու վերլուծությունը օգնում են մեզ՝ առավել հստակ պատկերացում ունենալու սկզբնական կուսկազմակերպություններում, աշխատանքային կոլեկտիվներում գործերի իրական վիճակի մասին, հետագա անելիքների համար անելու որոշակի հետևություններ:

Շրջանի արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության և տնտեսության մյուս բնագավառների շատ կուսկազմակերպություններ սեփական փորձով համոզվել են, որ քննադատության խթանումը, կոմունիստների դիտողությունների հաշվառումն ու ժամանակին կատարումը բարերար ազդեցություն են գործում ողջ աշխատանքի վրա, նպաստում առաջադրված նպատակների իրականացմանը: Խոսքը վերաբերում է Սևանի գործադիր մեխանիզմների, Գագարինի լուսատեխնիկական ապակու գործարանների, ձուկկոմբինատի, Դդմաշենի սովխոզի, պետբանկի, № 3 միջնակարգ դպրոցի և ուրիշ սկզբնական կազմակերպություններին: Իրենց ամենօրյա աշխատանքում հենվելով կոմունիստների կարծիքի վրա՝ նրանք ստեղծում են ընկերական պահանջկոտության, սկզբունքային քննադատության ու ինքնաքննադատության մթնոլորտ, պայմաններ ապահովում մարդկանց ունակությունների դրսևորման, քաղաքական և աշխատանքային ակտիվության բարձրացման համար: Նման պարագայում օրինաչափ են տասներորդ հնգամյակի անցած ժամանակաշրջանում գործադիր մեխանիզմների գործարանի (դիրեկտոր՝ Ս. Կարապետյան, կուսբյուրոյի քարտուղար՝ Մ. Ստեփանյան) նկատելի առաջընթացը, մրցությամբ ստանձնած պարտավորությունների հաջող կատարումը: Ձեռնարկության ունեցած արտադրական հզորության շրջանակներում չորս տարում արտադրության ծավալը մեծացել է 67 տոկոսով, ընդ որում, աճի 72,5 տոկոսն ապահովվել է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին: Եթե 1976 թվականին գործարանի ոչ մի արտադրատեսակ դեռևս որակի նշան չէր կրում, ապա անցյալ տարի արտադրանքի ընդհանուր ծավալի 88,6 տոկոսը թողարկվել է պետական որականիշով: Այժմ ձեռնարկության արտադրանքն առաքվում է Սովետական Միության 840-ից ավելի հասցեներով և արտասահմանյան 18 երկիր: Հնգամյակի ընթացքում գործարանը բոլոր եռամսյակներին անընդմեջ մրցանակային տեղեր է շահել համամիութենական սոցիալիստական մրցությունում:

Լավն այն է, որ հաջողությունները գործարանում ինքնաբավության մթնոլորտ չեն ստեղծում, կուսկազմակերպությունում տիրող քննադատական ոգին չեն թուլացնում: Դա հատկապես երևաց ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի արդյունքների քննարկմանը նվիրված կուսակցական ժողովում, որտեղ սրությամբ դրվեցին գործարանային ստանդարտների պահպանման, ռացիոնալիզատորական և գյուտարարական աշխատանքների խթանման, խնայողության ռեժիմի կիրառման և արտադրության արդյունավետության աճի մյուս ռեզերվների օգտագործման բարելավման հարցերը, նշվեցին դրանց լուծման ուղիները: Ժողովում կոմունիստների ելույթների և ստույգ հաշվարկների հիման վրա ցույց տրվեց, որ միայն անհարկի պարապուրդների կանխման և աշխատաժամանակի արդյունավետ օգտագործման միջոցով հնարավոր կլինի տարեկան լրացուցիչ թողարկել 400 հազար ռուբլու արտադրանք: Եղած ռեզերվների հաշվարկով էլ սարքաշինարարների կոլեկտիվն այս տարի ստանձնել է սոցիալիստական բարձր պարտավորություններ, խոստացել տասներորդ հնգամյակը կատարել մինչև հայ ժողովրդի վերածննդի 60-ամյա հոբելյանի օրը՝ նոյեմբերի 29-ը:

Ձեռնարկության հետագա առաջընթացին խանգարում է արտադրական տարածությունների սահմանափակությունը: Կուսշրջկոմը, հաշվի առնելով գործարանի կոմունիստների առաջարկությունները, հարց հարուցեց ՍՍՀՄ սարքաշինության, ավտոմատացման միջոցների և կառավարման սիստեմների մինիստրության առջև՝ միջոցներ հատկացնելու արտադրական նոր մասնաշենք կառուցելու համար: Մինիստրությունը պատրաստակամություն է հայտ-

նել՝ լուծելու այդ հարցը և միջոցներ է նախատեսել՝ եկող հնգամյակում մե-
ծացնելու ձեռնարկության արտադրական կարողությունները։
Կարելի է նման բազմաթիվ օրինակներ բերել, երբ շրջանային կոմիտեն,
տեղական և վերադաս մարմինների միջոցով, հետևողականորեն ընթացք է
տվել կոմունիստների քննադատական դիտողություններին։ Դրանք ամենա-
տարբեր բնույթի են, վերաբերում են գյուղատնտեսության նյութատեխնիկա-
կան բազայի ամրապնդմանն ու արդյունավետության բարձրացմանը, առան-
ձին օբյեկտների շինարարության արագացմանը, քաղաքում և գյուղերում,
ճափի հանգստի գոտում առևտրի, կենցաղային սպասարկման և կապի ծառա-
յությունների ոլորտի ընդլայնմանը, տնտեսական ու սոցիալական զանազան
հարցերի։ Դրանց լուծումը նպաստում է շրջանի ընդհանուր առաջընթացին և
նախադրյալ է ստեղծում նրա նոր վերելքի համար։
Ինչ խոսք, տեսնելով իրենց մտքերի, առաջարկությունների մարմնավո-
րումը, կոմունիստները նոր ոգևորությամբ ու եռանդով են ձեռնամուխ լինում
աշխատանքին, ակտիվացնում որոնումները, գործի դնում իրենց հնարամտու-
թյունն ու նախաձեռնությունը։ Եվ ընդհակառակը. արժեքավոր մտքերի ու
կարծիքների նկատմամբ անուշադրությունը կարող է մարել մարդկանց ստեղ-
ծագործական պոռթկումը, հանգեցնել պասիվության, թերությունների հանդեպ
հաշտվողականության։ Անցյալ տարվա մայիսին շրջկոմի բյուրոյում քննար-
կեցինք ընդունված որոշումների կատարման և կոմունիստների քննադատական
դիտողություններին ընթացք տալու վիճակը Սեմյոնովկայի սովխոզի սկզբնա-
կան կուսկազմակերպությունում։ Նման հարցադրումը պատահական չէր։ Կո-
մունիստների առաջարկությունների իրականացման հաջողությունը պայմա-
նավորված է առհասարակ ընդունված որոշումների կենսագործման կազմա-
կերպման բավարար դրվածքով։ Լավ հասկանալով այդ, շրջանի սկզբնական
կուսկազմակերպությունների գերակշռող մասն իր աշխատանքի հաջողությունը
պայմանավորում է կատարման հսկողության և ստուգման հստակ կազմա-
կերպումով, արվածը գնահատում վերջնական արդյունքներով։ Նրանց մոտ
պրակտիկա է դարձել կատարման կոլեկտիվ հսկողության և ստուգման այն-
պիսի արդյունավետ ձևի կիրառումը, ինչպիսին նախկինում ընդունված որո-
շումների իրագործման, ստացված առաջարկությունների կատարման մասին
կուսժողովներում մշտապես տրվող հաղորդումն է։ Մինչդեռ Սեմյոնովկայի
սովխոզի կուսկազմակերպությունում վիճակն այդ իմաստով բարվոք չէր։
Կազմակերպությունը բավարար պահանջկոտությամբ հետամուտ չէր եղել իր
որոշումների կատարմանը։ Անասնապահական ֆերմաներում աշխատատար
պրոցեսների մեքենայացման աստիճանի բարձրացման, տոհմային աշխա-
տանքի վերակառուցման, բանվոր-ծառայողների կուլտուր-կենցաղային պայ-
մանների բարելավման նպատակով ընդունված մի շարք որոշումներ, որոնցում
արտացոլվել էին կոմունիստների շատ քննադատական դիտողություններ,
մնացել էին անկատար։
Բյուրոյի որոշմամբ պահանջվեց կատարելագործել կոլեկտիվում տարվող
գաղափարադաստիարակչական, կազմակերպական աշխատանքները, բարձ-
րացնել վստահված գործի հանդեպ կադրերի պատասխանատվությունը, բոլոր
տեղամասերում ապահովել կոմունիստների ավանգարդային դերը։ Ինչպես
ցույց տվեց կազմակերպության հետագա գործունեությունը, այդ պահանջները
դարձան կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների լուծման, այդ թվում՝ արտա-
դրության բարելավման հուսալի ելակետ։ Տնտեսությունը 1979 թվականին
լուրջ առաջընթաց ունեցավ և տարին փակեց 53,5 հազար ռուբլու օգուտով,
պլանավորված 40 հազար վնասի դիմաց։
Կոմունիստներն իրենց ավանգարդային դերն ապահովում են հասարա-
կական-քաղաքական և աշխատանքային բարձր ակտիվությամբ, ամեն ինչում
ցուցաբերվող դրական օրինակով։ Ակտիվ կենսադիրքորոշումը, սոցիալիզմի
հակառակորդների դեմ անհաշտ պայքարը, քննադատության զարգացումն ու հա-
մակողմանի սատարումը սովետական ամեն մի քաղաքացու հասարակական
պարտքն է, իսկ կոմունիստի համար՝ նաև կանոնադրական պարտականություն։
Երբ վերջերս կուսշրջկոմի բյուրոյում քննարկում էինք Ծովագյուղի սովխոզի



սկզբնական կուսկազմակերպությունում կոմունիստների ավանգարդային դերի
բարձրացման հարցը, պարզվեց, որ որոշ կոմունիստներ ձեռնպահ են մնում
քննադատությունից, հանդես չեն գալիս առաջարկություններով, անգամ ելույթ
չեն ունենում, անտեսում են իրենց հասցեին արված դիտողությունները, ժա-
մանակին չեն կատարում տրված հանձնարարությունները, իսկ կազմակերպու-
թյունը, ինչպես հարկն է, պատասխան չի պահանջում նրանցից։ Ցանկալի ար-
դյունք չի տվել նաև ոմանց հաշվետվությունների քննարկումը։ Թերություն-
ների նկատմամբ հաշտվողականության, կադրերի հանդեպ թույլ պահանջկո-
տության բացասական հետևանքները նկատելի են աշխատանքի բոլոր ոլորտ-
ներում, հատկապես՝ արտադրության բնագավառում։ Սովխոզը տարիներ շա-
րունակ կրում է զգալի վնաս։ Միայն անցյալ տարի այն կազմեց 66 հազար
ռուբլի։
Մենք, իհարկե, համապատասխան գնահատական տվեցինք թերացողների
գործելակերպին և մշակեցինք կոմպլեքսային միջոցառումներ՝ տնտեսության
գործերը բարելավելու, կուսկազմակերպության մարտունակությունը, կոմու-
նիստների ավանգարդային դերը բարձրացնելու նպատակով։ Նշեցինք նաև այդ
առնչությամբ քննադատական ոգին զարգացնելու, կոմունիստների դիտողու-
թյունները մինչև վերջ իրագործելու կարևորությունը։
ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թ. նոյեմբերյան պլենումի որոշումների լույսի ներ-
քո քննադատաբար գնահատելով արվածը, շրջանի կոմունիստներն իրենց ջան-
քերը կենտրոնացրել են պլենումի պահանջների իրագործմանը, առանձնաձ
սոցիալիստական բարձր պարտավորությունների կատարման համար արտա-
դրության աճի բոլոր ռեզերվների բացահայտմանը և գործադրմանը։ Իսկ չօգ-
տագործված ռեզերվներ կան շրջանի էկոնոմիկայի բոլոր ճյուղերում։
Կուսակցության կանխագծումների իրականացման շահախնդրությամբ
շրջանի կոմունիստները, բոլոր աշխատավորները ձեռնամուխ են եղել ընթա-
ցիկ տարվա բնագծերի նվաճմանը։ 1980 թվականը, ինչպես ասվեց ՍՄԿԿ
Կենտկոմի նոյեմբերյան պլենումում, լինելով տասներորդ հնգամյակի եզրա-
փակիչ տարին, նաև այն բազան է, որի վրա կառուցվում է հաջորդ հնգամյակը։
Շրջանի աշխատավորությունը, բնականաբար, իր բոլոր ջանքերը նպատակա-
մղում է հնգամյակի հաջող ավարտմանը։
Լարված օրեր են ապրում գյուղի աշխատավորները, որոնք պայքար են
ծավալել այս տարվա բնակլիմայական դժվարին պայմանների հետևանքները
հաղթահարելու, անասնապահությունը կերի պաշարով ապահովելու համար,
որով մեծապես պայմանավորված է 1980—81 թվականների գյուղատնտեսա-
կան մթերքների արտադրության և վաճառքի առաջադրանքների հաջող կատա-
րումը։ Կուսշրջկոմը, շրջսովետի գործկոմի հետ համատեղ, քննարկելով կերի
կուտակման և բերքահավաքի կազմակերպված անցկացման հարցը, հոգ տա-
րավ, որ այդ գործում գյուղի մարդկանց արդյունավետ օգնություն ցույց տան
արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և ժողովրդական տըն-
տեսության մյուս բնագավառների կոլեկտիվները, շրջանում ստեղծվի մոբի-
լիզացիոն վիճակ, և կերի կուտակումն ու բերքահավաքը դառնան բոլորի գործը։
Շրջանում աշխատանքային և քաղաքական նոր վերելք է առաջ բերել կու-
սակցության XXVI համագումար հրավիրելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի հունիս-
յան պլենումի որոշումը։ Աշխատավորական կոլեկտիվները, ի պատիվ ՍՄԿԿ
առաջիկա համագումարի, Հայաստանի կոմկուսի XXVII համագումարի, ըն-
տանձնում են նոր պարտավորություններ, ձգտում արժանավայել դիմավորել
Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Հայաստանի կոմկուսի
կազմավորման 60-ամյա պանծալի հոբելյանը։ Շրջանային կոմիտեն, սկզբնա-
կան կուսկազմակերպությունները, ուղղություն տալով և զարգացնելով այդ
մրցությունը, այսուհետ ևս կձգտեն ըստ ամենայնի օգտագործել կուսակցա-
կան աշխատանքի հարուստ զինանոցի միջոցները, հատուկ հոգատարություն
դրսևորել կոմունիստների քննադատական դիտողությունների ու առաջարկու-
թյունների ժամանակին և մինչև վերջ կատարման նկատմամբ, այն համարե-
լով առաջընթացի կարևոր երաշխիք։

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՐՏԱԴՐԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԲԱԶԱՆ ԱՄՐԱՊՆԴԵԼՈՒ ՀԱՄԱՐ

**Ս. Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
ՀՍՍՀ գյուղատնտեսության արտադրատեխնիկական ապահովման պետական կոմիտեի նախագահ

ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ արտադրատեխնիկական ապահովման պետական կոմիտեի, նրա ձեռնարկությունների բազմահազարանոց կոլեկտիվը հետևողական ու նպատակասլաց գործունեություն է ծավալել ՍՄԿԿ XXV և Հայաստանի կոմկուսի XXVI համագումարների որոշումների կենսագործման բնագավառում և որոշակի արդյունքների է հասել տասներորդ հնգամյակի չորս տարվա առաջադրանքները կատարելու գործում: Արտադրանքի իրացման չորս տարիների պլանը կատարվել է 112,9 տոկոսով, ապրանքաշրջանառությանը՝ 107 տոկոսով:

Անցած չորս տարիների ընթացքում հանրապետության գյուղատնտեսությունը պլանից ավելի մատակարարվել են 32,3 մլն ռուբլու նյութատեխնիկական միջոցներ: Այդ տարիներին պլանից դուրս նորոգվել են 800 ավտոմեքենա և տրակտոր, 7.000 շարժիչ, 125 հազար ռուբլու զանազան մասեր: Զգալիորեն գերակատարվել են բեռների փոխադրման և բեռնաշրջանառության պլանները: Մեքենայացվել է 71.800 անասնատեղ կամ պլանը կատարվել է 101,3 տոկոսով:

Նույն ժամանակաընթացքում մեր մոնտաժային կազմակերպությունները հանրապետության տարբեր շրջաններում և արդյունաբերական կենտրոններում կառուցել ու շահագործման են հանձնել 36 հեկտար ջերմատնային տնտեսություններ և այլ շինություններ՝ 26,5 մլն ռուբլի արժողությամբ հիմնական ֆոնդեր: Գերակատարվել են քարքարոտ հողերի իրացման, հողերի բարելավման և ոռոգելի տարածությունների հիմնական հարթագծման աշխատանքների պլանները:

Տասներորդ հնգամյակի չորս տարիների ընթացքում մեր մեքենամելիորատիվ կայաններն ու մեքենայացված ջոկատները իրացրել և բարելավել են 42.300 հեկտար տարածություն, 71,1 հազար հեկտար խոտհարքներ ու արոտավայրեր, կատարել են 27,6 հազար հեկտար ջրովի հողերի հարթագծում, վերակառուցել զգալի տարածությամբ դարավանդներ:

Իրացված հողատեսքերի վրա: Աշտարակի շրջանում կազմակերպվել են չորս այգեգործական սովխոզներ, իսկ Կարբիի և Օհանավանի սովխոզներում պտղատու այգիներ հիմնելու համար նախապատրաստվել է 500 հեկտար զանգվածային հողատարածություն: Թալինի շրջանում խաղողի նոր այգիներ են հիմնվել Արտենիի և Ագարակի սովխոզներում: Եղեգնաձորի շրջանի Աղավնաձորի սովխոզում իրացված 1200 հեկտար հողատարածությունների վրա հիմնըվել են նոր այգիներ: Արարատի շրջանի Պարույրավանի, Արմաշի, Արազափի սովխոզներում նախապատրաստվել են տնկման համար շուրջ 1.100 հեկտար մշակելի հողեր: Որոշակի աշխատանքներ են տարվել նաև Ախուրյանի ջրամբարի գոտու հողերի իրացման նպատակով: Միայն Հոկտեմբերյանի շրջանում արդեն պատրաստ են 1000 հեկտար իրացված հողեր: Արարատի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Աշտարակի, Արտաշատի, Իջևանի և Նոյեմբերյանի շրջաններում 16 հազար հեկտար խաղողի թմբային հին այգիների փոխարեն հիմնըվում են նորերը:

Վերջին տարիներին մեծ ծավալի աշխատանքներ են կատարվել մսի, կաթի, ձվի, բրդի և այլ մթերքների արտադրության ավելացման նպատակով: Հանրապետության շրջաններում կազմակերպվել և գործում են մսացու մատղաշի և երինջների աճեցման միջտնտեսային ձեռնարկություններ, շահագործման են հանձնվել խոշոր թռչնաֆաբրիկաներ և համալիրներ: Դրանք, արդյունաբերական ձեռնարկությունների նման, հագեցված են բարդ մեքենասարքավորումներով: Այսպես, 54 հազար գլուխ խոզերի համար նախատեսված համալիրն ունի ավելի քան 1500 էլեկտրաշարժիչ, տարբեր մակնիշի 430 օդափոխիչ, 64 պոմպ, 3000 կոմպլեկտ խողովակաշարային արմատուրա: Համալիրներում տեղադրված մեքենասարքավորումների տեխնիկական սպասարկման և նորոգման աշխատանքները կատարելու համար 1978 թվականին կազմակերպվել էին «Գյուղտնտեխնիկա» պետական կոմիտեի Թալինի և Նաիրիի մասնագիտացված բաժանմունքները: Հանրապետությունում վերջին տարիներին շահագործման է հանձնվել 214 կերախոհանոց: Ներկայումս տնտեսություններում գործում են խոտալյուրի պատրաստման ու հատիկավորման հայրենական և արտասահմանյան արտադրության 121 բարդ ագրեգատներ: Հրազդանի շրջանի Քաղսիի տնտեսությունում գործում է կարբամիդի կերային արտադրամասը, նման արտադրամաս է կառուցվում նաև Աշտարակի շրջանի Օշականի սովխոզում:

Ինչ խոսք, աշխատանքի կազմակերպման նոր մեթոդների ներդրումը և կոմպլեքսային մեքենայացված ֆերմաների, համալիրների ու բարդ մեքենասարքավորումների առկայությունը պահանջում են յուրացնել դրանց լրիվ կարողությունը, ապահովել ֆերմաներում տեղադրված մեքենասարքավորումների արդյունավետ օգտագործումը, բարելավել մոնտաժային նորոգման աշխատանքը կոլտնտեսությունների և սովխոզների արտադրատեխնիկական սպասարկման գործում, նշանակալի չափով բարձրացնել կատարվող աշխատանքների որակը:

Ֆերմաներում, համալիրներում տեղադրված մեքենասարքավորումների նորոգման և տեխնիկական սպասարկման հատուկ բրիգադներ են ստեղծվել գյուղտեխնիկայի բոլոր շրջանային միավորումներում. գումարային արտահայտությամբ 1979 թվականին կատարվել է 1.361 հազար ռուբլու սպասարկման ու նորոգման աշխատանք:

Ֆերմաների տեխնիկական սպասարկումը բարելավելու նպատակով գյուղտեխնիկայի համարյա բոլոր շրջանային կազմակերպություններում կառուցվել և շահագործման են հանձնվել տեխնիկայի սպասարկման կայաններ: Աշտարակում կազմակերպվել է «Հայգյուղշինմոնտաժ» տրեստի արտադրական նախապատրաստական արտադրամաս՝ իր լաբորատորիաներով, որտեղ կատարվում են չափող-ստուգող և ավտոմատ սարքերի նորոգման ու կարգավորման աշխատանքներ:

Շրջգյուղտեխնիկայի ուժերով ու միջոցներով Հոկտեմբերյանի շրջանի տնտեսությունների ֆերմաներում տեղադրված մեքենասարքավորումների լրիվ սպասարկումն ապահովելու համար շրջանի երկու տնտեսություններում կիրառվում են սպասարկման աշխատանքների կատարման արտադրական-տնտեսական փոխհարաբերության նոր ձևեր, Մինսկի անասնաբուծության մեքենայացման համամիութենական գիտահետազոտական ինստիտուտը մշակում է Նախագիծ Էջմիածնի տեխնիկական սպասարկման կայանում հանգույցների և մեխանիզմների նորոգման ագրեգատային մեթոդի ներդրման համար:

Մոնտաժային կազմակերպությունների նյութատեխնիկական բազան ամրապնդելու նպատակով 1978 թվականի վերջին շահագործման է հանձնվել Մասիսի ոչ ստանդարտ սարքավորումների գործարանը՝ 1,4 մլն ռուբլու արտադրական հզորությամբ, որտեղ պատրաստվում են ՕՍԿ մակնիշի մուրքային

ղափոխվում առանձին մեքենայացված ջոկատներ և մեքենամելիորատիվ կայանների տրակտորային բրիգադներ:

Կապիտալ ներդրումների ծավալը մեր սիստեմում կկազմի 25 մլն ռուբլի, միայն մեր կազմակերպությունները ձեռք կբերեն 5,6 մլն ռուբլու նոր տեխնիկա և սարքավորումներ: Ընթացիկ տարում հանրապետության կոլտնտեսությունների, սովխոզների և գյուղատնտեսական այլ ձեռնարկությունների ու կազմակերպությունների մեքենատրակտորային համակազմը կհամալրվի տարբեր մակնիշի 1520 տրակտորներով, 2129 ավտոմեքենաներով, 170 հացահատիկային կոմբայններով, 442 շարքացաններով, 786 գութաններով և այլ գյուղատնտեսական մեքենաներով, գործիքներով ու սարքավորումներով:

1980 թ. պլանով նախատեսվում է արտադրությունում ներդնել նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիաների այնպիսի միջոցառումներ, ինչպիսիք են քարքարոտ հողերի իրացման նոր տեխնոլոգիան, կոլտնտեսությունների և սովխոզների անասնապահական ֆերմաների մեքենաների ու սարքավորումների մասնագիտացված տեխնիկական սպասարկումը, ԿՈՒՄ—1,2 մակնիշի քարհավաք մեքենան և այլն:

Ընթացիկ տարվա պլանը, իհարկե, լարված է, բայց ռեալ է ու իրագործելի: Աշխատանքային կոլեկտիվներում լայնորեն ծավալվել է սոցիալիստական մրցությունը և ամենուրեք մեծ ուշադրություն է հատկացվում արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման հարցերին:

Հնգամյակի եզրափակիչ տարվա պլանների ու սոցիալիստական պարտավորությունների հաջող կատարումն ապահովելու համար պահանջվում է վերացնել կոմիտեի ձեռնարկությունների ու կազմակերպությունների առանձին ճյուղերում, արտադրության որոշ օղակներում դեռևս նկատվող էական թերությունները ու բացթողումները: Առանձնապես պետք է նշել նորոգման տեխնոլոգիական խախտումները Արագածի, Ամասիայի, Գորիսի, Սպիտակի շրջանային միավորումներում, կերախոհանոցների և կթի ագրեգատների ոչ արդյունավետ օգտագործումը Ախուրյանի, Ապարանի, Ազիզբեկովի շրջաններում: Նոր հողերի իրացման և բարելավման, ինչպես նաև հիմնական հարթագծման 1979 թվականի պլանային առաջադրանքները խիստ թերակատարել են Աշտարակի և Թալինի մեքենամելիորատիվ կայանները: Նույն աշխատանքների կատարումը անբավարար է նաև Արագածի, Ղուկասյանի մեքենայացված ջոկատներում և Հրազդանի մեքենամելիորատիվ կայանում: Լուրջ թերություններ կան «Գյուղտնտշինմոնտաժ» տրեստի գործունեությունում: Տրեստը 1979 թ. շինմոնտաժային աշխատանքների պլանը սեփական ուժերով կատարել է հազիվ 85,2, իսկ արտադրական կարողությունների շահագործման պլանը՝ 95 տոկոսով:

Նշված թերությունները հիմնականում բացատրվում են ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարների անհետևողական աշխատանքով, հանձնարարված գործի նկատմամբ և պետական կոմիտեի համապատասխան վարչությունների թույլ հսկողությամբ: Հարկ է նշել նաև, որ կերախոհանոցների և կթի ագրեգատների օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու գործում քիչ անելիքներ չունեն նաև համապատասխան տնտեսությունների ղեկավարները:

Թերությունների վերացման հիմնական միջոցներից են կատարվող աշխատանքների նկատմամբ ամենօրյա հսկողության սահմանումը, աշխատանքների փոխհամաձայնեցված կազմակերպումը ինչպես տարբեր գերատեսչությունների, այնպես էլ մեր առանձին կազմակերպությունների միջև:

Անշուշտ, առաջադրված խնդիրների ժամանակին և ճիշտ լուծումը էապես կբարելավի հանրապետության գյուղատնտեսության արտադրատեխնիկական ապահովման վիճակը և կնպաստի ինչպես դաշտավարության, այնպես էլ անասնապահության մթերքների արտադրությունն ավելացնելու նպատակով ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների պատվին ստանձնած պարտավորությունների կատարմանը:

---

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ՀՈՒՆՈՎ

**Ա. Գ. ԱՂԱԲԱԲՈՎ**
ՀՍՍՀ պետպլանի գիտության ու
տեխնիկայի բաժնի վարիչ

ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ արագացումը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գլխավոր լծակներից մեկն է, հասարակական արտադրության ու արտադրանքի որակի բարելավման, արդյունավետության բարձրացման կարևոր պայմանը: Հասարակական արտադրության արդյունավետությունը պլանավորվում է ոչ թե ըստ մեկ ցուցանիշի, այլ ցուցանիշների համակարգի, քանի որ այն պայմանավորված է շատ գործոններով, և միայն ցուցանիշների ամբողջությունն է հնարավորություն ընձեռում ճիշտ բնութագրելու դրա մակարդակը:

Հասարակական արտադրության արդյունավետության աճն արտացոլվում է աշխատանքային, նյութական ու ֆինանսական ռեսուրսների առավել նպատակային օգտագործումը բնութագրող յուրաքանչյուր ցուցանիշի բարելավման մեջ: Այսպիսի ցուցանիշ է ամենից առաջ կենդանի աշխատանքի արտադրողականությունը, ինչպես և նյութատարությունը, ֆոնդահատույցը, եկամտաբերությունը և այլն: Արտադրության արդյունավետությունը բնութագրվում է նաև այնպիսի ցուցանիշներով, ինչպես հումքի, նյութերի, վառելիքի, էներգիայի տեսակարար ծախսումն է, աշխատանքի հերթափոխայնության գործակիցը և այլն:

Հանրապետությունում որոշակի հաջողություններ են ձեռք բերվել հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման մարզում և ամենից առաջ՝ ի հաշիվ աշխատանքի արտադրողականության աճի: Ժողովրդական տնտեսության զարգացման տասներորդ հնգամյա պլանով նախատեսված է աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 29,2 տոկոսով. դրա հաշվին ձեռք կբերվեն արդյունաբերական արտադրանքի աճի մոտ 67 տոկոսը, գյուղատնտեսական մթերքների աճի 97 տոկոսը, շինմոնտաժային աշխատանքների ողջ աճը: Աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին կստացվի ազգային եկամտի աճի $^3/_4$ մասը:

Տասներորդ հնգամյակի անցած տարիներին նոր տեխնիկայի արմատավորման ասպարեզում հանրապետությունում ներդրվել է ժողովրդատնտեսական պլանով հաստատված ավելի քան 2000 կարևորագույն միջոցառում: Արդյունաբերական ձեռնարկությունները յուրացրել և սկսել են ժամանակակից պահանջներին համապատասխանող մի շարք նոր մեքենաների, սարքավորումների և այլ արտադրատեսակների թողարկումը: Աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոցով հասարակական արտադրության արդյունավետության բարելավման խնդիրը պետք է լուծվի առաջին հերթին տեխնոլոգիական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման հիման վրա, քանի որ հանրապետությունում արդյունաբերության մեջ աշխատողների և մեքենայացված հոսքային գծերն սպասարկողների մոտ 40 տոկոսը, այդ թվում՝ մեքենաշինական ձեռնարկություններում ավելի քան 55 տոկոսը աշխատանքը կատարում է ձեռքով:

Ընթացիկ հնգամյակում հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում ավարտվելու են 640 հոսքային-մեքենայացված, կոմպլեքսա-

պխսի ձևի օգտագործմամբ, ինչպիսին է արտադրամիավորումների կազմում
գիտական ստորաբաժանումների ընդգրկումը։ Այսպես, «Հայէլեկտրամեքենա»
միավորման կազմում ընդգրկված է կոմպլեքսային էլեկտրասարքավորումների
համամիութենական գիտահետազոտական ինստիտուտը։ Արտադրամիավո-
րումների կազմում գիտական կազմակերպության ընդգրկման նպատակահար-
մարությունն ամենից առաջ պայմանավորված է ինտեգրացվող գիտական հաս-
տատության հետ տվյալ միավորման մասնագիտացման ու կապի աստիճանով։
Թվարկված գիտատեխնիկական պրոբլեմները բավականաչափ բարդ են
ու կարող են լուծվել Հայաստանում և նրանից դուրս գտնվող նախագծային ու
գիտական կազմակերպությունների համագործակցությամբ։ Հանրապետու-
թյունում որոշ փորձ է կուտակվել գիտատեխնիկական կոմպլեքսային պրոբլեմ-
ների լուծման առումով. այսպես, ՍՍՀՄ գիտության և տեխնիկայի պետական
կոմիտեի որոշմամբ 1979 թվականից կոմպլեքսային հետազոտություններ են
սկսվել՝ կապված Սևանա լճի առավելագույն մակարդակի որոշման, ջրի որակի
պահպանման, ավազանի բնական հարստությունների ռացիոնալ օգտագործ-
ման ու վերարտադրման հետ։ Նշված ծրագրի կատարման պատասխանատուն
ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան է, իսկ գլխամասային կազմակերպությունը՝
լճաբանության ինստիտուտը, որը պետք է կենտրոնացնի մոտ 40 գիտական
կազմակերպությունների աշխատանքը. կատարվող հետազոտություններին,
որոնք կավարտվեն 1985 թվականին, հատկացված է 2,5 միլիոն ռուբլի։
Գիտատեխնիկական առաջընթացի արագացման հետ կապված մի շարք
կազմակերպական հարցեր պայմանավորված են գիտատեխնիկական կազմա-
կերպությունների կառավարման կառուցվածքով, որն այժմ բավարար չափով
ճկուն չէ։
Միութենական տարբեր հանրապետություններում գիտատեխնիկական
առաջընթացի կառավարման պրոբլեմն ունի իր յուրահատկությունները։
ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ պլանավորումը բարե-
լավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի վրա
տնտեսական մեխանիզմի ներգործության ուժեղացման մասին որոշմամբ
ՍՍՀՄ պետպլանին հանձնարարված է, մեր երկրի շահագրգռված մինիստրու-
թյունների, գերատեսչությունների և միութենական հանրապետությունների
մինիստրների խորհուրդների հետ համատեղ, մինչև հերթական հնգամյակի
սկիզբը, հաստատել գիտատեխնիկական, տնտեսական ու սոցիալական նպա-
տակային կոմպլեքսային ծրագրեր, ինչպես նաև առանձին ռեգիոնների և տե-
րիտորիալ-արտադրական կոմպլեքսների ծրագրերի ցանկը, մշակման կարգն
ու ժամկետները։ Մեր կարծիքով, ինչպես այդ ցանկը, այնպես էլ կոմպլեքսային
գիտատեխնիկական ծրագրերը պետք է քննարկվեն ու հաստատվեն միութե-
նական հանրապետությունների մինիստրների խորհուրդների կողմից, որոնք
այդ գործում սերտորեն համագործակցում են ՍՍՀՄ պետպլանի, ՍՍՀՄ ԳՏՊԿ-ի
հետ, և որոնք էլ պետք է որոշեն մշակվող ու ներդրվող ծրագրերի արդյունա-
վետությունը, ֆինանսական, նյութական և աշխատանքային ռեսուրսների
ապահովումը, կատարողները, ինչպես և կատարման ժամկետները։
Ամեն մի առանձին դեպքում անհրաժեշտ է որոշել այն կոնկրետ կազմա-
կերպությունները, որոնք պատասխանատու են կոմպլեքսային ծրագրերի իրա-
կանացման համար։ Անշուշտ, եթե ծրագիրն ունի ճյուղային բնույթ, կատար-
ման պատասխանատուն կլինի համապատասխան մինիստրությունը կամ գե-
րատեսչությունը, իսկ եթե ունի միջճյուղային բնույթ, ինչպես շրջակա միջա-
վայրի պահպանման կոմպլեքսային ծրագիրը, դրա մշակման ու իրացման
պատասխանատուն պետք է լինեն միութենական հանրապետությունների պետ-
պլանները կամ հանրապետության Մինիստրների խորհրդին կից պետք է կազ-
մակերպվի գիտատեխնիկական կոմպլեքսային պրոբլեմները լուծող հանրա-
պետական խորհուրդ։
Տասնմեկերորդ հնգամյակի պլանը կազմելիս ըստ ամենայնի կարևորվում
է գիտատեխնիկական առաջընթացի կառավարման կատարելագործման պրոբ-
լեմը, քանի որ դրա լուծումը կբարձրացնի մշակվող պլանների որակը, ամուր
երաշխիքներ կստեղծվի պլանների հաջող իրագործման համար։

---

# ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ ՀՐԱՏԱՊ ԽՆԴԻՐ Է

**Թ. Դ. ՉԱԼՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԱՍՇՏԱԲՆԵՐԻ մեծացմանը, տնտեսական կապերի բարդացմանն ու գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը զուգընթաց բարձրանում են աշխատաժամանակի միավորի, աշխատանքային կարգապահության դերն ու նշանակությունը։ Այժմ, երբ իրականացվում է ամբողջ էկոնոմիկայի շրջադարձը դեպի նրա ինտենսիվ զարգացումը, երբ արդյունավետության և որակի բարձրացումը դառնում է մեր ողջ կենսագործունեության առանցքը, աշխատանքային կարգապահության ամրապնդումը պետական վիթխարի կարևորություն է ձեռք բերում։ Կուսակցության տնտեսական քաղաքականության կենսագործման կարևորագույն պայմանը, ինչպես նշում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, բոլոր օղակներում կառավարման մակարդակի բարձրացումն է, տնտեսական մեխանիզմի բարելավումը, բոլոր տեղամասերում պատասխանատվության բարձրացումը, կարգապահության ամրապնդումը։

Կարգապահությունը հասարակական աշխատանքի կազմակերպման, կոլեկտիվ աշխատանքի անհրաժեշտ պայմանն է։ Անհնար է պատկերացնել հասարակական արտադրություն՝ առանց մարդկանց տնտեսական գործունեության որոշակի կանոնների ու նորմերի պահպանման։ Աշխատանքային կարգապահությունն արտահայտվում է բազմապիսի ձևերով և պայմանավորված է արտադրության եղանակով, մարդկանց սոցիալ-տնտեսական վիճակով, աշխատանքի, շրջապատի, հասարակական համակեցության կանոնների նկատմամբ ունեցած վերաբերմունքով։

Սոցիալիստական արտադրաեղանակի հաստատմամբ ծանր, հարկադրական աշխատանքը փոխարինվեց մարդու համար, հասարակության համար ազատ ու ստեղծագործական աշխատանքով։ Մարդկային հասարակության զարգացման պատմության մեջ առաջին անգամ աշխատանքը դարձավ պատվի ու փառքի գործ, աշխատունակ ամեն մի մարդու գիտակցված պարտականություն, հասարակական կյանքում նրա դիրքը, տեղը բնորոշող միակ չափանիշ։ Աշխատանքը սոսկ մարդկանց գոյության պայմանից դարձավ նրանց ստեղծագործության աղբյուր և ունակությունների դրսևորման միջոց։ Նյութական բարիքների ըստ աշխատանքի բաշխման՝ ով չի աշխատում, նա չի ուտում սոցիալիստական սկզբունքի կիրառումը արմատապես փոխեց աշխատանքի բնույթը, պայմանները, նրա նկատմամբ եղած վերաբերմունքը։

Սոցիալիստական կարգապահության հաստատման, աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքի արդյունքը եղավ այն, որ պատմական կարճ ժամանակամիջոցում սովետական ժողովրդի սխրագործ աշխատանքով իրականացվեց զարգացած սոցիալիզմի կառուցումը մեր երկրում։ Աշխատանքային կարգապահության ամրապնդման գործում ձեռք բերված հաջողություններն արտահայտվում են պլանային առաջադրանքների կատարման ու գերակատարման, արդյունավետության ու որակի բարձրացման, սոցիալիստական մրցու-

պես, որ աշխատունակ մարդկանց որոշ մասը դուրս է մնում հանրօգուտ աշխատանքից, հետևաբար և՝ հսկողությունից: Այն դեպքում, երբ Միության մասշտաբով ամբողջ բնակչության 47,1 տոկոսն է ընդգրկված ժողովրդական տնտեսության մեջ, մեր հանրապետությունում այդ ցուցանիշը կազմում է 42 տոկոս: Մեզ մոտ հանրային աշխատանքով չզբաղված աշխատունակ բնակչության ճնշող մեծամասնությունը երիտասարդներ են: Այս լուրջ սոցիալական խնդրին պետք է պատշաճ լուծում տան համապատասխան կազմակերպությունները:

Կարգապահության և սոցիալիստական օրինականության խախտումները շատ դեպքերում բացատրվում են նրանով, որ բացակայում է ամենօրյա վերահսկողությունը առաջադրանքների, պարտավորությունների, այն ամենի կատարման նկատմամբ, ինչ նախատեսված է: Ընդ որում, վերահսկողությունը և ստուգումը պետք է իրականացվեն այնպես, որ ամեն օր սպառիչ ինֆորմացիա տրվի, թե որտեղ են կատարվել առաջադրանքները, որտեղ չեն կատարվել և ինչու, ինչ պետք է անել թերությունները վերացնելու համար: Խախտումները բացատրվում են նաև նրանով, որ պատշաճ ձևով չեն կիրառվում տույժի և պատժի նախատեսված միջոցները: Ավելին, առանձին ձեռնարկությունների ղեկավարներ երբեմն նույնիսկ հովանավորում են գործալիքներին՝ «օրինական» փաստարկներ գտնելով նրանց պատասխանատվությունից զերծ պահելու նպատակով: Հաճախ էլ արտադրությունը կազմալուծողները, կարգապահության կանոնները կոպիտ խախտողները աշխատանքից ազատվում են «իրենց դիմումի համաձայն»: Այդպես էլ ձևակերպվում է աշխատանքային գրքույկում: Մինչդեռ այդ գրքույկը կարևոր փաստաթուղթ է, այն արտացոլում է աշխատողի անձնավորությունը, գործնական կերպարը, հնարավորություն ընձեռում տարբերելու բարեխիղճ և անբարեխիղճ աշխատողներին:

Ժողովրդական տնտեսության մեջ, նրա սկզբնական օղակներում՝ ձեռնարկություններում , առողջ ու գործարար մթնոլորտի ստեղծումը մեծապես նպաստում է կարգապահության ամրապնդմանը: Անհրաժեշտ է կտրուկ միջոցների դիմել անկարգապահության և անպատասխանատվության բոլոր դրսևորումների նկատմամբ: Ընդ որում, ձեռնարկված միջոցները առաջին հերթին պետք է ուղղված լինեն կարգապահական խախտումների պատճառները բացահայտելուն և վերացնելուն: Ամեն մի աշխատող, ամեն մի կոլեկտիվ պետք է արդյունավետ օգտագործի աշխատաժամանակի յուրաքանչյուր րոպեն՝ դրա մեջ տեսնելով աշխատանքի արտադրողականության, արտադրության զարգացման, կենսամակարդակի բարձրացման հիրավի վիթխարի ռեզերվ: Աշխատաժամանակը անգնահատելի հարստություն է, և հետզհետե մեծանում են դրա միավորի օգտագործման նշանակությունն ու բովանդակությունը:

ՍՄԿԿ ծրագիրը պահանջում է. «յուրաքանչյուր աշխատունակ մարդ պետք է մասնակցի այն միջոցների ստեղծմանը, որոնք անհրաժեշտ են նրա կյանքի ու գործունեության համար, հասարակության բարօրության համար: Այն մարդը, որը հասարակությունից որևէ բարիք ստանալով, չի մասնակցում աշխատանքի, ձրիակեր է և ուրիշի հաշվին ապրող»:

Անհատի աշխատանքը սոցիալիստական հասարակարգում անձնական գործից վերածվել է անմիջական հասարակականի, դարձել երկրի մասշտաբով կատարվող ամբողջ աշխատանքի մասնիկը: Ժողովրդական տնտեսությունը մի ամբողջություն է, որտեղ արտադրության մասշտաբներն անընդհատ մեծանում են, տնտեսական կապերը՝ բարդանում: Այս պայմաններում կարգապահությունն ու կազմակերպվածությունը առանձնահատուկ նշանակություն են ստանում:

---

# ՈՐԱԿԻ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԳՈՒՄԱՐԵԼԻՆԵՐԸ

**Ս. Ա. ՍԱՐՈՒԽԱՆՅԱՆ**
ՀԿԿ Կիրովականի քաղկոմի արդյունաբերության
և տրանսպորտի բաժնի վարիչ

ԿԻՐՈՎԱԿԱՆԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ չորս տարի և չորս ամսում կատարեց հնգամյա պլանը: Այդ ուրախալի իրադարձության առթիվ քաղաքի աշխատավորությանը ողջունեց Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն: Լավ են աշխատում կիրովականցիները: Համամիութենական սոցիալիստական մրցության արդյունքներով մեր քաղաքն արդեն երեք անգամ՝ 1976, 1977 և 1979 թթ. արժանացել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշի: 1978 թ. Կիրովականը առաջնություն է նվաճել հանրապետական սոցիալիստական մրցությունում: Ընթացիկ հնգամյակի չորս տարում քաղաքի արդյունաբերությունը 500 միլիոն ռուբլով ավելի արտադրանք է թողարկել, քան նախորդ հնգամյակի նույն ժամանակամիջոցում: Արդյունաբերական ձեռնարկություններում հնգամյակի տարիներին աշխատանքի արտադրողականությունն աճել է 24,5 տոկոսով:

Զգալի աշխատանք է կատարվում մեզ մոտ հատկապես արտադրանքի որակի բարելավման բնագավառում: Բավական է ասել, որ ներկայումս քաղաքի արդյունաբերական արտադրանքի 35,2 տոկոսը թողարկվում է պետական որականիշով: Դա 25,4 տոկոսով գերազանցում է նախորդ հնգամյակի ցուցանիշը:

Մենք մշտապես գիտակցում ենք, որ մեր տնտեսական զարգացման գլխավոր և որոշիչ ուղղությունը որակի բարձրացումն է:

Աշխատանքի որակը, նշել է Լ. Ի. Բրեժնևը, շատ ծավալուն հասկացություն է: Այն կազմավորվում է արտադրատնտեսական մի շարք գործոններից և դրա հետ միասին ընդգրկում է բարոյական պրոբլեմների լայն շրջան: Դա և՛ արտադրության կազմակերպումն է, և՛ աշխատանքային պրոցեսի խստագույն ռիթմը, և՛ տեխնոլոգիական պրոցեսների անշեղ կատարումը: Դա, միաժամանակ, էներգիայի, նյութերի խնայողաբար օգտագործումն է, տեխնիկայի նկատմամբ հոգատար, դեռ ավելին՝ սիրալիր վերաբերմունքն է: Եվ, իհարկե, այս բոլորի հետ միասին՝ գիտակցական ամուր կարգապահությունը, աշխատանքում փոխօգնության և փոխադարձ պահանջկոտության մթնոլորտը: Որակի համար պայքարում անհանդուրժելի են անփութությունը, անտարբերությունը և գործի նկատմամբ անհոգի վերաբերմունքը:

Որակի պրոբլեմն ընդգրկում է տնտեսական գործունեության բոլոր բնագավառները: Բարձր որակ հնարավոր չէ ապահովել տարանջատ, թեկուզև խոշոր միջոցառումներով: Հարցի համակողմանի լուծման միակ ուղին կոմպլեքսային մոտեցումն է:

Որակի բարձրացման միջոցառումների համակարգի ստեղծման ուղենիշ է ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշումը որակի կառավարման լվովյան համակարգի ներդրման վերաբերյալ: ՀԿԿ Կենտկոմը և ՀՍՍՀ Մինիստրների խորհուրդը 1978 թ. մարտի 15-ին ընդունեցին հատուկ որոշում, որի հիման վրա ստեղծվում է արտադրանքի և աշխատանքի որակի կառավարման հանրապետական

սիստեմ։ Այն խարսխվում է քաղաքային և շրջանային օղակների վրա, որոնց համար հիմք են ծառայում տվյալ տարածքում տեղաբաշխված ձեռնարկությունների ու կազմակերպությունների համանման համակարգերը։

Քաղաքային համակարգը ներառնում է մեծ ու փոքր բազմաթիվ և բազմատեսակ ձեռնարկություններ։ Հետևաբար, տերիտորիալ սիստեմի մշակումը պայմանավորվում է կոնկրետ գործոնների հաշվառմամբ։ Այստեղ անհնար է նույնությամբ ընդօրինակել այլ տերիտորիալ պայմաններում ներդրված սիստեմները։ Մենք, ինչ խոսք, հաշվի ենք առել Լվովում, Սարատովում, Լիպեցկում և այլուր ներդրված համակարգերը և, ելնելով մեր կոնկրետ պայմաններից ու առանձնահատկություններից, մշակել ենք մեր քաղաքային համակարգը՝ ձեռնարկությունների ստանդարտների հիման վրա։ Որակի կառավարման տերիտորիալ սիստեմի հիմնական իմաստը մենք տեսնում ենք տվյալ ռեգիոնի գիտատեխնիկական և սոցիալ-տնտեսական հնարավորությունների առավել լրիվ, պլանաչափ օգտագործման մեջ՝ արտադրության արդյունավետության, արտադրանքի և ծառայությունների որակի բարձրացման տեմպերի արագացման նպատակով։

Որակի տերիտորիալ կառավարումը օրգանապես կապված է ժողովրդական տնտեսության կառավարման հետ և միավորում է արտադրության արդյունավետության ու որակի բարձրացման համար իրականացվող ամբողջ գործունեությունը։ Կուսակցության Կիրովականի քաղկոմը մշակել և իրականացնում է արտադրանքի որակի կառավարման համակարգի ստեղծման ծավալուն միջոցառումների պլան։ Այդ աշխատանքները ղեկավարելու նպատակով արդեն երրորդ տարին է գործում է կոորդինացիոն խորհուրդ, որն ունի իր աշխատանքի կանոնադրությունը։

Խորհուրդը քաղաքային համապատասխան կազմակերպությունների օգնությամբ կոորդինացնում է «Ավտոմատիկա» գիտահետազոտական ինստիտուտի, հանրապետական գիտատեխնիկական ինֆորմացիայի ինստիտուտի, ստանդարտների վարչության Կիրովականի բաժանմունքների, ինչպես նաև Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի Կիրովականի մասնաճյուղի կոլեկտիվների աշխատանքները որակի կառավարման կոմպլեքսային համակարգի ստեղծման գործում։

Այդ համակարգի արդյունավետությունն ապահովելու նպատակով մշակվել է կոմպլեքսային միջոցառումների պլան, որի կատարման ընթացքը պարբերաբար քննարկվում է կոորդինացիոն խորհրդի նիստում։ Մշակված 37 միջոցառումների մեծ մասը ժամանակին կատարվել է։ Խորհրդի շրջանակներում գործում է 13 սեկցիա, որոնք կոորդինացնում և ամփոփում են որակի կառավարման ամբողջ աշխատանքը և միջոցներ նշում դրա հետագա կատարելագործման համար։ Սեկցիաների որոշումները պարտադիր են քաղաքի ձեռնարկությունների համար։

Կոորդինացնող խորհուրդը յուրաքանչյուր եռամսյակ, իսկ արտադրական ձեռնարկությունների որակի հանձնաժողովները՝ ամեն ամիս, անց են կացնում «որակի օր» անունը կրող խորհրդակցություններ, որտեղ քննարկվում են որակի կառավարման համակարգի ներդրման ընթացքը և հետագա անելիքները։

Որակի կառավարման համակարգով կենտրոնացվում և ուղղություն է տրվում քաղաքի տարածքում գտնվող բոլոր ձեռնարկությունների գործունեությանը՝ աշխատանքի և արտադրանքի որակի բարձրացման բնագավառում, ապահովվում է ճյուղային և տերիտորիալ կառավարման համաձայնեցված աշխատանքը։

Ներկայումս քաղաքի գրեթե բոլոր ձեռնարկություններում իրականացվում են ստանդարտների հիման վրա արտադրանքի որակի կառավարման համակարգի ներդրման աշխատանքներ։ Այն արագացնելու նպատակով ներդրվել են ավելի քան 500 տեխնիկական և արտադրական ստանդարտներ, արտադրությունից ամբողջովին հանվել են երկրորդ կարգի արտադրատեսակները, մեքենայացվել և ավտոմատացվել են աշխատատար շատ պրոցեսներ։

Ներկայումս «Ավտոմատիկա», «Ավտոնգենմաշ», ճշգրիտ հաստոցների, բարձր ջերմաստիճանային տաքացուցիչների գործարանները, կարի,



տրիկոտաժի արտադրամիավորումները, կահույքի և մանվածքային ֆաբրիկաները, «Ավտոմատիկա» ինքնուրույն կոնստրուկտորական բյուրոն (ԻԿԲ) և գեղարվեստական կոմբինատն աշխատում են արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային համակարգով։ Նրանց թողարկած արտադրանքի ընդհանուր ծավալը քաղաքի համախառն արտադրանքի մեջ հասնում է 75 տոկոսի։ Պետական որականիշով արտադրանմուշների թիվն այժմ հասնում է 217-ի։ Քաղաքի ձեռնարկությունների 72 տոկոսը թողարկում է հնգանիստ նշանով արտադրատեսակ։ Այդ արտադրանքի պլանային առաջադրանքները գերակատարվել են 13,5 տոկոսով։

Բարձր ջերմաստիճանային տաքացուցիչների և «Ավտոգենմաշ» գործարաններում որականիշով արտադրանքը հասնում է 72—84,3, լուսատեխնիկական գործարանում, «Ավտոմատիկա» ԻԿԲ փորձնական գործարանում, կոշիկի ֆաբրիկայում, կարի արտադրամիավորումում՝ 55—65 տոկոսի։

Բարձրորակ արտադրանք թողարկելու համար «Ավտոգենմաշ» գործարանը երկու անգամ պարգևատրվել է ՍՍՀՄ ստանդարտների պետական կոմիտեի դիպլոմով։ Որակի կառավարման համակարգով գործող վերոհիշյալ ձեռնարկությունները դարձել են բազային կազմակերպություններ և մեծապես օգնում են մնացած ձեռնարկություններում այդ համակարգի ներդրմանը։

Թողարկվող արտադրանքի որակի բարձրացմանը մեծապես խթանում է «Արտադրանքի որակի գերազանցիկ ձեռնարկության» կոչմանն արժանանալու նշանաբանով անցկացվող սոցիալիստական մրցությունը։ Սահմանված կարգին համապատասխան, հաշվարկվում է քաղաքի ձեռնարկությունների կոլեկտիվների աշխատանքի որակի գործակիցը, իսկ արդյունքները քննարկվում են կուսբաղկոմի բյուրոյում։ Ամենաբարձր գործակից ձեռք բերող կազմակերպությունները համարվում են մրցության հաղթողներ և արժանանում գերազանց որակի համար սահմանված փոխանցիկ կարմիր դրոշին։

Որակի կառավարման կոմպլեքսային համակարգի մշակման և ներդրման մարզում ուսանելի փորձ է կուտակել «Ավտոմատիկա» գործարանի կոլեկտիվը։ Ահա արդեն մեկ տասնամյակ է, ինչ ձեռնարկությունն աշխատում է արտադրանքի անթերի պատրաստման մեթոդով, որը, կատարելագործվելով և անցնելով մի շարք փուլեր, այժմ վերածվել է որակի կառավարման կոմպլեքսային համակարգի։ Եռանդուն ջանքերը տվեցին իրենց ցանկալի արդյունքը. մշակվեցին ու ներդրվեցին շուրջ վեց տասնյակ ստանդարտներ։ Եվ ահա ՍՍՀՄ սարքաշինության, ավտոմատացման միջոցների և կառավարման սիստեմների մինիստրության հատուկ հանձնաժողովը բարձր գնահատականով ընդունեց գործարանի արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային համակարգը։

Իհարկե, արտադրանքի տեխնիկական մակարդակի, նյութատեխնիկական բազայի կատարելագործման, առաջավոր տեխնոլոգիայի ստեղծման հարցերը մեծ չափով պայմանավորված են անհատների կատարած աշխատանքի որակով։ Վերջին հաշվով, բանվորների և ինժեներատեխնիկական անձնակազմի ջանքերն են բարձրորակ արտադրանքի երաշխիքը։

Այս ամենը լավ գիտակցելով, քաղաքի արդյունաբերության աշխատողները ձեռնամուխ եղան արտադրանքի անթերի պատրաստման սարատովյան սիստեմի արմատավորմանը։ Այդ սիստեմը կիրառվեց նախ որպես բանվորների աշխատանքի որակի քանակական գնահատման մեթոդ, որի չափանիշը առաջին ներկայացումից արտադրանքի հանձնման տոկոսն է։ Այդ տոկոսով է պայմանավորված արտադրական բրիգադների, տեղամասերի, արտադրամասերի և ամբողջ կոլեկտիվի աշխատանքի որակը։ Սարատովյան սիստեմի մյուս առանձնահատկությունն այն է, որ արտադրանքի որակի պատասխանատուն անմիջական կատարողն է։ Նման մոտեցումը հանգեցրեց այն բանին, որ խիստ բարձրացավ բանվորների պատասխանատվությունն իրենց աշխատանքի արդյունքի նկատմամբ։ Այդ սիստեմի ներդրման արդյունքների մասին վկայում են հետևյալ ցուցանիշները։ «Ավտոգենմաշ», «Ավտոմատիկա», ճշգրիտ հաստոցների, բարձր ջերմաստիճանային տաքացուցիչների գործարանների՝ արտադրանքի 72 տոկոսը հանձնվում է առաջին ներկայացումով, խոտանից

Յուրաքանչյուր աշխատող, լինի նա արտադրության հրամանատար, թե շարքային, պետք է սովորի աշխատել արդյունավետ և որակով: Բավական չէ նրան ասել՝ «կատարիր լավ, առանց սխալի»: Դա պետք է անել տնտեսագիտորեն, ստանդարտների լեզվով: Հարկ է ամենայն հստակությամբ սահմանել հիմնական խնդիրները, արտադրապրոցեսի ընթացքի մասին ինֆորմացիայի հավաքման և վերլուծության համակարգը, արտադրանքի որակի ձեռք բերված մակարդակի գնահատման մեթոդների ընտրությունը: Հիմնական ուշադրություն պետք է նվիրվի ստանդարտների որակական կողմին, որակի տվյալների վերամշակման և ստացման ավտոմատ մեթոդների ներդրմանը, նյութական և բարոյական խրախուսման մեթոդների և ձևերի կատարելագործմանը:

Մեր հերթական անելիքներն են՝ մշակել կառավարման ֆունկցիաների համար անհրաժեշտ ստանդարտներ և նախապատրաստվել անցնելու որակի կառավարման կոմպլեքսային համակարգի նոր փուլին՝ ավտոմատացված համակարգին, որտեղ կառավարման շատ ֆունկցիաներ կիրականացվեն ինֆորմացիոն հաշվողական կենտրոնում, էլեկտրոնային հաշվիչ մեքենայի օգնությամբ: Այս կապակցությամբ մի քանի գործարաններում նախատեսվում է մշակել, սիստեմավորել և ներդնել տեխնոլոգիական պրոցեսների նախագծման ավտոմատացված համակարգ՝ Յոշկար-Օլայի «Էլեկտրաավտոմատիկա» գործարանի օրինակով: Եթե այժմ տեխնոլոգիական պրոցեսի փաստաթղթերը տեխնոլոգը մշակում և գրում է ձեռքով, որը բավականին աշխատատար պրոցես է, ապա ավտոմատացված ծրագրավորման դեպքում հաշվիչ մեքենան, ստանալով անհրաժեշտ նախնական ինֆորմացիա և կոդավորում, շատ արագ տալիս է մշակված տեխնոլոգիական պրոցեսները՝ տաբուլագրամաների տեսքով: Նախնական հաշվումներով, այս միջոցառումը տեխնոլոգիական փաստաթղթերի նախապատրաստման աշխատանքները կարագացնի 40 անգամ:

Կիրովականի արդյունաբերության աշխատողները հնգամյակի ավարտական տարում համակողմանիորեն վերլուծում են կուսակցության XXV համագումարի որոշումների իրականացման նպատակով կատարված աշխատանքը: ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարները արժանավայել դիմավորելու հայրենասիրական ձգտումը նոր խթան է որակի և արդյունավետության անշեղ բարձրացման, աշխատանքի մեքենայացման ու ավտոմատացման, գիտատեխնիկական առաջընթացի ապահովման առաջադրանքները հաջողությամբ կատարելու գործում:



# ԼԵՆԻՆԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ՄԵՋ

**Ա. Մ. ՆԱԶԻՆՅԱՆ**
Բանասիրական գիտությունների թեկնածու

**ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ** բանահյուսությունը՝ աշխատավոր ժողովրդի բյանավոր գեղարվեստական ստեղծագործությունը, դարավոր վաղեմություն ունի և համապարփակ տարածում: Չկա աշխարհում մի ժողովուրդ, որ չունենա իր երգերը, զրույցներն ու առած-ասացվածքները, որոնք սիրվել, սերնդից-սերունդ փոխանցվելով հասել են մինչև մեր օրերը: Ժողովրդական ստեղծագործությունը կարևոր դեր է խաղացել մարդկային հասարակության հոգևոր կուլտուրայի զարգացման ոլորտում: Իրավացի է Մաքսիմ Գորկին, նշելով, որ «Աշխատավոր ժողովրդի իսկական պատմությունը չի կարելի իմանալ, առանց իմանալու ժողովրդական բանավոր ստեղծագործությունը...»:

Բանահյուսության մեջ արտացոլված է ժողովրդի կյանքը, նրա դարավոր պայքարը: Աշխատավոր ժողովրդի ազատագրության գաղափարն է անցյալի բանավոր ստեղծագործության պաթոսը: Ազատ ու երջանիկ կյանքի մասին ժողովուրդը երազել է հնագույն ժամանակներից սկսած, ստեղծելով մի շարք առասպելներ ու ավանդություններ մարդկանց բարօրության համար աստվածներից կրակ փախցընող հունական Պրոմեթևսի, նրա եղբայրակից վրացական Ամիրանիի, անձրևաբեր ամպերը ճեղքող վիշապաքաղ հայկական Վահագնի և դիցաբանական այլ հերոսների մասին: Այդպիսի հերոսներ են նաև մարդկանց ու բնությունը վերակենդանացնող հազարան հավքն ու անմահական ջուրը ձեռք բերող հեքիաթային դյուցազները, որոնք ոչնչացնում են աղետաբեր դևերին ու ջրարգել վիշապներին: Սոցիալական անհավասարությունն ու դասակարգային ներհակությունը ներկայացված են առավել բացահայտ ու բազմազան գծերով:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը աշխարհում առաջին անգամ հիմնահատակ կործանեց շահագործման շղթաներն ու կապանքները և իրականացրեց աշխատավոր մասսաների դարավոր երազանքն ու իղձերը սոցիալական ու քաղաքական ազատագրության մասին: Հոկտեմբերյան հեղափոխությունը նոր դարագլուխ բացեց մարդկային հասարակության պատմության մեջ, ստեղծելով քաղաքական ու տնտեսական կյանքի նոր պայմաններ ու ձևեր, հասարակական նոր հարաբերություններ, որոնք գեղարվեստական արտացոլում գտան ինչպես արվեստի ու գրականության, նույնպես և ժողովրդական ստեղծագործության մեջ:

Այդպիսով, բազմադարյան բանահյուսության պատմության մեջ սկզբնավորվեց մի նոր շրջան, որն անցյալի գեղարվեստական ավանդույթների հիման վրա ըստ էության ներկայացնում է նոր որակ, որպես սոցիալիստական հասարակարգի արգասիք: Հասարակական-քաղաքական ու տնտեսական հեղաշրջումը արմատական բեկում առաջացրեց նոր, սովետական ժողովրդական ստեղծագործության մեջ՝ իրականության բացասման ու ժխտման միտումները փոխարինելով կյանքի հաստատման ու փառաբանման նոր տրամադրություններով:

Սովետական ժողովրդական ստեղծագործությունը, որի անբաժանելի մասն է սովետահայ բանահյուսությունը, մեր երկրի բազմալեզու ժողովուրդների ու ազգությունների միասնա-

կան, ներդաշնակ ստեղագործությունն է, որի արարողը, կրողն ու տարածողը դարձավ քաղաքականապես ու տնտեսապես ազատագրված աշխատավոր մարդը: Այս առումով էլ սովետական շրջանի ժողովրդական ստեղծագործությունը, իր առանձնահատկություններով հանդերձ, ընդհանրություններ ունի սովետական գեղարվեստական գրականության ու արվեստի հետ:

Պատմական համեմատաբար կարճ ժամանակաշրջանում սովետական բանահյուսությունն ստեղծեց հարուստ ժառանգություն: Ժամանակի ընթացքում գրի են առնվել ու ձայնագրվել մեր ժողովուրդների ու ազգային փոքրամասնությունների բազմաժանր ու բազմատեսակ ստեղծագործություններ: Դրանց մեծ մասը լույս է տեսել ժողովածուներում, թարգմանվել այլ լեզուներով: Սովետական ժողովրդական ստեղծագործության փայլուն ցուցադրումը եղավ Творчество народов СССР հանրածանոթ ժողովածուն, որը լույս տեսավ 1937 թ. և պարունակում է ՍՍՀՄ 35 ազգությունների ու ժողովուրդների ժամանակակից ստեղծագործությունների լավագույն նմուշները: Այդ անթոլոգիայի նախաձեռնման ու իրականացման գործում խոշոր դեր խաղաց ժողովրդական բանահյուսության խոր գիտակ Ա. Մ. Գորկին:

Սովետական բանահյուսության մեջ լայն արձագանք են գտել մեր կյանքի բոլոր կողմերը: Բազում թեմաներով ու մոտիվներով, բազմապիսի գեղարվեստական արտահայտչաձևերով ու եղանակներով պատկերվել են մեր երկրի քաղաքական, տնտեսական, հասարակական, մշակութային, կենցաղային իրադարձություններն ու երևույթները:

Սովետական ժողովրդական ստեղծագործության մեջ առանձնահատուկ տեղ է գրավում հեղափոխության և լենինյան թեման: Հոկտեմբերյան հեղափոխության և աշխատավոր ժողովրդի ազատագրության թեման ամենուրեք անխզելիորեն կապված է Լենինի անվան հետ: Լենինն է բոլոր այդ ստեղծագործությունների առանցքն ու կենտրոնական հերոսը: Կոլեկտիվ հանճարի իմաստնությամբ հաղթանակած հեղափոխության ողջ վեհությունը և դարերով տառապած աշխատավորության ազատագրման վեհ գաղափարը ժողովուրդն ընդհանրացրել, իմաստավորել է Լենինի կերպարում: Ավանդական բանահյուսության մեջ ևս ականատես ենք այն փաստին, որ ճակատագրական, բախտորոշ իրադարձությունների պահին ժողովուրդն իր ուժը խորհրդանշել է հերոսի մի հավաքական կերպարով:

Տարբեր են Լենինին ներկայացնող սովետական ժողովրդական ստեղծագործության արտահայտչամիջոցներն ու եղանակները: Ամեն մի ազգ ու ժողովուրդ գույներ ու երանգներ, բնութագրական գծեր է ընտրել իր ավանդույթների, ազգագրական սովորույթների, տեղագրության, բնակլիմայական պայմանների համեմատ: Արտահայտչական այդ բազմերանգության մեջ կա գաղափարական ու հոգեբանական խոր ներդաշնակություն՝ Լենինի կերպարի ընկալման ու վերակերտման գործում:

Վ. Ի. Լենինը նշանակալից և բացառիկ տեղ է գրավում նաև սովետահայ ժողովրդական ստեղծագործության մեջ: Հոկտեմբերյան հեղափոխության շրջանում և հատկապես 1920 թ. հայ ժողովրդի ազատագրության օրերին, ապա՝ քաղաքացիական կռիվների ու դրան հաջորդած խաղաղ շինարարության տարիներին հայ երգիչներն ու գուսանները, վիպասացներն ու հեքիաթասացները Լենինին, նրա զինակիցներին, կոմունիստական կուսակցությանը, հեղափոխական իրադարձություններին նվիրել են բազմաթիվ ստեղծագործություններ, որոնք տարածվել են գյուղից-գյուղ, ավանից-ավան: Բարեբախտաբար այդ ստեղծագործությունները ժամանակին գրի են առնվել, կորստից փրկվել, մի մասն էլ հրատարակվել առանձին ժողովածուներով:

Սովետահայ բանահյուսության մեջ Լենինն ամենուրեք ներկայացված է որպես հայ ժողովրդի փրկարար: Անշուշտ, դա պայմանավորված է պատմական իրողությամբ: Բազմաթիվ արհավիրքներից, կոտորածներից հետո, Հոկտեմբերյան հեղափոխության շնորհիվ 1920 թ. հայ ժողովուրդն ստեղծեց իր պետականությունը: Ժողովրդական ստեղծագործության մեջ դրսևորվել է այն խոր ճշմարտությունը, որ Լենինը բախտորոշ դեր է խաղացել հայ ժողովրդի ազատագրության գործում:

Լենինին և Հոկտեմբերյան հեղափոխությանը նվիրված ստեղծագործությունները սովետահայ բանահյուսության մեջ աչքի են ընկնում ժանրային բազմազանությամբ: Այդ տեսակետից թերևս ամենից շատ տարածված են ժողովրդական քնարերգության ստեղծագործությունները՝ երգեր, խաղիկներ, քառյակներ, պարերգեր և այլն: Եվ դա հասկանալի է. կյանքի այլևայլ իրադարձություններին անմիջականորեն արձագանքող հանպատրաստից ստեղծվող երգը՝ խոսքով ու մեղեդիով, անմիջապես գրավում է ունկնդիրներին և տարածվում ամենուրեք: Եվ որքան այդ երգերի մեջ խոր են արտացոլված ժողովրդական մասսաների ապրումներն ու հույզերը, դրանք առավել կենսունակ են ու ներգործուն: Ժողովրդական այդ երգերի մի մասը հեղինակ չունի, մասսայականացել և երգվում է զանազան տարբերակներով, իսկ մի մասը ներկայացված է որպես ժո-



ղովրդական ինքնուս երգիչների ու գուսանաշուղների հորինվածք: Ժողովրդական երգերի հորինողներն ու կատարողները տեղացի կամ Արևմտյան Հայաստանից գաղթած վերաբնակիչներ են՝ մեծ մասամբ տարբեր տարիքի բանվորներ ու հողագործներ: Երգերի մեծ մասը գրի է առնված Արթիկի, Նոր-Բայազետի, Կոտայքի շրջանների գյուղերում, 1930-ական թվականներին:

Ժողովրդական քնարերգության մոտիվներն ու թեմաները բազմազան են, երբեմն ոչ այնքան շաղկապված ու ներդաշնակ, հաճախ կառուցված ավանդական բանահյուսության պատկերների ու արտահայտությունների վրա: Բայց ամենախոր պարզությամբ ու անկեղծությամբ այդ երգերը արտացոլում են աշխատավոր մարդկանց նոր աշխարհըմբռնումը, նրանց հոգեբանության մեջ կատարված արմատական այն տեղաշարժը, որը կապված է Հոկտեմբերյան հեղափոխության և Լենինի հետ:

Սովետահայ բանահյուսության լենինյան երգաշարքում ամենատիրապետող մոտիվը քաղաքական ու սոցիալական ազատագրության փառաբանությունն է: Ժողովուրդը քնքուշ ելևէջներով ու նուրբ գույներով, երախտագիտության իր խոր զգացմունքն է հայտնում Լենինին՝ նրա պարգևած ազատության ու երջանկության համար.

*Արև ծաթեց ամպի ծերեն,*
*Լենին մեզի եկավ տերեն.*
*Ամեն պարի մե կը պիրի,*
*Ամա՜ն Լենին, մադա՜թ Լենին:*

Ժողովրդական երգերում փառաբանվում է Լենինի գործը, Լենինը «խարաբա խին աշխարհը» վերաշինեց, դարձրեց դրախտ, նա «սարք ու կարք տրեց մեջ աշխրին», «հաշխար շինեց խավսար»:

Լոռեցի երգասացը ավանդական ժողովրդական պարերգերի հանգով երգում էր «Լենինի ջանիմանը»:

Շատ երգերում Լենինը պատկերվում է որպես հայ ժողովրդի անմիջական ազատարար: Այս երգերում Հոկտեմբերն ու Նոյեմբերը միաձուլված են, դեպքերն ու դեմքերը ներհյուսված:

*Լենին պերավ բալշեվիկը,*
*Մեկ էլ տեսանք տաշնակ չկա,*
*Յարար տաշնակ ու՞ր ես մկա,*
*Ես Լենինու բախտին մեռնիմ:*

Մի շարք երգերում էլ ականատես ենք Հայաստանում Մայիսյան ապստամբության, Նոյեմբերյան հաղթական մարտերի, ինչպես և փետրվարյան ավանտյուրայի ճնշման ու քաղաքացիական կռիվների պատմական իրադարձությունների արտացոլման (Օրդուն եկավ սարի փեշեն, Աղստաֆայից բերեցին լուրը, Չախմախլվից անցավ զորքը, Թոփերը կապեցին Էյլարա դուզը, Ռուբենի երգը և այլն):

Որոշ երգերում ազատագրության բուռն պաթոսին զուգահեռ հիշվում, համեմատվում է ոչ հեռավոր անցյալի մղձավանջային կյանքը.

*Հող ու ջուր, մալ ու մուլք Հարուստը տիրեց,*
*Ոսկին ու արծաթը իր տակը տրեց:*
*Սելի պես կը հոսեր արուն ու թանաք,*
*Աշխարն էր մի դմակ, Հարուստը՝ դանակ.*
*Վա՜յ լըմըն դանակ,..*
*Ա՜խ յաման դանակ:*

Մի ուրիշ երգում («Ենգի զաման») անսքող ցուցադրվում են անցած «զամանի» (ժամանակի)՝ մասնավոր սեփականատիրական աշխարհի դաժան բարքերը:

Աշխատավոր ժողովրդի սոցիալ-քաղաքական ազատագրության բախտորոշ իրողությունը սովետական բանահյուսության քնարական երգերում ուղեկցվում է Լենինի ստեղծած նոր կյանքի, սովետական կարգերի գովերգումով: Այստեղ ցնծությամբ են ներկայացվում կանանց իրավահավասարությունը, ազգերի եղբայրությունն ու բարեկամությունը:

Սովետական իրավակարգը աշխատավոր մարդուն պարգևեց ապահով ու երջանիկ կյանք, վեր բարձրացրեց նրան կյանքի հատակից և դարձրեց երկրի լիիրավ տերն ու տնօրենը: Այս գաղափարները յուրահատուկ գեղարվեստական արտահայտչամիջոցներով վերարտադրված են «Մըր Խաչոյի խաղ» անպաճույճ երգում, որը ժողովրդական երգերին հատուկ զուգերգ է՝ հարց ու պատասխանի ձևով: Նախկին «բատրակ, նոքար, ֆագիր» Խաչոն փոխվել է արտաքնապես: Հին «փոստե փափախի տեղ» նա կրում է նոր «շափախկա» (գլխարկ), «քրքրված աբայի տեղ»՝ «մահուդ փալթո», «փաթավա տրեխներաց» տեղ՝ «վզնով սև սապոքտեր»: Բայց բատրակ Խաչոն փոխվել է նաև ներքուստ՝ հոգեկան աշխարհով ու կարողություններով: Նախկին «լկված լեզվի տեղ» ձեռք է բերել «թրաշ, ճարտար խոսքեր», «անտաշ, զըռ շարժումի տեղ»՝ «օսըմ, կիտնակըլթոն»: Եվ հարցումին, թե՝ որտեղից այդ բարեմասնությունները, Խաչոն պատասխանում է՝ «Լենի՛ն ի տվե, վո՞վ ի տվե»: Ակամա հիշում ես Լենինի նշանավոր խոսքերը. «Սոցիալիզմը... առաջինն է հնարավորություն ստեղծում... աշխատավորների մեծամասնությանը ներգրավելու այնպիսի աշխատանքի ասպարեզը, որտեղ նրանք կարող են... ծավալել իրենց ընդունակությունները, դրսևորել տա-

ղանդներ, որոնք ժողովրդի մեջ անսպառ աղբյուր են և որոնց կապիտալիզմը ճմլել, ճնշել, խեղդել է հազարներով ու միլիոններով» (Երկեր, հ. 26, էջ 493—494):

Սովետահայ բանահյուսության մեջ քնարական չափածոյից բացի հանդիպում են Լենինին նվիրված վիպական, արձակ-պատմողական բնույթի ստեղծագործություններ, որոնք իրենց բնույթով հիշեցնում են հեքիաթի ժանրը— «Լանու խաքաթ», «Լենինի խեքիաթը»: Դրանք նույնպես գրի են առնվել 1930-ական թվականներին: Հեքիաթներից առաջինի պատմողը ծագումով մշեցի է, որի ասելով հեքիաթն ինքն է հորինել, մյուսը՝ Նոր-Բայազետի Նորաշեն գյուղից է և հայտնում է, թե այդ հեքիաթը սովորել է Բաքվում, երբ աշխատում էր այնտեղ որպես ներգործ բանվոր: Այս հեքիաթներում ակնառու են ավանդական հեքիաթներին հատուկ արտահայտչական միջոցներին ու եղանակներին: Մի տեղ Լենինը վրիժառու է եղբոր սպանության համար, պայթեցնում է ռուս թագավորի ապարանքն ու ինքը փախչում Չին-Մաչինի թագավորի երկիրը, որտեղ նրան սիրահարվում է Չին-Մաչինի թագավորի աղջիկը: Չին-Մաչինի թագավորի աղջկան սիրահարվում է նաև ռուսի թագավորի տղան: Լենինը, իր ընկերների գլուխ անցած, հաղթում է ռուսի թագավորին: Երկրորդ հեքիաթի մեջ պատկերված է դարձյալ Լենինի պայքարը Նիկոլ թագավորի դեմ: Այստեղ էլ հրաշապատում հեքիաթներին հատուկ երազով կանխազգալու և կանխատեսելու շնորհիվ Լենինի մայրը փրկում է որդու կյանքը: Այս հեքիաթներում արտաքին հրաշապատում-շղարշի տակ թաքնված է պատմական ճշմարտությունը՝ Լենինի ու լենինյանների հերոսական պայքարը և հաղթանակը ցարական ինքնակալության դեմ: Ժողովրդական երևակայությունը հեքիաթային գույն է տվել իրական-պատմական եղելություններին, որովհետև դրա մեջ տեսել է բոլոր ժամանակների համար ամենամեծ սխրագործությունը:

Հեքիաթային տարրը և ֆանտաստիկ պատկերացումները տարածված են նաև ՍՍՀՄ այլ ժողովուրդների բանահյուսության մեջ: Էվենկական մի հեքիաթում, օրինակ, պատմվում է, թե ինչպես հարուստների դրդմամբ որսորդ Դոլոբենե ցանկանում է սպանել Լենինին՝ երեք ռուբլի նվեր ստանալու համար, բայց անտառի բոլոր կենդանիները խոչընդոտում են նրան և կանխում աղետը: Նույն կերպ ուզբեկական առասպելական մի զրույցում կախարդական հրեշ Քոչակ-Ադամի դեմ կռվելիս Լենինին օգնության են հասնում բնությունն ու կենդանական աշխարհը: Ամենադժվար պահին Լենինի կյանքը փրկում է փոքրիկ, բարի ճընճղուկը:

Բոլոր դեպքերում ժողովուրդը հրաշապատում պատկերներին և արտահայտչամիջոցներին դիմել է Լենինի մեծությունը ցուցադրելու և նրա նկատմամբ ունեցած երախտագիտության և բացառիկ սիրո զգացմունքները արտահայտելու համար: Այդ առթիվ Մ. Գորկին նշել է. «...ֆոլկլորը մեր օրերում Վլադիմիր Լենինին բարձրացրեց հնության առասպելական հերոսին՝ Պրոմեթեոսին հավասար բարձրության»:

Լենինին նվիրված սովետահայ ժողովրդական ստեղծագործությունները իրենց ազդեցությունն են թողել ժամանակի գեղարվեստական գրականության վրա: Ժողովրդական զրույցների ոգով ու շնչով են կերտված Ե. Չարենցի լենինյան նշանավոր բալլադները (Լենինն ու Ալին, Բալլադ Վլադիմիր Իլյիչի, մուժիկի և մի զույգ կոշիկի մասին): Ժողովրդական վերը նշված հեքիաթների սյուժեով է կերտել Ա. Բակունցը Մուրոյի զրույցը հոյակապ պատմվածքը: Բուն սյուժեին զուգահեռ, որտեղ ժողովրդական մտածողությամբ ու անմիջականությամբ ներկայացված են Լենինի գործն ու պայքարը, Բակունցը մեծ վարպետությամբ է կերտել նաև հովիվ Մուրոյի կերպարը, որը մարմնավորում է ժողովրդի սերն ու գորովանքը Լենինի նկատմամբ:

Սովետահայ բանահյուսության մեջ քնարերգական և արձակ-պատմողական ժանրերից բացի Լենինը և Հոկտեմբերյան Հեղափոխությունը արտացոլվել են նաև վիպական մեծ ծավալի ստեղծագործության՝ Լենին փաշա ժողովրդական վիպերգի մեջ: Սովետահայ բանահյուսության գլուխգործոցն է այն: «Լենին փաշան»» գրի է առել հայտնի բանահավաք Գեղամ Թարվերդյանը 1934 թ. Աղբաքայի յայլաներում (Ամասիայի շրջան): Վիպերգն ասել է գզրար Գարո Բարձումյանը, ծագումով Արևմտյան Հայաստանի Խիզանի շրջանի Խակև գյուղից: Գաբոյի պատմելով առաջին անգամ ինքը «Լանու Նաղըլը» լսել և սովորել է 1922—1924 թթ., իր հայրենակից ուստա Սեփոյից, որի հետ այդ ժամանակներում գզրարությամբ է զբաղվել:

Լենին փաշան հայ ժողովրդական էպոսի ավանդույթների շարունակությունն է մեր օրերում: Այն ազատագրված հայ ժողովրդի փառաբանությունն ու գովքն է ճնշված ժողովուրդների մեծ առաջնորդին: Վիպերգը կուռ և ամբողջական կառուցվածք ունի. սկսվում է յուրատեսակ նախաբանով, որը հիշեցնում է Սասունցի Դավթի նախաբան-ողորմիաները:

*էն վո՞վ ի, վուր ժողովուրթին կը պախի.*
*էն վո՞վ ի, վուր ըռըշպարաց քոմաք ի.*
*էն վո՞վ ի, վուր ֆաՙլաքտերաց խամխար ի.—*
*էնիկ մեկ փաշա մ'է, անուն ուր Լանին:*

Ներկայացնելով վիպերգի գլխավոր հերոսին՝ Լենինին, ժողովրդական վիպասացն այնուհետ շատ պատկերավոր ժողովրդական ըմբռնողությամբ բնութագրում է կոմունիստական կուսակցությունը— բոլշևիկներին:

*Մասար ըմ կեր, անուն ուր մալշուրիկ.*
*Լանին անունց դինբաշին ի:*
*Վով անունց խետ ի, զուր մալ կես կ'եյնի*
*խըտ ուրիշաց,*
*Մալշուրիկ, զուվա՝ ըզմալ էնա խըտ ուրիշաց,*
*շիրիգ:*

Այստեղ պատկերավոր ձևով ներկայացված է բոլշևիկների դավանած հավասարության սկզբունքը: Այդ նպատակով էլ բոլշևիկ բառը ժողովրդական ստուգաբանությամբ դարձված է «մալշուրիկ», որ նշանակում է ունեցվածքը (մալ) հավասար կիսող (շուրիկ կամ շիրիգ):

Այնուհետև նույնպիսի պատկերավորությամբ վիպերգում ներկայացվում է աշխարհում տիրող սոցիալական անհավասարությունն ու դասակարգային հակամարտությունը. հարուստները վայելում են բոլոր բարիքները, «Հախկատ չարչրվի, չալշի, չուր տուս կու ուր ջան»: Վիպերգում պատկերվում են նաև ցարական ինքնակալության դաժանություններն ու ոճիրները՝ «քանի՛-քանի՛ արունքտեր էր էրի էնի», օջախներ քանդել, երեխաներ որբացրել, «կոիվ ու շամաթա սարքել»:

Ինչպես պատկերավոր կերպով ասվում է վիպերգում, երբ դանակը ոսկորին հասավ, «հախկտի տղեն»՝ Լենին փաշան, կանգնեց ինքնակալության («Սոլթան ը հուքմաթի») դեմ. «— Ես տը կռվիմ, ասից, ո'ազատիմ զհախկատ...»:

Վիպերգի հետագա գործողությունները ծավալվում են երկու հակամարտ դասակարգերի բախման ֆոնի վրա: Լենինը մարմնավորում է կոմունիստական կուսակցությունը, գլխավորում է աշխատավորների ազատագրական մեծ կռիվը: Անհավասար են հակամարտ դասակարգի ուժերը, տարբեր՝ նրանց նպատակն ու ձգտումները: Շահագործվողների բանակը ազատագրության մեծ գործի՝ արդար նպատակի համար է կռվում, իսկ հարստահարիչների, իմպերիալիստների բանակի նպատակն է ճնշել մասսաների հեղափոխական ըմբոստացումը՝ հանուն շահագործման, հանուն կողոպուտի ու թալանի: Լենինը, արդար վրեժխնդրությամբ լցված դեպի շահագործողները, աշխարհի բոլոր ճնշվողներին ահազանգում ու մարտական կոչ է անում:

*Զարկե՛ք, ծե դուշման փուչ էրեք,*
*Կռվե՛ք, ծե ազատութիյուն ծեռք պերեք...*

Վիպերգում ժողովրդի պատկերացումը հակառակորդ բանակի ներքին աններդաշնակության մասին արդարանում է՝ իմպերիալիստների և միապետության կողմից բռնությամբ հավաքած ու զինվոր դարձած գյուղացիներն ու բանվորները հրաժարվում են իրենց զրկված ու տառապած եղբայրների դեմ կռվելուց և անցնում լենինյանների կողմը: Այստեղ էլ նըկատում ենք պատմական ճշմարտությունը՝ ցարական բանակի շարքերում եղած եղբայրացման դեպքերի մասին, որ ժողովրդական վիպերգում ներհյուսվել է ընդհանուր դեպքերին և յուրատեսակ արտացոլում գտել: Ինքնակալության ու ինտերվենտների ուժերը զինված էին ժամանակի հզոր տեխնիկայով, իսկ հեղափոխական մասսաները զուրկ էին այդ բոլոր միջոցներից: Վիպերգում դասակարգային այդ ահեղ գոտեմարտը պատկերված է գեղարվեստական խտացված գույներով ու մեծ թափով: Դա նմանվում է դյուցազնական այն կռիվներին, որ ավանդական բանահյուսության արտահայտչամիջոցներով նկարագրված է Սասունցի Դավիթ էպոսում:

*Լանին փաշեն կ'էրթեր հառեչ՝ պռնած բայրաղ.*
*— Հա՛յ-հա՛յ տղաք, հառեչ անցեք, օրը*
*մերն ի...*
*Հառեչ անցավ քաղցածնիրաց օրդուն մեկեն.*
*Հուքմաթաց զուրք խառվավ հիրուր, փախավ*
*ցրիվ...*
*Լանին փաշի զուրքը Թափավ քանց զըմուրիխ.*
*Քանց բհարու սել ը սելավ գետ վարարած.*
*Քանց գուլանի վարար կարկուտ զինչ*
*պատուխաս...*

Այդ մարտը ժողովրդական մի սիմվոլիկ պատկերով բնութագրված է այսպես. «Մեկ դիյամաթ փոթավ, զաշխարհ դիպավ իրուր»:

Ժողովրդական մասսաների մեծ կռիվը Լենինի գլխավորությամբ ավարտվում է հաղթանակով. «Հուքմաթաց զուրք վուր մեկն ընգավ, վուր մեկ փախավ. մըջ հաշխրին կորան գացին, թոզեր կտրավ»:

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակով չեն ավարտվում «Լենին փաշա» վիպերգի գործողությունները: Վիպերգում պատկերվում է նաև Լենինի հաստատած սոցիալիստական իրավակարգը՝ «մալշուրիկի զակոնը». Լենինը «էրկրի կարք վերուց էրից կլոխն ի վեր»: Լենին փաշան իշխանության գլուխ է կանգնեցնում «պանվուրքերաց ու ըռըշպարաց»: «Էրկիր հիատկեց Լանին փաշեն,— ասում է վիպասացը,— հաշխատավուր առից ուր թևի տակ...»:

ուշագրավ է նաև վիպերգի վերջաբանը, որն ավանդական բանահյուսության օրհնություն-մաղթանքի յուրատեսակ ամփոփում է.

*Տե՛ր, պարերար օղորմած,*
*Տու քոմագ ըլնես Լանին փաշին*
*Ը ուր զուրք ը զուրապիտաց:*
*Ամե՛ն:*

Լենին փաշա վիպերգն ստեղծող բանասացները օգտվել են հայ բանահյուսության վիպական արվեստի գանձարանից, առանձնապես էպոսի գեղարվեստական արտահայտչամիջոցներից ու հնարներից: Բանահյուսական վիպական արվեստի առանձնահատկություններով է պայմանավորված վիպերգի ժողովրդականությունը: Այն արժանացել է նաև հայ բանասեղծների ուշադրությանը: Ժամանակին Սարմենն ու Շիրազը հրապարակել են Լենին փաշայի իրենց կատարած գրական մշակումները: Ռուսերեն թարգմանությունից բացի Լենին փաշան հրատարակվել է նաև չեխերեն, որ թարգմանել է չեխ հայրենասեր հակաֆաշիստ գրող Յուլիուս Ֆուչիկը:

Սովետական և ընդհանրապես աշխարհի ժողովուրդների գրականության ու արվեստի մեջ ինքնատիպ ու յուրահատուկ գծերով է կերտվել Լենինի կերպարը: Լենինի գործի համամարդկային ճանաչմամբ ու գնահատմամբ է պայմանավորված նրա կերպարի համապարփակ ընկալումը: Ժողովրդական բանահյուսությունն էլ իր օրինաչափությունների ու յուրահատկությունների համեմատ է անդրադարձել մեծ առաջնորդի գեղարվեստական կերպարը:

Սովետահայ բանահյուսության մեջ Լենինը հանդես է բերված դյուցազնական, հերոսական, նույնիսկ առասպելական բնավորությամբ, քանի որ ժողովրդի պատկերացմամբ՝ «աշխարհի փրկիչ» Լենինը չի կարող լինել սովորական մահկանացու: Իր արտաքինով, ֆիզիկական ուժով նա մի հսկա դյուցազն է: Իր խելքով ու կարողությամբ էլ Լենինը պատկերված է որպես լեգենդար դեմք, «իմաստուն մարգարե»:

Սովետահայ բանահյուսության մեջ Լենինի կերպարի մյուս բնորոշ հատկանիշը նրա բնավորության ու հոգեբանության պարզությունն ու շիտակությունն է: Դա հերոսի նոր կերպար է, որն իր մեջ ներդաշնակում է ղեկավարի, առաջնորդի և սովորական շարքային մարդու բնավորության գծերը. «Բարի , մարդասեր, անկեղծ էր, էհթիբարով էր Լենինը»: Ժողովրդական երգերում շեշտվում է Լենինի արտակարգ համեստությունը. «Մեկ խատ պայծառ նրաք ի»: Այդ համեստության առթիվ էր, որ Գորկին իր հիշողություններում Լենինի մասին նշում էր, թե նա այնքան պարզ ու հասարակ էր պահում իրեն, որ տեսնողը չէր զգում, թե նա «առաջնորդ» է:

Լենինի կերպարը սովետահայ բանահյուսության մեջ հատկանշող հանգամանք է նաև այն ջերմությունն ու անմիջականությունը, որով դիմում են նրան ժողովրդական երգիչներն ու ասացողները: Լենինի նկատմամբ ցուցաբերվող համաժողովրդական սերը հասնում է անձնուրացության ու անձնազոհության. «Ըլնեմ Լենինի մատաղը», «Լենինի ջավահիր ջանին ղուրբան», «Անունիդ մեռնեմ Լենին ջան» և այլն: Բնութագրական են և էպիտետ-մակդիրներն ու համեմատությունները. «Լենինի շափաղ քանց արև», «մեր Լենինը մեկ լուս ի», «քանց լուսավոր աստղ»: Նրան տրվող սիրված էպիտետներն են՝ փրկիչ, ազատիչ, կարմիր, անուշ և այլն:

Լենինին նվիրված բանավոր ստեղծագործությունները գաղափարական նպատակալացությամբ ու գեղարվեստական անմիջականությամբ մշտապես սրտամոտ են հայ աշխատավոր մասսաներին և ոգեշնչել են նրանց կյանքում ու աշխատանքում:

Սովետահայ բանահյուսության մեջ Վ. Ի. Լենինը հավերժացված ու անմահ է աշխատավոր մարդկության համար կատարած իր մեծ առաքելությամբ:

# ՎԱՌԵԼՈՎ ՄԵՆՅԱԿԻ ԼՈՒՅՍԸ

Գ. Մ. ԿՐԺԻԺԱՆՈՎՍԿԻ

«Неделя»-ն ընթերցողների ուշադրությանն է ներկայացնում ԳՈԷԼՌՈ-ի պլանի 25-ամյակի տոնակատարության օրը, 1945 թ. դեկտեմբերի 22-ին գիտնականների տանը Գլեբ Մաքսիմիլյանովիչ Կրժիժանովսկու ելույթի սղագրությունը: Այդ սղագրությունը վերջերս գտնվել է 1899 թվականից ՍՄԿԿ անդամ Պյոտր Իվանովիչ Վոևոդինի անձնական արխիվի ֆոնդի նյութերում:

Հրապարակվում է առաջին անգամ:

Հիշում եմ VIII համագումարը: Այն ժամանակների Մեծ թատրոնը: Ամենևին էլ այսպիսի շքեղ թատրոն չէր այն, ինչպիսին դուք այժմ տեսնում եք: Խիստ քանդրտված էր, ցուրտ էր այնտեղ, լուսավորությունը՝ աղոտ... Ռազմաճակատից վերադարձած գնդացրային ժապավեններով փաթաթված շատ մարդիկ համակ ուշադրությամբ լսում էին Վլադիմիր Իլյիչի ելույթը: Իսկ մեզ՝ համագումարի բոլոր մասնակիցներիս համար այդքան հիշարժան այդ ելույթում նա խոսում է այն մասին, որ, ահա, անցել է մարտերի առաջին շրջանը, աշխարհն իրավունք ունի հուսալու որոշ կարճատև դադարի: Սակայն դա միայն կարճատև դադար է, առջևում մեզ սպասում է մարտերի մի նոր շրջան, և մենք պետք է նախապատրաստվենք դրան: Բայց ինչո՞վ է բացահայտվում այն հանգամանքը, ասում է նա, որ այս պատերազմում մենք հաղթեցինք, ինչո՞ւ մեր հետևից եկան գյուղացիական զանգվածները, ինչո՞ւ մեր հետևից եկավ գյուղացիությունը: Որովհետև նրանք փորձով համոզվեցին, որ չկա մի այլ ճանապարհ, բացի բոլշևիկներին հետևելուց, այլապես կգան հին տերերը՝ կգան կալվածատերերը, կվերադառնա գործարանատերերի ռեժիմը...

Սակայն, շարունակում է նա, այժմ տնտեսական ճակատում մեզ անհրաժեշտ է... ստեղծել մեր տնտեսության զարգացման այնպիսի պլան, որը գրավի և՛ բանվորներին, և՛ գյուղացիներին... Նա շեշտեց, որ տնտեսության մեջ պետք է ներգրավել ավելի շատ մարդկանց, քան բանակում, պետք է ներգրավել վիթխարի զանգվածների...

Կարող եք պատկերացնե՞լ, թե ինչպիսի՛ հուզմունքով, ինչպիսի՛ շփոթմունքով բարձրացա ամբիոն Վլադիմիր Իլյիչից հետո: Երկար զեկուցումից հետո ես իջա այն զգացումով, որ չասացի շատ բաներ, որ պիտի ասեի, և հուսահատ իջա: Եվ Վլադիմիր Իլյիչի քաջալերող ժպիտն ու ընկերների բարեկամական վերաբերմունքը միայն վերացրին իմ տագնապը:

Երբ հիշում եմ այդ օրերը, ապա ամենից շատ մտաբերում եմ Վլադիմիր Իլյիչի ոգևորված, գեղեցիկ, խոր միտք, խոր համոզվածություն արտահայտող դեմքը և նրա ողջ ելույթը, որն ամենքիս հոգում առաջացրեց այն տպավորությունը, թե ներկա ենք բոլորովին անսովոր, պատմական մեծ իրադարձությունների...

Վլադիմիր Իլյիչը... լիովին խորագիտակ էր էլեկտրաէներգետիկայի հարցերում: 1901 թվականին նա գրում է. «Էլեկտրաէներգիան ավելի էժան է շոգեուժից, այն տարբերվում է մեծ բաշխելիությամբ, այն ավելի հեշտությամբ է հաղորդվում մեծ տարածությունների վրա»:

Երբ հայտնագործեցինք, որ նա դեռ 1901 թվականին է գրել այդ գործերը, զարմացանք, զարմացա հատկապես ես, որովհետև նա ոչընչով ցույց չէր տալիս իր լավատեղյակությունը այդ հարցերում: Հատկապես զարմացա, երբ 1924 թվականին հրատարակվեց նրա նամակն՝ ուղղված գիտությունների ակադեմիային... Պարզվում է, որ նա 1918-ի ապրիլ ամսին գիտությունների ակադեմիային է ուղարկել այն հանրահայտ նամակը, որտեղ ցուցումներ է տալիս գիտահետազոտական աշխատանքների ընթացքի մասին, կանխանշում բոլոր աշխատանքները էլեկտրիֆիկացիայի պլանի վերաբերյալ...

1919 թվականի դեկտեմբերի 26-ին առաջին անգամ ես խոսեցի Վլադիմիր Իլյիչի հետ վառելիքային ճգնաժամի թեմայի շուրջ: Իմ գնալուց կես ժամ անց ստացա այսպիսի մի գրություն.

«Գլեբ Մաքսիմիլյա՛նովիչ: Ինձ շատ հետա-

քըրքրեց Ձեր հաղորդումը տորֆի մասին: Հոդված չե՞ք գրի արդյոք այդ մասին «Экономическую жизнь»-ում (և հետո՝ բրոշյուրով կամ ամսագրում): Անհրաժեշտ է հարցը քըննարկել մամուլում: Ահա, ասենք, տորֆի պաշարները— միլիարդներ են: Դրա ջերմային արժողությունը: Դրա գտնվելու տեղը— Մոսկվայի մոտ, Մոսկվայի մարզ: Պիտերի մոտ— առավել ստույգ: Դրա արդյունահանման դյուրինությունը (քարածխի, թերթաքարի և այլնի համեմատությամբ): Տեղական բանվորների և գյուղացիների աշխատանքի գործադրումը (սկզբի համար օրը թեկուզև 4-ական ժամ): Ահա, ասենք, բազա էլեկտրիֆիկացիայի համար այսքան անգամ այժմյան էլեկտրակայանների առկայությամբ: Ահա, ասենք, արդյունաբերության վերականգնման ամենաարագ և ամենահուսալի բազա, աշխատանքի կազմակերպումը սոցիալիստական ձևով (երկրագործություն+արդյունաբերություն), ելք վառելիքային ճգնաժամից (կազատենք այսքան միլիոն խմ փայտ տրանսպորտի համար): Տվեք Ձեր զեկուցման արդյունքները.— կցեք տորֆի քարտեզը.— համառոտ հաշվառքը՝ գումարով»...

1920 թվականի հունվարի վերջին ես հոդված գրեցի արդյունաբերության էլեկտրիֆիկացման մասին, ուղարկեցի այն Վլադիմիր Իլյիչին՝ ծանոթանալու: 1920 թվականի հունվարի 23-ին ստացա նրա պատասխանը: Այն ես համարում եմ մի փաստաթուղթ, որը հատկապես բնութագրում է Իլյիչի դերը իբրև էլեկտրիֆիկացման պլանի նախաձեռնողի ու ղեկավարի: Ահա ինչ է գրում նա.

«Գլեբ Մաքսիմիլյանովի՛չ:

Հոդվածն ստացա և կարդացի:

Հիանալի է:

Հարկավոր են մի շարք այդպիսի հոդվածներ: Այն ժամանակ լույս կընծայենք բրոշյուրով: Մեզ պակասում են հենց թափով կամ «հնարագետ» մասնագետները:

Հարկավոր է.

1) ծանոթագրություններն առայժմ վերացնել կամ կրճատել: Դրանք չափազանց շատ են լրագրի համար (խմբագրի հետ խոսելու եմ վաղը):

2) Չի՞ կարելի, արդյոք, ավելացնել ոչ թե տեխնիկական (այդ, իհարկե շատերի գործն է և շտապ չէ), այլ քաղաքական կամ պետական պլան,այսինքն՝ առաջադրանք պրոլետարիատին:

Մոտավորապես 10 (5 ?) տարում կկառուցենք 20—30 (30—50 ?) կայաններ, որպեսզի ամբողջ երկիրը ծածկենք 400 (կամ 200, եթե ավելին չկարողանանք) վերստ շառավիղ ունեցող կենտրոններով. տորֆով, ջրով, թերթաքարով, ածխով, նավթով բանող կայաններ (մոտավորապես վերցնենք ողջ Ռուսաստանը, կոպիտ մոտավորությամբ): Սկսենք, ուրեմն, անմիջապես գնել անհրաժեշտ մեքենաներն ու մոդելները: 10 (20 ?) տարի հետո Ռուսաստանը կդարձնենք «էլեկտրական»:

Ես կարծում եմ, նման «պլան»— կրկնում եմ, ոչ թե տեխնիկական, այլ պետական— պլանի նախագիծ, Դուք կարող էիք տալ:

Այն պետք է տալ այժմ, մասսային ակնառու, հանրամատչելիորեն պարզ ու ցայտուն (լիովին գիտական հիմունքներով) հեռանկարով գրավելու համար. ուրեմն դեպի աշխատանք, և 10—20 տարում ողջ Ռուսաստանը, և՛ արդյունաբերականը, և՛ երկրագործականը մենք կըդարձնենք էլեկտրական: Կաշխատենք կհասնենք մինչև այսքան (հազար կամ միլիոն ձիաուժ կամ կիլովատ ??) մեքենայական ստրուկների և այլն:

Եթե լինե՞ր նաև Ռուսաստանի օրինակելի քարտեզը կենտրոններով և շրջաններով, թե՞ այդ դեռևս հնարավոր չէ:

Կրկնում եմ, պետք է բանվորների և գիտակից գյուղացիների մասսային գրավել 10—20 տարվա մեծ ծրագրով:

Կխոսենք հեռախոսով:

Ձեր Լենին

P. S. Կրասինն ասում է, թե երկաթուղիների էլեկտրիֆիկացումը մեզ համար անհնար է: Այդպե՞ս է, արդյոք: Իսկ եթե այդպես է, ապա թերևս հնարավոր կլինի 5—10 տարի հետո՞. գուցե հնարավոր է Ուրալո՞ւմ:

Չպատրաստե՞լ, արդյոք, էլեկտրակայանների ցանցի «պետական պլանի» մասին հատուկ հոդված՝ քարտեզով, կամ դրանց մոտավոր թվարկմամբ (թվով), հեռանկարներով, որոնք կարողանային կենտրոնացնել ողջ երկրի էներգիան:

Խնդրում եմ, այս նամակն ստանալուն պես զանգահարեք ինձ, և մենք կխոսենք»:

Նա պարզ պատկերացնում էր էլեկտրացանցի դերը մեր վիթխարածավալ երկրի համար: Նա հարցնում էր ինձ. այ, ասեք, դուք ինձ— թե հնարավո՞ր է էլեկտրակայաններում ստեղծել այնպիսի դիսպետչերացում, որ, այստեղ, ասենք, շրջանն աշխատում է, իսկ մենք անջատում ենք՝ այդ շրջանը իր մեղքի համար: Կարելի՞ է այդ անել: Ես ասում եմ. լիովին հնարավոր է:

«Այ դա՛,— ասում է,— ես հասկանում եմ, այ դա՛ գիտություն է...»:

Մի անգամ գալիս եմ Վլադիմիր Իլյիչի մոտ և զրույցի ընթացքում ասում, որ Ամերիկայում, վերջին տվյալների համաձայն, միացվում են այսքան տասնյակ միլիոն էլեկտրալամպեր: Իսկ մե՞զ մոտ որքան: Իսկ մեզ մոտ շատ քիչ է, համեմատել չարժե: «Դե՛, գիտեք ինչ, խիզախումների մի քանի տարիներ հետո, մեզ մոտ կսկսվի այնպիսի արագընթաց, որպիսին ամերիկացիները չեն պատկերացնում»: Ես ասացի այն մասին, թե ինչպես այդ լամպերը դուրս են գալիս քաղաքների սահմաններից և հասնում ամերիկյան ֆերմերներին:

Եվ ահա Վլադիմիր Իլյիչն ինձ գրում է.

«Գ. Մ.: Գլխումս այսպիսի միտք ծագեց: Էլեկտրականությունը պետք է պրոպագանդել: Ինչպե՞ս: Ո՛չ միայն խոսքով, այլև օրինակով: Ի՞նչ է նշանակում այդ: Ամենակարևորը— մասսայականացնել այն: Դրա համար անհրաժեշտ է ՌՍՖՍՀ-ի ամեն մի տան համար այժմ իսկ մշակել էլեկտրական լուսավորության պլան: Դա երկարատև ժամանակի համար, քանի որ ոչ 20.000.000 (—40.000.000 ?) լամպեր, ոչ լարեր և այլն դեռ երկար ժամանակ կպակասեն մեզ: Բայց պլանն այդուհանդերձ անհրաժեշտ է հենց հիմա, գոնե մի քանի տարվա համար: Այդ 1-ին: Իսկ 2-րդը, պետք է անմիջապես մշակել համառոտ պլան և ապա՝ 3-րդ— այդ ամենագլխավորն է— հարկավոր է կարողանալ մասսաներին կոչել և՛ մրցության, և՛ ինքնագործունեության, որպեսզի նրանք իսկույն գործի անցնեն: Կարելի՞ է դրա համար անմիջապես մշակել այսպիսի պլան (մոտավորապես). 1) բոլոր շրջանները (10—15 հազ.) մեկ տարում ապահովվում են էլեկտրական լուսավորությամբ. 2) բոլոր ավանները (½—1 միլիոն, հավանաբար, ¾ միլիոնից ոչ ավելի)՝ երկու տարում. 3) առաջին հերթին՝ խրճիթ-ընթերցարանը և սովդեպը (2 լամպ). 4) սյուները մի կերպ անմիջապես պատրաստեք. 5) մեկուսիչներն անմիջապես պատրաստեք ինքներդ (կերամիկական գործարանները, կարծեմ, տեղական են և փո՞քր): Պատրաստեք մի կերպ. 6) պղինձ լարերի՞ համար: Ինքներդ հավաքեք գավառներից ու շրջաններից (նուրբ ակնարկ զանգերի և այլնի վերաբերյալ). 7) ուրեմն այսպես, կազմակերպեք էլեկտրականության ուսուցումը: Կարելի՞ է արդյոք նման մի բան մտածել, մշակել և դեկրետավորել:

Ձեր Լենին»:

Այս փաստաթուղթը վկայում է, որ էլեկտրալամպերը մեզ մոտ իրավամբ կոչել են «Իլյիչի լամպեր»:

Այն ժամանակ դժվար էր կատարել Վլադիմիր Իլյիչի այդ հանձնարարությունը— մեր առջև ծառացած էր պայքարը մեր շուրջը տիրող ավերածության դեմ:

...Այդ փորձին, ինչպես գիտեք, մասնակցեցին մեր երկրի 200 գիտնականներ: Ուրախ եմ, որ նրանցից մի քանիսը մինչև օրս ողջ են, և մենք կարող ենք նրանց հետ հիշել այդ օրերը: Բայց նրանցից շատերն արդեն չկան:

Բոլորն այդ ժամանակ մտածում էին՝ 200 մարդը արդեն վիթխարի զանգված է: Իսկ այժմ, երբ կանգնած ենք այդ նոր հսկա շինության առջև, միշտ կհիշենք, որ ԳՈԷԼՌՈ-ի պլանը մեր շինարարության երախայրիքն էր:

Եվ հիմա հիշում ենք, որ պատերազմի նախօրյակին ամբողջ աշխարհը պետք է համոզվեր, որ այն, ինչ մենք գրել էինք ԳՈԷԼՌՈ-ի պլանում, գրել էինք ոչ այնքան մեզ, ժամանակակիցների համար, որքան ողջ աշխարհի աշխատավորության, աշխարհի ապագա ճակատագրի համար:

Եվ այժմ ահա բացառիկ պարզությամբ մենք տեսնում ենք, թե որքան կարևոր էր, որ մեր երկիրը, իրոք, կարողանար նախապատրաստվել մարտական այն դիրքին, որով նա ողջ աշխարհի առջև ծավալեց պայքար նվաճողների ֆաշիստական գազանների դեմ...

Այսպիսին է հերոսականությունն այն ահեղ ու մեծ դարաշրջանի: Կարծում եմ, որ մենք այժմ թևակոխում ենք համանման մի շրջան... Ողջ աշխարհին հայտնի են մեր երկրի մարտունակությունն ու աշխատունակությունը: Եվ մեր խնդիրը մեկն է՝ ստեղծել վիթխարի կարողություններ, որպեսզի հետևելով շինարարության նախորդ փուլերին, նշանավորենք մեծ, նոր դարաշրջանի նոր փուլերը...

Հրատարակումը պատրաստել են ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության պետական արխիվի աշխատակիցներ Ե. Կորովինան և Ա. Նովիկովան:

(«Неделя», 1980 г., № 9).

# ՆՐԱ ԿԵՆԴԱՆԻ ՆԵՐԿԱՅՈՒԹՅՈՒՆԸ

ՄԱՐԻԵՏԱ ՇԱՀԻՆՅԱՆ

## I.

**ԲՈԼՈՐՈՎԻՆ ՎԵՐՋԵՐՍ** մենք տոնում էինք հարյուրամյակը, իսկ այժմ արդեն Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան հարյուրտասնամյակն է:

Բայց որքան ավելի դարերին են անցնում նրա մեծ կյանքի տարիները, այնքան ավելի մոտ ու մոտ է դառնում նա մեզ: Թվում էր, թե ավելի ու ավելի են պակասում նրա կենդանի ժամանակակիցները, մարդիկ, որ տեսել են նրան, լսել նրա խոսքը: Սակայն աճում են սերունդները, ավելի ու ավելի խոր ու հեռուն տեսնելով ապագան, ուսումնասիրելով նրա կյանքը և արտասանած յուրաքանչյուր խոսքը: Ժողովուրդն ավելի ու ավելի է զգում Լենինի կարիքը:

Տարեցտարի ընդլայնվում է լենինյան նյութերի ուսումնասիրությունը: Նրանք, ովքեր վերջին ամիսներին հետևել են մեր պարբերական մամուլին և այն ամենին, ինչ ցուցադրում է հեռուստատեսությունը, գիտեն, թե ինչպիսի՜ մեծ տեղ է գրավել դրանցում լենինյան թեման: Սովետական մարդիկ ժամերով նստել են էկրանների առաջ, սրտով հետևելով, թե որքա՜ն շատ ուսումնասիրողներ լուրջ, խոհուն դեմքերով, թղթապանակներով, ձեռագրերով, տպագիր ու գրավոր նյութերով հարուստ արխիվներում և գիտական կաբինետներում վերծանում, դասդասում, ծանոթագրում, ժամանակագրում են լենինյան նորագյուտ փաստաթղթերը, ըստ էության, հին, բայց միայն այժմ հայտնի դարձած: Որքա՜ն երախտապարտ ենք մենք այդ համեստ աշխատավորներին իրենց գործի համար: Այդ աշխատանքն ինքը մեծապես օգնում է լենինյան մասսայական պրոպագանդային:

Ողջ երկրում տեղի են ունենում կուսակցական դռնբաց ժողովներ, նվիրված այն բանին, թե ինչպես ապրել, աշխատել և մաքառել լենինաբար, և հենց ուսումնասիրողների այդ տքնաջան աշխատանքը նյութերի իր բաժինն է ի սպաս դնում ժողովների մասնակիցներին: Այն նոր աշխուժություն է հաղորդել հասարակական հիմունքներով ստեղծված և իրենց քաղաքի կամ շրջանի հեղափոխական անցյալին նվիրված թանգարաններին, օրինակ՝ Կրասնոպրեսնենսկի կոմերիտական թանգարանին, որ ժողովել է Կրասնայա Պրեսնյայի կոմերիտմիության հեղափոխական պատմությանը վերաբերող նյութերը: Այդ աշխատանքն, ինքնին, որոշակի չափով նպաստում է Լենինի կերպարի առավել խոր մեկնաբանմանը թատրոնում, կինոյում, կերպարվեստում: Վերցնենք այնպիսի մի դետալ, ինչպիսին էկրանի վրա Լենինի ձեռագրի խոշորացված ցուցադրումն է: Այդ նուրբ, նետանման, իր խնայող նրբագեղությամբ սեղմ, բայց ընթեռնելի և հասկանալի ձեռագիրը մեզ համար դառնում է տպագրված տեքստից ավելի մոտ ու հարազատ:

Ինձ թվում է, առաջ չի եղել այսպես հիանալի կազմակերպված համաժողովրդական, նման ծավալուն հաղորդակցում Լենինի հետ՝ արխիվների, գիտական ինստիտուտների, արվեստի, ռադիոհաղորդումների և կինոյի միջոցով:

Որքա՜ն բան արդեն գտնված է, բացահայտված, ուսումնասիրված, բայց ահա գարնանային թարմ ծիլերի պես լույսընծայվում են լենինյան ծանոթ մտքերը՝ մեզ համար նորովի կենդանացած: Եվ հառնում է մեզ անհայտ ինչ-որ բան Լենինի մեջ և Լենինի մասին: Այդ օգնում է Լենինի կյանքի ու բնավորության առավել ամբողջական բացահայտմանը՝ նման ժամանակի ձեռքով ստեղծված նկարապատառի վրա արված վրձնահարվածին:

## II.

Ժամանակակիցները գնում-հեռանում են՝ հուշեր թողնելով Լենինի կենդանի ներկայության մասին: Բայց նրա կենդանի ներկայությունն անանց է: Այն լցնում է մեզ շրջապատող աշխարհը, տարեցտարի դառնում մեր խղճի մի մասը: Եվ զարմանալին այն է, որ ծնվում են նորանոր, մամուլում չհրապարակված հուշեր, լեգենդի, բանահյուսության նման, ստեղծված Լենինի նկատմամբ տածած սիրով և սկզբնաղբյուրի վերապատումից մնացած իրական փաստերով: Այդպիսի մի հուշ-լեգենդի ես ինքս ծանոթացա մի տարի առաջ: Այն ապրում է այն հիվանդանոցի աչքի բաժանմունքի քույրերի շրջանում, ուր ես պառկած էի: Ինչպես հայտնի է, Լենինն աչքերը բուժում էր պրոֆեսոր Ավերբախի մոտ, որը նրա մոտ էր գալիս իր ասիստենտուհու հետ: Այն ամենը, ինչ տեղի է ունեցել այդ այցելությունների ժամանակ, Լենինի կրեմլյան բնակարանում, ասիստենտուհին պատմել է իր մերձավորներին, և այն փոխանցվել է մասնագետների երիտասարդ հերթափոխին.

Իր՝ Ավերբախի տպագրված հուշերում այդ պատումը չկա: Բայց կա խմբագրության ծանոթագրությունը, որ այդ հուշերը «տպագրվում են հապավված»: Ահա պատումը՝ իր ողջ բարոյական վեհ գեղեցկությամբ և Լենինի բնավորության համանմանությամբ:

Աշնանային խոնավ երեկո էր: Այցելելով Լենինին՝ Ավերբախը դուրս եկավ նախասենյակ և սկսեց փնտրել իր կրկնակոշիկները: Նրան ճանապարհող Լենինը արագ կռացավ և մոտեցրեց դրանք Ավերբախին:

Շփոթված պրոֆեսորը ոչ մի կերպ չէր կարողանում ոտքը մտցնել կրկնակոշիկի մեջ, և այդպահ Վլադիմիր Իլյիչը կրկին օգնեց նրան: Ավերբախը, շփոթված, կմկմաց. «Վլադիմիր Իլյի՛չ, ինչպե՞ս կարելի է: Ի՞նչ եք անում»:

«Իսկ ես մանկուց եմ այդպես դաստիարակված,— պատասխանեց Վլադիմիր Իլյիչը,— մեր ընտանիքում շատ էին հարգում բժիշկներին և ուսուցիչներին...»:

Հավանաբար, հրատարակիչները ևս շփոթվել էին Ավերբախի պես և ամաչել էին տպագրել իրոք լենինյան, նրա բնավորությանը շատ հատուկ, պարզ ու հուզիչ այս դեպքը:

Եվ, եթե նույնիսկ լեգենդ է այդ— որքա՜ն են սիրում, ինչպե՜ս են հասկանում Լենինին այս սքանչելի լեգենդը հյուսող մարդիկ:

Բայց ահա բոլորովին վերջերս՝ 1980 թվականի մարտին, ինձ կրկին բախտ վիճակվեց հանդիպել այս անգամ ոչ թե հավանական «լեգենդի», այլ Լենինի մասին մի կատարյալ հայտնագործության, որը, ճիշտ է, ինքս չեմ կատարել, այլ ընկերներս են արտագրել «Սովետսկի էկրան» ամսագրից (1980 թվականի մարտ, № 5, էջ 8) և ուղարկել ինձ իբրև նվեր ծննդյանս օրվա առթիվ:

...Վավերագրական ֆիլմերի կենտրոնական ստուդիայի կինոռեժիսոր Բ. Ռիչկովը ճամփորդում է Շվեյցարիայի՝ Լենինի անվան հետ կապված քաղաքներում: Եվ ահա Ժնևում նա այցելեց այն գրադարանը, որտեղ իր վտարանդիության ժամանակ պարապել էր Լենինը: Եվ այնտեղ ինչ-որ մոսյո Պիկո 1947 թվականից հավաքել է Լենինին վերաբերող փաստաթղթերը: Մնացածը քաղում եմ Ռիչկովի հոդվածից:

«...Պարոն Լենինին ընթերցասրահի ընկերության անդամ ընդունելու արձանագրությունը... Ահա այն գրքերը, որ օգտագործել է Լենինը: Օրինակ այս՝ «1871-ի Փարիզյան կոմունայի պատմությունը» (հեղինակը՝ Լիսագարե, Փարիզ, 1896), նա պահել է երկու ամիս»:

Արտակա՛րգ հայտնագործություն: Լենինին ուսումնասիրողները գիտեն՝ ինչպիսի՜ վիթխարի նշանակություն է ունեցել նրա համար Փարիզյան կոմունան: Շատ մեծ է նրա դերը Լենինի կյանքում, նրա մտածողության, գործողությունների, համոզմունքների համար: Սակայն այդ դերի մասին, ցավոք, դեռևս քիչ է գրվել: Եվ ահա այս փոքրիկ մանրամասնը՝ Ժնևյան գրառումն այն մասին, որ գրադարանային գրքերի նկատմամբ այդպես խնամքով վերաբերվող, խիստ ճշտակատարությամբ դրանք գրադարանին վերադարձնող Լենինը հատկապես վերոհիշյալ այս գիրքը պահում է ամբողջ երկու ամիս, ասես, ափսոսում է բաժանվել դրանից: Ժնևյան գրադարանի այս գրառումը մի ավելորդ անգամ չի՞ վկայում, արդյոք, Փարիզյան կոմունայի նկատմամբ Վլադիմիր Իլյիչի խոր հետաքրքրության մասին:

Դեռևս որքա՜ն հայտնագործություններ ու գյուտեր կարող ենք սպասել ապագայում... Ամեն մի նոր մանրամասն, ամեն մի գիծ մեծացնում է մեծ Լենինի կերպարի հմայքը:

Գնում-հեռանում են ժամանակակիցները: Բայց աճում են սերունդները՝ սովետական սքանչելի երեխաները, դպրոցների լենինյան անկյունների ստեղծողներն ու ձևավորողները, որոնց (այդ անկյունների) նշանակությունը դժվար է գերագնահատել: Քանզի Լենինին՝ իբրև առաջնորդ, ղեկավար, հեղափոխության ստրատեգ ու պրակտիկ, սոցիալիզմի կերտող, համաշխարհային պատմության նոր դարաշրջանի սկզբնավորող, բանականությամբ ըմբռնելուց առաջ նրանք ողջ սրտով համակվում են Լենին մարդու նկատմամբ սիրով, մարդ, որն իր անաղարտությամբ, պարզությամբ, պարզասրտությամբ, անկեղծությամբ, եսասիրության բացակայությամբ, իր բուռն ռեակցիաների անմիջականությամբ, մի խոսքով՝ բնավորության մանկականությամբ այնպե՜ս մոտ է իրենց:

Մանուկ հասակից սերը Լենինի նկատմամբ ունի դաստիարակչական մեծ ուժ: Եվ այն առաջին անհրաժեշտ պայմանն է ապագայի համար, որ մանուկները մեծանան որպես իսկական լենինյաններ, լենինյան տիպի գործիչներ:

«Правда», 21 ապրիլի, 1980 թ.

# ԻՆՉԻ ՄԱՍԻՆ ԷՐ ՊԱՏՄՈՒՄ «ԱՔԻԼԼԵՍԻ» ՆԱՄԱԿԸ...

## ԳՏՆՎԱԾ Է Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԻ ԿԵՂԾԱՆՈՒՆ ԵՎՍ

ՅՈՒ. ՊԵՍԻԿՈՎ

«Թանկագին ընկե՛ր, սիրելի... ազնիվ Այաքս Թելամոնիդ: Թո՛ղ քո նիզակը խոցի Աբելի երկարամարմին սիրտը, եթե այն մազաչափ անգամ դավաճանել է քեզ...»:

Հոմերոսի «Իլիական» պոեմի հերոսին՝ փառապանծ զինվոր Այաքսին ուղղված այս խոսքերը ես հայտնաբերեցի Սարատովի մարզային պետական արխիվում պահպանվող ոստիկանական «գործում»: Թղթապանակի վրա տարեթիվն է՝ 1913 թվական:

Ինչո՞ւ է ցարական պահնորդությանը հետաքրքրել Հին Հունաստանի էպոսի հերոսը, որն իր սխրանքները գործել է դեռևս մեր թվագրությունից առաջ:

Բանն այն է, որ Այաքսին ուղղված Աբելի խոսքերով է սկսվում հեղափոխական-բոլշևիկների կոնսպիրատիվ նամակը: Միապետության մայրաքաղաքից՝ Պետերբուրգից, Աստրախան ուղարկված այս նամակը կես ճանապարհին բռնագրավել էր պահնորդությունը: Գործակալներին, լրտեսներին անմիջապես հանձնարարվեց պարզել, և որքան հնարավոր է արագ, թե ով է թաքնված անտիկ հերոսի անվան տակ: Շուտով պարզվեց. Այաքս Թելամոնիդը՝ այդ Ստեփան Գեորգիևիչ Շահումյանն է, որ աքսորված էր Աստրախան և գտնվում էր ոստիկանության հսկողության տակ:

Նամակի հեղինակը, որ ստորագրել էր «Քո Աբել», այդ ոստիկանության դեպարտամենտին հայտնի Աբել Սաֆրոնովիչ Ենուկիձեն էր, որ ծնվել էր Քութայիսի նահանգի Ռաճվա գավառի Ցխադիսի գյուղում և ապրում էր Պետերբուրգում, Շլիսելբուրգյան պողոտայի վրա:

Ենուկիձեի՝ Շահումյանին ուղղված այս և այլ նամակներում բազմիցս հանդիպում է «Իլիականի» կերպարներից մեկի՝ հզոր, իմաստուն, և՛ խորհրդում, և՛ ճակատամարտում առաջնագույնի՝ Աքիլլեսի անունը ևս: Նամակների տեքստից պարզ է, որ Աքիլլեսը կուսակցական գործչի քաղաքական կեղծանունն է:

1914 թվականի սկզբին բոլշևիկ Ենուկիձեն, որ ծավալուն աշխատանք էր կատարում մայրաքաղաքի շրջաններում, հաղորդեց Շահումյանին, որ իրեն տեղափոխել են այլ շրջան, Նևայի ուղեկալից այն կողմ: «...Իմ շրջանը,— գրել է Ենուկիձեն,— Վիբորգյան շրջանից ավելի բանվորական է: Վաղը իմ հարևան մետալուրգների ժողովն է, այն մարտական կլինի... մեծապես շնորհակալ եմ քեզնից Աքիլլեսի նամակն ուղարկելուդ համար: Այն ես շատերին եմ ցույց տվել: Այժմ այն ետ եմ ուղարկում քեզ: Ափսոս, ինձ հայտնի չէ քո նամակի բովանդակությունը՝ մանրամասն: Նրա փաստարկներին ես լիովին համաձայն եմ: Այս մասին որևէ կերպ կխոսենք իրար հետ...»:

Ինչպես տեսնում ենք, Աքիլլեսի նամակի նկատմամբ հատուկ վերաբերմունք կա: Ս. Գ. Շահումյանը Աստրախանից ուղարկել է այն Պետերբուրգ՝ Ա. Ս. Ենուկիձեին, վերջինս և՛ ինքն է կարդացել, և՛ շատերին է ծանոթացրել դրա բովանդակությանը, իսկ հետո վերադարձրել է Շահումյանին: Քանի որ ցենզուրային պայմանները թույլ չեն տվել քննարկել Աքիլլեսի շարադրած փաստարկներն ու արգումենտները, ապա Ենուկիձեն հույս է հայտնում, որ ինքն այդ մասին հանգամանորեն կխոսի Շահումյանի հետ, երբ կհանդիպի նրան անձամբ:

Այս ամենից հետևում է, որ Աքիլլեսի նամակը կուսակցական կարևոր փաստաթուղթ է:

Երբ այդ նամակն ընկավ Ենուկիձեի ու Շահումյանի նամակագրությանը հետևող ոստիկանության ձեռքը, նրանք պատճենահանեցին այն, իսկ նամակը կրկին ծրարեցին և ուղարկեցին հասցեատիրոջը՝ ոչինչ չկասկածող Շահումյանին, Աստրախան:



«Հույժ գաղտնի փաստաթուղթը», ինչպես հետագայում այդ նամակը կոչեցին ոստիկանները, ուսումնասիրեցին և՛ ոստիկանական դեպարտամենտի հատուկ բաժնի պետը, և՛ այդ դեպարտամենտի դիրեկտորը, և՛ Սանկտ-Պետերբուրգի պահնորդական բաժանմունքի պետը, և՛ Աստրախանի նահանգի ոստիկանական վարչության պետը: Եվ բոլորն անհամբեր էին իմանալու՝ ո՞վ է փաստաթղթի հեղինակը, որին Ենուկիձեն Աքիլլես է կոչել:

Առաջինը փորձել է այս գործում պարզություն մտցնել ոստիկանական գնդապետը՝ Աստրախանում: 1914 թվականի հունվարի 22-ին ոստիկանական դեպարտամենտին ուղղված զեկույցում նա հայտնել է այն ենթադրությունը, թե նամակի հեղինակը՝ Աքիլլեսը, «հավանաբար Լենինն է»:

Աքիլլեսի անունը հանդիպում է 1913 թվականի աշնանը Պետերբուրգից Ենուկիձեի՝ Շահումյանին ուղարկված նամակներում, ուր նա հաղորդում է բանվորների շրջանում բոլշևիկների ավելի ու ավելի աճող դերի, բոլշևիկյան ամսագրերի մասին:

«Վիթխարի, շլացուցիչ ազդեցություն է գործում բանվորների շրջանում բ-երի (բոլշևիկների— Խմբ.) վարքագիծը: Բոլոր ընտրությունները միություններում, նրանց բոլոր մարմինները, նրանց բոլոր որոշումները և՛ ապահով(ագրության), և՛ այլ հարցեր(ում) համապատասխանում են բ-յանին: Նույնն է նկատվում և բանվորական շարժման բոլոր բնագավառներում: Լիկվիդատորները հիմա զբաղվում են միայն հայհոյանքով...»,— հայտնում էր Ենուկիձեն 1913 թվականի նոյեմբերի 19-ին:

Աստեղ էլ նա գրում է. «Իլյիչի հոդվածը փոթորիկ առաջացրեց: Չխ.-ը* շատ զայրացած է, բայց չի կարող չընդունել Իլյիչի իրավացիությունը, չնայած ավելացնում է, թե ինքը լավատեղյակ չէ, խոսում է իմ մասին: «Նողկալիները», իհարկե, ամեն ինչ բացատրում են այնպես, ինչպես դու թելադրում ես: Չէ որ նրանք իրենք ուրիշ փաստարկներ չունեն: Նրանք երբեք չեն կարող հասնել գործի նկատմամբ աքիլլեսյան սիրուն»:

Բերված տողերից երևում է, որ Իլյիչն ու Աքիլլեսը միևնույն անձնավորություններն են: Իսկ Իլյիչը Վ. Ի. Լենինի հայտնի կեղծանունն է: Լենինի ո՞ր հոդվածն է «փոթորիկ առաջացրել»: Հնարավոր է, որ խոսքն այստեղ Վ. Ի. Լենինի անհայտ հոդվածի մասին է:

1913 թվականի սեպտեմբերի 30-ի նամակում Ենուկիձեն հաղորդել է «Պրավդա»-ի մասին: «Լրագիրը ենթարկվում է անասելի հալածանքի: Այնուամենայնիվ այն սպառվում է (միայն Պիտերում) ավելի քան 30 հազար... մի խոսքով, հատկապես հիմա ամենից ավելի է զգացվում արտակարգ տարածված ու ազդեցիկ լրագրի լավագույն կազմակերպման անհրաժեշտությունը»:

Այս նամակում իսկ Ենուկիձեն նկատում է. «Խախմովիչը* հաճախ է խայտառակ վրիպումներ թույլ տվել: Այդ վրիպումները մասամբ ես ևս մատնանշում եմ, հաճախ ղեկավարվելով ընթերցող-բանվորների կարծիքով: Կր.-ից նրան մի լավ շշպռեցին»:

Ինչպե՞ս հասկանալ վերջին դարձվածքը:

Կր.-ը նշանակում է Կրակով, ուր 1912 թվականի հունիսին Փարիզից տեղափոխվել էր Վ. Ի. Լենինը հայրենիքին մոտ լինելու համար: Լեհական այդ քաղաքից նա առավել սերտ կապեր էր հաստատել Ռուսաստանի հետ, ուղղություն էր ցույց տալիս բոլշևիկյան կազմակերպությունների աշխատանքին, ղեկավարում «Պրավդա» լրագիրը:

Չեռնոմազովի «շշպռոցը», որի մասին գրում է Ենուկիձեն, անշուշտ, կազմակերպել է Լենինը: Միրոն Չեռնոմազովը հարուցել էր Վլադիմիր Իլյիչի սաստիկ անվստահությունը: Աշխատելով իբրև «Պրավդա»-ի քարտուղար, Չեռնոմազովը «հաճախ խայտառակ վրիպումներ էր թույլ տալիս»: Կրակովյան շշպռոցներից հետո, նկատում է Ենուկիձեն, «սկսեց ենթարկվել, բայց և նետում է պլանետային կատակներ: Ողջ ցավը նրանում է, որ նրան փոխարինող չկա»: Այստեղ հենց նա մեջբերում է Աքիլլեսի խոսքերը. «Եթե հնարավորություն կա, խնդրում եմ, անմիջապես փոխարինեք նրան որևէ մեկով»: Միրոն Չեռնոմազովին վերաբերող այս տողերը գրված էին Աքիլլեսի, այսինքն՝ Լենինի կողմից, 1913 թվականին: Ինքնակալության տապալումից հետո Չեռնոմազովը մերկացվեց որպես Պետերբուրգի պահնորդական բաժանմունքի գաղտնի գործակալ:

«Հանրապետական շովինիստների արարքները» աշխատության մեջ 1917 թվականի մարտին Վլադիմիր Իլյիչը գրել է. «Ցարական կառավարությունը ո՛չ միայն... լրտեսներով շրջապատում էր մինչև 60 հազար տպաքանակ ունեցող «Պրավդա»-ն, այլև ձգտում էր նրա

* Չխ.— հավանաբար Ա. Ի. Չխենկելին է— մենշևիկ, IV պետական դումայի դեպուտատ:

* Խախմովիչ— Մ. Ե. Չեռնոմազով: 1913-ի մայիսից 1914 թ. փետրվարը եղել է «Պրավդա»-ի քարտուղարը, հետո հեռացվել է կուսակցական աշխատանքին մասնակցելուց:

6. «Լենինյան ուղիով», № 8

կազմում խցկել ծառայող լիկվիդատորներ: Պրովոկատորների թվում էր և Չեռնոմազովը, որ կուսակցական շրջաններում կրում էր «Միրոն» մականունը: Նա վստահություն էր շահել և 1913 թվականին դարձավ «Պրավդա»-ի քարտուղարը:

Մի խումբ դեպուտատների հետ ուսումնասիրելով Չեռնոմազովի գործունեությունը, մենք 1-ին հերթին հանգեցինք այն եզրակացության, որ նա իր հոդվածներում վարկաբեկում է մեր վարքագիծը, և 2-րդ՝ կասկածելի է քաղաքական ազնվության առումով:

Սակայն փոխարինող գտնելը հեշտ չէր...»:

Այնուհետև Վլադիմիր Իլյիչը նշում է, որ Չեռնոմազովը, համենայնդեպս, «բոլորովին հեռացվեց գործից», հանվեց «Պրավդա»-ից:

Այսպիսով, 1917 թվականին Լենինի գրածը հաստատում է, որ Ենուկիձեի նամակում Աքիլլեսի սույն քաղվածքը՝ «Եթե հնարավորություն կա, խնդրում եմ, անհապաղ փոխարինեք նրան որևէ մեկով», ամենայն հավանականությամբ, Լենինի անհայտ տողերն են: Ուրեմն, Աքիլլեսը նրա կուսակցական մականունն է: Իսկ կուսակցական մականունը կեղծանվան հատուկ տեսակն է:

Հույժ կարևոր և հետաքրքրական է ո՛չ միայն վերծանել կեղծանունը, այլև հետազոտել, ի հայտ բերել՝ ինչպես, ինչ հանգամանքներում է երևան եկել այն:

1911 թվականին Բաքվում աշխատող բոլշևիկներ Շահումյանը և Ենուկիձեն անլեգալ ժողովներից մեկի ժամանակ ձերբակալվեցին ու բանտարկվեցին: Բանտախցում Ենուկիձեն Շահումյանին նվիրեց անտիկ գրականության լավագույն ստեղծագործություններից մեկը՝ Հոմերոսի «Իլիականը»: Հատորի վրա նա մակագրեց. «Այաքս Թելամոնիդին...»: Հավանաբար Ենուկիձեն ավելի շուտ է սկսել Ստեփան Շահումյանին կոչել հունական այդ հերոսի անունով: «Այաքս» կեղծանունը շուտ կպավ Շահումյանին, իր աշխատությունները ու նամակները նա ստորագրում էր այդ անունով: 1912 թվականի փետրվարին «մութ զնդաններում» բանտարկյալներին հասավ լուրը Վ. Ի. Լենինից: Դիմելով Ենուկիձեին՝ Վլադիմիր Իլյիչը գրում էր. «Թանկագին բարեկամ Աքե՛լ... ջերմորեն սեղմում եմ Ձեր ձեռքը և հուսով եմ, որ Դուք երկար չեք մնա Ձեր այժմյան ապրելատեղում»:

Լենինը խնդրում էր, եթե կան ընդհանուր ծանոթներ, ջերմ ողջույն հաղորդել իր և Նադեժդա Կոնստանտինովնայի կողմից, բոլոր ընկերներին մաղթում էր առույգություն և առողջություն: Ընդհանուր ծանոթը կողքին էր՝ կալանավոր Շահումյանը: Նրան, ինչպես և Ենուկիձեին, բախտ է վիճակվել հանդիպել, նամակագրություն ունենալ Վլադիմիր Իլյիչի հետ: Կարելի է պատկերացնել, թե երկուսին էլ որքան ուրախացրեց լուրը՝ Լենինից: Թերևս և հենց այդ ժամանակ կալանավորները, հիանալով «Իլիականի» հերոսներով, սկսեցին Աքիլլես կոչել Լենինին, դրանով իսկ արտահայտելով իրենց անսահման հարգանքը նրա նկատմամբ: Չէ որ Հոմերոսի երգած Աքիլլեսը վիթխարի ուժի տեր է, նա ամենաքաջն է, բարին, մեծահոգին և միշտ հավատարիմ է ընկերության մեջ: Իր կողմնակիցների «Մեծ հովանավորն» էր Աքիլլեսը, իսկ նրա խոսքը բազմապատկում էր ամենքի քաջությունն ու ուժը:

...Այժմ վերադառնանք Աքիլլեսի նամակին, որն առիթ տվեց ոստիկանական գնդապետին ենթադրելու, թե Աքիլլեսը «հավանաբար Լենինն է»: Նշված նամակը, իրոք, պատկանում է Վ. Ի. Լենինի գրչին: Այդ հաստատվում է, հատկապես, նամակի ամսաթվով և նրան վերաբերող ոստիկանական փաստաթղթերի ամսաթվով: Վլադիմիր Իլյիչն իր նամակն ուղարկել է 1913 թվականի նոյեմբերի 23-ին (նոր տոմարով՝ դեկտեմբերի 6-ին), Կրակովից Աստրախան՝ Շահումյանին: Նամակի տակ ստորագրված է՝ «Ձեր Վ. Ի.»: Այդ նամակը հրապարակված է Լենինի Երկերի լիակատար ժողովածուի 48-րդ հատորում: Դրանով Վլադիմիր Իլյիչը պատասխանում է Շահումյանի նամակին, քննադատում նրա արտահայտած հայացքները, մեկնաբանում Ռուսաստանյան սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության հայացքները ազգային հարցի վերաբերյալ:

Վլադիմիր Իլյիչը գրում է համոզիչ, ապացուցված, բերում ամբողջ շարք փաստարկներ, որոնց մասին Ենուկիձեն գրել է Շահումյանին. «Նրա... փաստարկների հետ ես լիովին համաձայն եմ»:

Ավելի քան չորս տարի անց՝ 1918 թվականի մարտի 2(15)-ին Կովկասի գործերի ժամանակավոր արտակարգ կոմիսար Ս. Գ. Շահումյանը «Բակինսկի ռաբոչի» լրագրում հրապարակեց Լենինի՝ 1913 թվականի նոյեմբերի 23-ի (դեկտեմբերի 6-ի) իրեն ուղղված նամակը:

Միաժամանակ Շահումյանը գրել է. «...Մեր տպագրած նամակը մեծ նշանակություն ունի՝ որպես ազգային հարցի վերաբերյալ Լենինի հայացքների որոշակի ու հստակ արտահայտություն... մենք խորհուրդ ենք տալիս ընկեր աշխատավորներին խորամուխ լինել ընկ. Լենինի բերված նամակում, քանզի ազգային հարցը հանդիսանում է մեր հեղափոխության կարևորագույն հարցերից մեկը»:

«Известия», № 96, 1980 г.

Հանճարի կյանքի կինոպատումը

# ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԲՈՑԱՎԱՌ ՋԱՀԸ

## («ԿԱՐԼ ՄԱՐՔՍ: ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՏԱՐԻՆԵՐ» ՆՈՐ ՀԵՌՈՒՍՏԱՏԵՍԱՅԻՆ ԿԻՆՈՆԿԱՐԻ ՄԱՍԻՆ)

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

**Կ. ՄԱՐՔՍԻ ԿՅԱՆՔՆ** ու գործը, նրա ըստեղծած գիտական կոմունիզմի ուսմունքը արվեստագետներին մշտապես հուզող թեմա են: Սակայն, պետք է խոստովանել, որ հրապարակի վրա շատ քիչ են այդ մեծագույն հանճարին նվիրված մոնումենտալ, մնայուն ստեղծագործությունները: Եվ ահա մեր հասարակության հոգևոր կյանքում կատարվեց գեղարվեստական բացառիկ իրադարձություն. տաղանդավոր կինոռեժիսոր Լև Կուլիջանովը սովետական բազմամիլիոն հեռուստադիտողներին ներկայացրեց իր երկարամյա տքնաջան որոնումների արգասիքը՝ «Կարլ Մարքս: Երիտասարդական տարիներ» նոր, յոթսերիանոց հեռուստատեսային կինոնկարը: Այս ժապավենը ջերմ ընդունելություն գտավ լայն հասարակայնության շրջանում և արժանի տեղ գրավեց սովետական կինոյի դասական երկերի շարքում:

Սովետական մարդիկ քաջածանոթ են Մարքսի կյանքին ու գործին, աշխատություններին, ինչպես նաև կենսագրությանը: Հասարակայնության նման լավատեղյակությունը, անշուշտ, ավելի է կարևորում գիտական կոմունիզմի հիմնադրի կատարած սխրանքի ու մարդկային խառնվածքի գեղարվեստական կերպարանավորումը: Կինոնկարը կատարյալ գեղարվեստական ստեղծագործություն է, բովանդակում է փաստագրական հարուստ նյութ և հանդիսատեսին հնարավորություն է ընձեռում՝ ընկալելու ժամանակի դեպքերն ու դեմքերը, սոցիալական պայքարի դիալեկտիկան: Առինքնող է ֆիլմի պատմաճանաչողական հենքը՝ հարուստ մարդկային բնավորություններով ու խառնվածքներով, զերծ պատմական անցքերի բռնազբոսիկ էկրանավորումից: Կինոպատումի հեղինակները (Ա. Գրեբնև, Բ. Դոբրոդեև, Լ. Կուլիջանով և գերմանացի դրամատուրգ Գ. Պֆայֆեր) իրենց խնդիրը սահմանափակել են Մարքսի կյանքի վաղ շրջանի՝ մինչև Կոմունիստական կուսակցության մանիֆեստի ստեղծման ժամանակաշրջանով: Կինոնկարը փաստորեն պատմում է Մարքսի գաղափարական հասունացման ժամանակահատվածի մասին: Այստեղ ականատես ենք լինում, թե ինչպես երիտասարդ Մարքսը մտնում է կյանք, բացահայտում իմացության ծալքերը, փնտրում իր տեղը կյանքում, սոցիալական պայքարում: Եվ հասուն, իմաստնացած Մարքսը, չխախտելով պատումի գեղարվեստական հյուսվածքը, ամրապնդելով այն պատմական ճշմարտության տրամաբանությամբ՝ մեկնաբանում է իր երիտասարդ տարիների իրադարձությունները, ճշգրտում փաստերը, տալիս պատշաճ գնահատական: Այդպիսի մոտեցումը, մի կողմից, նկարը դարձնում է պատմականորեն հավաստի, հետաքրքրական, քաղաքականապես նպատակալաց, մյուս կողմից՝ հրապուրիչ, հանդիսատեսին ներգրավելով նաև մարդկային հարաբերությունների ոլորտը:

Կինոնկարի հեղինակները գեղարվեստական նման հնարանքի միջոցով իրենց վերաբերմունքն են դրսևորել «երկու Մարքս» պրոբլեմի հանդեպ: Նկարում տարեց Մարքսը պատմում է Լոնդոնում կայացած Կոմունիստների միության առաջին կոնգրեսի, Էնգելսի հետ համատեղ Մանիֆեստի ստեղծման մասին: Որքա՜ն ոգևորություն և անկեղծ ուրախություն են պատճառում այդ հուշերը: Ո՛չ տարիների լարված աշխատանքը, ոչ էլ կորուստները նրա մեջ չհանգցրին Պրոմեթևսի կրակը, որը բերեց մարդկանց այդ մեծագույն հեղափոխականը, գիտնականը, մարդը:

Մարքսի դերը մեծ նվիրումով է կատարում բուլղարացի դերասան Վենցեսլավ Կիսյովը, որի մարմնավորած կերպարը խոր ակոս է թողնում հանդիսատեսի հոգում: Հանդիսատեսը հավատում է, որ Մարքսն իրոք այդպիսին է եղել— անճկուն կամքի տեր, ուժեղ խառնվածք: Ե՛վ այն ժամանակ, երբ խոսում է հոր հետ, և՛ երբ բացատրվում է ապագա կնոջ՝ գեղեցկուհի Ջեննի ֆոն Վեստֆալենի հետ,

և՛ երբ վիճում է գաղափարական հակառակորդների հետ, և՛ իրեն հանդիպած դժվարությունները ու անհաջողությունները հաղթահարելիս, և՛ կյանքի վեհ նպատակը փնտրելիս... Պայքարի ու մաքառման խութառատ ուղիներում նա հանդիպեց իր ապագա հավատարիմ բարեկամին, զինակցին ու համախոհին՝ Ֆրիդրիխ Էնգելսին: Անտարակույս, արտաքնապես դժվար է գտնել Մարքսի դերի համար ավելի հարմար դերակատար, հիրավի, նմանությունը զարմանալի է. արտիստին հաջողվել է բացառիկ նրբությամբ հաղորդել իր հերոսի հոգեկան հատկանիշները: Առանց արտաքին հնարքների, սոսկ աչքերի փայլով, նուրբ դիմախաղով, համակող ժպիտով, սրընթաց քայլվածքով նա կարողանում է կերտել իր արտասովոր հերոսի կերպարը՝ բարոյական անաչառությամբ ու արիությամբ լեցուն: Ընդ որում, Մարքսի բնավորությունը տրված է զարգացման մեջ: Սկզբում նա բոլորովին պատանի է, չկայունացած բնավորությամբ, երեխայական անորոշությամբ, որ հոր հանդիմանություններից մերթ շփոթվում, մերթ մեղավոր ամաչում է կամ նետվում հոր գիրկը:

Ճշմարտացիությունը, արժանահավատությունը, ամեն դրվագում ժամանակի ու հերոսի բնավորության ամենաէական հատկանիշների շեշտումը բնորոշ են այս կինոնկարին: Համակող է Մարքսի երիտասարդության կարևոր իրադարձությունների շղթան ընդգրկող ֆիլմի դինամիզմը:

Կադր առ կադր տեսնում ենք, թե հոգևոր զարգացման ինչպիսի՜ գագաթների է հասնում այդ բացառիկ անհատը, առաջ անցնելով իր ժամանակակիցներից: Դա նրան հաջողվել է շնորհիվ գերբնական, տիտանական անդուլ աշխատանքի: Նա յուրացրեց ու քննադատաբար մշակեց եվրոպական կուլտուրայի ու հասարակական մտքի ողջ ժառանգությունը: Արժե հիշատակել, որ Մարքսը, որպես բացառիկ անձնավորություն, նկատվել ու գնահատվել է դեռևս իր վաղ երիտասարդական շրջանում: Երիտասարդ հեգելականներից Մ. Հեսսը ընկերոջը՝ Աուերբախին 1841 թ. գրել է. «Պատրաստվիր ծանոթանալու կենդանի մնացածներից մեծագույն, թերևս, միակ իսկական փիլիսոփայի հետ... Դոկտոր Մարքս, այդպիսին է իմ կուռքի անունը, որը տակավին երիտասարդ (հազիվ քսանչորս տարեկան), վերջին հարվածը կտա միջնադարյան կրոնին ու քաղաքականությանը: Խորագույն փիլիսոփայական լրջությունը նրա մեջ զուգակցվում է նուրբ սրամտության հետ: Պատկերացրու, մեկ անհատի մեջ միավորվել են Ռուսսոն, Վոլտերը, Հոլբախը, Հայնեն ու Հեգելը: Ես ասում եմ միավորվել են և ոչ թե մեխանիկորեն խառնվել, ու դու պատկերացում կունենաս դոկտոր Մարքսի մասին»: Սակայն այդ բոլորը չէր. Մարքսն առաջինը փիլիսոփայությունը դարձրեց ստեղծագործական մտածողության, գոյություն ունեցող կարգերի անխնա քննադատության զենքն ու մեթոդը, մի քննադատություն, որը, ինչպես ինքն է ասել, «չի վախենում սեփական եզրահանգումներից ու չի նահանջում տիրող իշխանության հետ ընդհարվելիս»:

Այդ մեծ անհատի հարուստ ներաշխարհը, անշուշտ, դյուրին չէ վերարտադրել կինեմատոգրաֆի միջոցներով: Ֆիլմի ստեղծողներն էլ ընտրել են գեղարվեստական հեռուստատեսության հարմար եղանակ: Մարքսի հոգևոր հասունացումն ու աճը նրանք ցուցադրում են մարդկային հարաբերությունների լաբիրինթոսում, իսկ գաղափարների բախումը մարմնավորում իրարամերժ բնավորություններում: Առաջին բախումը հոր հետ էր: Արդարադատության խորհրդական Հենրիխ Մարքսը՝ հարգված ու հաջողակ փաստաբան, որդուն ևս ցանկանում էր նույնպիսի ապագա: Նրա տենչանքը զավակի ընտանեկան երջանկությունն էր, ապահով քաղքենու կյանքը: Նրան անհանգստացնում, նույնիսկ երկյուղ էին պատճառում պատանու ոչ սովորական խոհերն ու արարքները, մշտական անբավարարվածությունը ձեռք բերածով, աշխարհաճանաչման նրա որոնումները: Պատանին դեռևս չգիտե՝ ինչ է դառնալու՝ գրող, փիլիսոփա, թե՞ փաստաբան: Սակայն հաստատ համոզված է, որ պետք է անձնուրաց աշխատել մարդկության համար: Փաստաբանի կամ գիտնականի կարիերան չէր հրապուրում նրան: Տարբեր աշխարհըմբռնման այս առաջին դրսևորումն էլ դարձավ հոր և որդու տարաձայնության, փոխադարձ անըմբռնողության հիմքը: Չմոռանանք, որ Կարլը շատ էր կապված հոր հետ և այդ զգացումը պահպանեց մինչև վերջ:

Ֆիլմում Հենրիխ Մարքսի կերպարը գեղարվեստական կատարելության է հասցրել դերասան Մ. Ցետչեն: Հիրավի, հոր և որդու վեճը մասնագիտության ընտրության հարցում (փիլիսոփա կամ փաստաբան), ըստ էության, կենսադիրքորոշման բախում է, և այդպես էլ ընկալվում է: Դժվար է այստեղ գույները թանձրացնել, ինչպես կարծում են առանձին գրախոսներ: Ավանդապահ հայրը նախազգուշացնում է որդուն, որ փոթորիկը գիտության մեջ ցանկալի արդյունք չի տալիս, իսկ որդին, ասես վիճելով, նկատում է. «Ինձ խորթ են պարապությունն ու անճկունությունը, ես ամբողջովին այնտեղ եմ, որտեղ գրոհն է ու փոթորիկը»: Կարլը չի ուզում ապրել ըստ «կանոնագրքի», ամենուր նա դրսևորում է իր ինքնուրույնությունը, կամքը, անդրդվելիությունը:



Նա կրքոտ սիրով սիրում է Ջեննի ֆոն Վեստֆալենին (գերմանացի դերասանուհի Ռենատա Բլյումե), ու, չնայած սոցիալական դրության տարբերությանը (նա իշխանադուստր է), հասնում է ո՛չ միայն նրա համակրանքին ու սիրուն, ավելին, սովորեցնում է լինել իր նման անճկուն ու համառ: Դերասանուհին փայլուն է կատարում իր դերը: Մարմնավորած կերպարում նա զուսպ է, նրբագեղ և վիթխարի ներքին պաթոսով է արտահայտել հերոսուհու էությունը, նրա առինքնող հմայքը, հստակ միտքը, անսահման նվիրվածությունը Մարքսին՝ իր մավրին. ողջ կյանքը նվիրաբերելով նրան՝ Ջեննին դարձավ այդ մեծ մտածողի անձնամտերիմն ու հարազատը: Կարլի ու Ջեննիի փոխհարաբերությունները, ինչպես և հանդիպումները նրա հոր՝ Լյուդվիգ ֆոն Վեստֆալենի (գերմանացի դերասան Ռ. Քրիստոֆ) հետ, բավական հանգամանալից են ներկայացված: Այդ կադրերն օգնում են հետևելու հեղափոխական տեսության ապագա ստեղծողի բնավորության ձևավորմանը, հասկանալու նրա հոգևոր աճը: Իսկ Ջեննին, դառնալով Մարքսի կինը, չի մնում սոսկ հմայիչ, սիրող, հարազատ կին, նա դառնում է Մարքսի բարեկամը, զինակիցն ու առաջին կին մարքսիստը: Հետաքրքրական է այն տեսարանը, երբ Բրյուսելում Ջեննիին այցելում է հոր հին բարեկամ, գաղտնի խորհրդական Էսսերը: Կարեկցելով նրանց տառապանքներին, վերջինս առաջարկում է երիտասարդ ամուսիններին վերադառնալ Գերմանիա: Դրա համար հարկավոր է միայն հաշտվել երկրում իշխող կարգերի հետ: Սակայն Ջեննին իր և ամուսնու կողմից անկոտրում պատասխանում է՝ այդ անհնար է: Ինչպիսի՜ երջանկություն է սիրել այնպես, ինչպես սիրել են Մարքսն ու Ջեննին, այդ՝ ասես իրար համար ծնված զույգը: Կինոնկարի քնարական տեսարանները խոր են, տպավորիչ: Այստեղ մեծ է օպերատոր Վ. Յուսովի դերը. այդ կադրերը նա նկարահանել է արտակարգ զգուշավորությամբ: Իրոք, Յուսովն այստեղ հանդես է եկել որպես էկրանային դիմանկարի հմուտ վարպետ: Նրա խցիկը կարծես ներսից է լուսավորում հերոսների դեմքերը, հատկապես ուշադրությունը սևեռելով աչքերին, նուրբ դիմախաղին: Կադրերը հագեցված են օդով, արևով:

Տակավին պատանեկան տարիներից Մարքսը իր ողջ էությամբ ատել է փարիսեցիության բոլոր երանգները: Այդ դրսևորվել է մարդկային բազմազան հարաբերություններում: Մարքսի բարոյական խառնվածքի կայուն չափանիշները շեշտված դրսևորվում են համախոհների ու ընդդիմախոսների հետ առնչվելիս: Ահա նրանք— Բրունո Բաուերը (Խ. Բենեկե), Առնոլդ Ռուգեն (Յու. Բուդրայտիս), Հենրիխ Հայնեն (Է. Մարցևիչ), Միխաիլ Բակունինը (Լ. Կուլագին), ֆրանսիական բուրժուական ռադիկալ Լուի Բլանը (Մ. Խուցիև), բանվորների «Արդարության Միության» ղեկավար, կոմունիստ-ուտոպիստ Վիլհելմ Վեյտլինգը (Ի. Լեդոգորով), բանվոր լիդեր Էվերբեկը (Գ. Տարատորկին) և շատ ուրիշներ: Նրանցից ոմանք, չունենալով հետևողական դիալեկտիկամատերիալիստական աշխարհայացք, հանգամանքների բերումով հեռացել են սոցիալական պայքարի թատերաբեմից կամ գլորվել օպորտունիզմի ճահիճը: Այդ կերպարները նպաստում են բացահայտելու Մարքս-անհատի լինելության փուլերը: Նրանց և Մարքսի փոխհարաբերության միջոցով ֆիլմի հեղինակները ցույց են տվել, թե ինչպես է ձևավորվել մեծ մտածողի աշխարհայացքը, ի՛նչն է թրծել նրա կամքը, հաղորդել հեղափոխական եռանդ, օգնել հայտնագործելու դասակարգային պայքարի օրենքները: Այդ իսկ մարդկանց հետ շփվելով, սոցիալական իրականության տարբեր հանգամանքներում ու իրավիճակներում իսկ Մարքսը հանգեց իր նշանակալից եզրակացությանը— փիլիսոփաները միայն տարբեր կերպ են բացատրել աշխարհը, սակայն խնդիրը այն վերափոխելն է:

Հետաքրքրական են և ուսանելի Մարքսի կյանքի որոշ դրվագների ցուցադրումը. Բեռլինի համալսարան. Մարքսը նվիրվում է փիլիսոփայության ուսումնասիրությանը. հանդիպումներ երիտհեգելականների հետ «դոկտորական ակումբում». աշխատանք դոկտորական դիսերտացիայի վրա, առաջին ինքնուրույն որոշումները՝ իբրև «Հռենոսյան լրագրի» խմբագիր, բախումներ գրաքննության հետ... Տեսնում ենք, թե ինչպես վճռական են դառնում նրա շարժումները, իրոնիկ ու խորաթափանց՝ հայացքը, ինչպես մեղմ ժպիտը հակառակորդների նկատմամբ փոխարկվում է սառը ծաղրի, և նորից նրա դեմքը զարդարում է հմայիչ ժպիտը:

Գոհունակությամբ նշում ենք, որ կինոնկարում Մարքսը ճշմարտություններ հրապարակող արձան չէ՝ պատվանդանից իջած, այլ լիարյուն, կենդանի մարդ: Հիշենք, թե ինչպես էր ծաղրում նա կյանքից կտրված գործիչներին: Պատասխանելով Մարքսի բնավորության առթիվ ֆիլիստերական հարձակումներին՝ Էնգելսը նկատել է. «Եթե այդ պարոններն առիթ ունենային կարդալու Մավրի ու իմ նամակագրությունը, նրանք ուղղակի կքարանային: Հայնեի պոեզիան մանկական խաղալիք է մեր հանդուգն, ուրախ պրոզայի համեմատությամբ: Մավրը կարող էր զայրալից բռնկվել, սակայն երբեք չէր վհատվում: Ես ծիծաղից թուլանում

էի, երբ վերընթերցում էի հին ձեռագրերը»:

Կինոպատումում համոզիչ ու հավաստի է բացահայտված հանդիպումը Ֆրիդրիխ Էնգելսի՝ այն մարդու հետ, որը հետագայում դառնում է Մարքսի հավատարիմ բարեկամը, նրա հեղինակակիցը, համախոհը: Նրա դերն անկեղծ ներշնչանքով է կատարում Ալեքսանդր Սաֆրոնովը: Այստեղ ցույց է տրված նրանց համատեղ աշխատանքը տեսական աշխատությունների վրա, պայքարը միավորելու բանվորական կազմակերպությունները, դիալեկտիկական մատերիալիզմի սկզբունքների, դասակարգային պայքարի օրենքների հաստատումը: Ճշմարտացի է այն կարծիքը, որ Մարքսի կյանքում բացառիկ դեր են խաղացել երկու մարդ— Ջեննին ու Ֆրիդրիխ Էնգելսը, որոնց սերն ու մտերմությունը լուսավորել են նրա ողջ կյանքը: Այդ գաղափարական միաբանությունը եղել է նվիրական ու ոգեշնչող: Դրա գագաթնակետը կինոնկարում ցույց է տրված առագաստանավի կադրում. նրանք վերադառնում էին Անգլիայից, ծովի լազուրն ու ճերմակ առագաստը, կարծես, ներդաշնակում էին այդ մեծ մտածողների նկրտումներին:

Իբրև կինոնկարի բնաբան՝ հեղինակներն ընտրել են Մարքսի հանրահայտ ասույթը— ոչինչ մարդկային խորթ չէ ինձ: Ահա ինչու նկարում այդքան տեղ է հատկացված հերոսների կենցաղին, անձնականին, նույնիսկ ինտիմ կյանքին: Այս հագամանքն ավելի է շեշտում մեծ հեղափոխականի մարդկայնությունը, նրա ռեալիստական աշխարհընկալումը, հողեղեն շաղախը:

Անմոռաց են դրամատիկական, սոցիալ-հոգեբանական տեսարանները, որոնք ամբողջական են դարձնում, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, գիտական կոմունիզմի հիմնադրի՝ գիտնականի ու հեղափոխականի հատկանիշները միավորող այդ մեծ մարդու կերպարը: Կինոնկարի ամենատպավորիչ կադրերից է Կոմունիստների միության կոնգրեսը: Էկրանի վրա հանդիսատեսը տեսնում է, թե ինչպես կոնգրեսում Մարքս-տակտիկը, կազմակերպիչը կարճ ռեպլիկով ուղղություն է տալիս նիստին: Այստեղ սոցիալիստ-ուտոպիստների հետ վիճաբանելիս պոռթկում է Մարքսի բուռն խառնվածքը, բացահայտվում մարտիկի ու ժողովրդական տրիբունի բնատուր ձիրքը: Իրականության օբյեկտիվ, սթափ վերլուծության վրա հիմնված համոզվածությունը, հումանիստական վեհ զգացումներից բխող ոգեշնչվածությունը միաձուլվում են հեղափոխական խոսքում: Այն իր հստակ արտահայտությունն է գտնում Մարքսի ու Էնգելսի խոր ներշնչանքով գրած Կոմունիստական կուսակցության մանիֆեստում: Գաղափարական այդ խոյանքը խոր համոզչականությամբ ցուցահանել են Վենցեսլավ Կիսյովը և Ալեքսանդր Սաֆրոնովը:

Արդարև, պետք է ասել, որ կինոնկարում զբաղված բոլոր արտիստները պատասխանատվության զգացումով են կատարում իրենց վստահված դերերը: Լ. Կուլիջանովին հաջողվել է այդ բազմազգ դերակատարներից ստեղծել միասնական, ամբողջական անսամբլ: Գրականությունից էկրան բարձրացած հերոսներին հանդիսատեսն ընկալում է մեծ հետաքրքրությամբ, որպես վաղեմի ծանոթների: Նրանք կարծես կենդանանում են իրենց ողջ էությամբ: Երկու-երեք վրձնահարված, նույնքան էլ ռեպլիկ, և մեր առջև հառնում է ֆիլիստերը, որը հեղափոխություն է խաղում: Նա հիմար չէ, լիբերալ է, մարդկանց բարին է ցանկանում: Սակայն, ըստ էության, վախկոտ, հաշվենկատ, մորթապաշտ քաղքենի է: Որքա՜ն այդպիսի ստահակներ են փորձել խանգարել հանճարին, և նա անզիջում վիճաբանություններում մերկացրել է նրանց: Փարիզյան ռեստորանի սրահներից մեկում հավաքվել են ժամանակի ճանաչված գործիչներ, քաղաքական վտարանդիներ, նրանց մեջ են Բակունինը, Լուի Բլանը, Ռուսաստանից ժամանած լիբերալ Բոտկինը: Ներկաները վիճում են Ռուգեի ու Մարքսի հրատարակած «Գերմանաֆրանսիական տարեգրքի» պահպանման շուրջ: Դրա առաջին համարը բռնագրավվել էր գերմանական ոստիկանությունը, և անհրաժեշտ էին նյութական միջոցներ՝ շարունակելու հրատարակությունը: Մարքսը գրավոր շարադրում է տարեգրքի ծրագիրը: Նույնիսկ Ռուգեն, որին Մարքսն իր համախոհն էր համարում, հանկարծ հայտարարում է, որ պայքարը պարբերականի համար անմտություն է և հարկավոր է այն փակել. և այդ «հեղափոխական պարագլուխները» թեթևացած հեռանում են, երես դարձնելով իրենց երբեմնի դավանանքից:

Մարքսը, համեմատաբար, հեշտ էր տանում օտարությունը: Մինչ Ջեննին տանջում էր հայրենիքի, մայրենի լեզվի կարոտը: Տոհմիկ ազնվականուհին, «Թրիրի առաջին գեղեցկուհին ու պարահանդեսների թագուհին» թախիծով էր հիշում հարազատ տունը, սակայն համառորեն հաղթահարում էր բոլոր դժվարությունները, նյութական զրկանքները: Ռենատա Բլյումեն ստեղծել է կնոջ, ընկերոջ, մոր զարմանալի կերպարը՝ բոլորանվեր անձնազոհություն, գերծ տառապյալ երևալու միտումից:

Կինոպատումում քիչ չեն կյանքի տարբեր դրվագները ներկայացնող տեսարանները: Տըպավորիչ են կենցաղային մանրամասները, սուր երկխոսությունները, կարծիքների բախումը, որոնք յուրովի լրացնում են հանճարի հոգեբանական դիմագիծը: Հետաքրքրական են Կարլի ու Ջեննիի ընտանեկան ուրախությունները պատկերող տեսարանները: Ուշագրավ է նաև այն կադրը, ուր երիտասարդ Մարքսը խոր զսպվածությամբ, իր գերիվերությունն զգացող մարդու արհամարհանքով լի խորաթափանց հայացքով լսում է ոստիկան-չինովնիկի կարգադրությունը— հեռանալ Փարիզից: Կամ նրա հերթական վեճն ընդդիմախոսի հետ: Մի դրվագը բխում է մյուսից, և բոլորը միասին ամբողջական են դարձնում մեծ գիտնականի, հեղափոխականի մարդկային խառնվածքը՝ շարժման ու զարգացման մեջ, ստեղծագործական որոնումներում ու արարումներում:

Բացահայտելով հերոսի կերպարում սովորականի ու վեհի, առօրեականի ու արտակարգի միահյուսման բարդ դիալեկտիկան, հեղինակներն առաջին հերթին դիմել են Մարքսին, նրա երկերին, նամականուն, հուշագրություններին, պատմակենսագրական ուսումնասիրություններին (գլխավոր կոնսուլտանտ՝ Գ. Բագատուրիա): Գեղարվեստական երևակայությունն այստեղ օրգանապես միահյուսվել է իրական փաստերին, պատմական դեմքերին և օժտվել խոր համոզչականությամբ:

Կինոնկարի հուզականությանը մեծապես նպաստում է կոմպոզիտոր Բ. Վեֆելմայերի ռոմանտիկական շնչով գրված երաժշտությունը: Վերջինս ընկալվում է որպես անզուգական զույգի սիրո սերենադ, նրանց ազնիվ նպատակների հնչյունային, զգացմունքային արտահայտություն: Երաժշտությունը, բեթհովենյան վեհաշունչ, համակող մեղեդիները սոսկ ֆոն չեն, այլ նպաստում են առավել խորությամբ ընկալելու հերոսների ներաշխարհը: Կինոնկարի բոլոր կադրերն ամբողջական են, միահյուսված: Նկարիչներ Պ. Պաշկևիչը և Գ. Հելվիգը հետևողականորեն պահպանում են պատմականության սկզբունքը— միջավայրի ու կենցաղի հավաստիությունը, ճշգրիտ վերարտադրում դարաշրջանի մթնոլորտը և այլն: Արժե հիշատակել կինոնկարում «Հռենոսյան լրագրի» խմբագրության ու տպարանի (օգտագործված են ժամանակի իսկական, գործող մեքենաները ու առարկաները) իրական էկրանավորումը: Դրանք ոչ թե թանգարանային իսկություն են, այլ կենդանի կյանքն է, ասես, հարություն առել մեր առջև: Բեմադրողն այստեղ ճիշտ է նույնիսկ մանրուքներում: Ուշագրավ է Թրիրի, Բոննի, Բեռլինի, Փարիզի, Լոնդոնի պատկերումը, քաղաքներ, որոնց հետ առնչվում է Մարքսի կյանքի ուղին: Այդ կադրերը կինոպատումի բովանդակության կարևոր բաղադրատարրն են:

Կինոնկարից ստացած տպավորությունը խորն է, անջինջ: Անհնար է անտարբեր ընկալել Կոմունիստական կուսակցության մանիֆեստի մերկացնող տողերը. արդի բուրժուական հասարակությունն արտադրության ու փոխանակության իր բուրժուական հարաբերություններով, սեփականության բուրժուական հարաբերություններով, որը, կարծես, հրաշքով, արտադրության ու փոխանակության այդքան հզոր միջոցներ է ստեղծել, նմանվում է այն կախարդին, որն անկարող է այլևս իշխել իր ոգեկոչած ստորերկրյա ուժերին:

Հեղափոխական ուսմունքի ստեղծողները լավ գիտեին աշխատավորության դասակարգային թշնամիներին. միապետներն ու ոստիկանները, պառլամենտական պոլիտիկաններն ու իքնագոհ բուրժուական վարձու գրչակներն են նրանք, պրիվատ դոցենտներն ու գաղտնի խորհրդականները, մարտնչող պրոլետարիատի դիմակավոր և անդիմակ հակառակորդները: Կինոնկարի եզրափակիչ կադրերում ցույց է տրված գիտական կոմունիզմի հիմնադիրների անսասան հավատը իրենց արդար գործի հաղթանակի նկատմամբ: Այդ աներեր հավատն է արտացոլված Կոմունիստական մանիֆեստի խրոխտ խոսքերում.

«Կոմունիստներն անարգ բան են համարում թաքցնել իրենց հայացքներն ու մտադրությունները: Նրանք բացեիբաց հայտարարում են, որ իրենց նպատակները կարող են իրագործվել մինչև այժմ գոյություն ունեցող հասարակարգի բռնի տապալման միջոցով միայն: Թո՛ղ սարսափեն տիրող դասակարգերը կոմունիստական հեղափոխության առաջ: Պրոլետարները ոչինչ չունեն կորցնելու այդ հեղափոխության մեջ՝ բացի իրենց շղթաներից: Իսկ ձեռք կբերեն ամբողջ աշխարհը:

Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք»:

Այս աշխարհացունց կոչով է ավարտվում կինոնկարը:

Կինոպատումը նշանակալից է նաև որպես ՍՍՀՄ-ի ու ԳԴՀ-ի կինեմատոգրաֆիստների համատեղ ստեղծագործական հաջողություն: Ինտերնացիոնալիստական ջանքերի մարմնավորում է այն: Լև Կուլիջանովի գլխավորած ինտերնացիոնալիստական կոլեկտիվի այս փայլուն հաղթանակն արժանավոր նվեր է հարազատ կուսակցության XXVI համագումարին:

Հանդիսատեսը վերստին համոզվում է՝ Կարլ Մարքսի կյանքն ու գործը նվիրված են աշխատավոր մարդուն, համայն մարդկությանը:

Այսօր, երբ ռեալ սոցիալիզմը դարձել է իրողություն միջազգային առումով, երախտապարտ մարդկությունն ակնածանքի ու շնորհակալության խոսք է ուղղում գիտական կոմունիզմի հիմնադիրներին, որոնց ուսմունքը դարձավ սոցիալական պրոգրեսի լուսավոր ջահը:

# ԲԻՈՌԻԹՄԵՐԸ ՖԻԶԻՈԼՈԳԻԱՅՈՒՄ ԵՎ ԲԺՇԿՈՒԹՅԱՆ ՄԵՋ

**Լ. Ա. ՄԱՏԻՆՅԱՆ**
Կենսաբանական գիտությունների դոկտոր

**ԽԱՆԳԱՐՎԱԾ ՖՈՒՆԿՑԻԱՆԵՐԻ** և արտաքին միջավայրին օրգանիզմի հարմարվողականության մեխանիզմների մեկնաբանումը ֆիզիոլոգիայի և բժշկության կարևորագույն խնդիրներից է, որի էությունն է որոշել, թե ինչպես է օրգանիզմը պահպանում կենսագործունեության լավագույն մակարդակը՝ տարբեր, այդ թվում և քայքայիչ ազդեցություն ունեցող գործոնների ներգործության պայմաններում: Կենտրոնական և ծայրամասային նյարդահամակարգի վնասվածքների դեպքում խանգարված ֆունկցիաների կոմպենսացման խնդիրների ուսումնասիրման մարզում զգալի հաջողությունների են հասել Լ. Հասրաթյանի, Պ. Անոխինի, Ա. Սպերանսկու, Ա. Զիմկինայի և այլոց լաբորատորիաներում: Այս խնդրի արդյունավետ ուսումնասիրությունները հնարավորություն են ընձեռել բնութագրելու բարձրակարգ կաթնասունների մոտ խանգարված ֆունկցիաների կոմպենսացման գործում գլխուղեղի մեծ կիսագնդերի կեղևի վճռական դերը: Ողնուղեղի վնասվելու դեպքում կաթնասունների կենտրոնական նյարդային համակարգի հարմարվողականության մեխանիզմի և բարձր հուսալիության վերականգնման տեսակային ու տարիքային առանձնահատկությունների առումով զգալի ավանդ են ներդրել ՀՍՍՀ ԳԱ՝ ակադեմիկոս Լ. Ա. Օրբելու անվան ֆիզիոլոգիայի ինստիտուտի՝ Տ. Ուրգանջյանի և մեր լաբորատորիաները:

Օրգանիզմի հարմարվողականության օրինաչափությունները հետազոտողի ուշադրության կենտրոնում է հիմնական կենսաբանական պրոցեսի՝ նյութերի անընդհատ տարրալուծման և սինթեզի ուսումնասիրությունը: Գտնվելով հավասարակշռված վիճակում, կենսագործունեության այդ հակադիր տարրերն ապահովում են յուրահատուկ ֆունկցիաների կատարումը և ծախսված ստրուկտուրաների փոխհատուցումը: Ֆիզիոլոգիական հիվանդածին գործոնները, արագացնելով կամ կասեցնելով տարրալուծման ու սինթեզման պրոցեսները, փոփոխում են այդ հավասարակշռությունը: Դրան հետևում է հակադարձ պրոցեսի փոփոխումը, և խախտված հավասարակշռությունը վերականգնվում է: Ըստ էության, հենց այս ռեակցիան է որևէ ազդակի ներգործությանը հարմարվելու կամ ադապտացիայի հիմքը:

Քանի որ մարդու վրա շրջակա միջավայրի ազդեցությունը բաղկացած է ֆիզիկական, քիմիական, սոցիալական և այլ գործոնների շարունակական ներազդեցությունից, օրգանիզմի պատասխան ռեակցիան ևս այդ ազդեցություններին համապատասխանող կենսասինթետիկ պրոցեսների անընդմեջ տատանումներն են: Օրգանիզմի ադապտացիայի և խախտված ֆունկցիաների կոմպենսացման խնդիրն այստեղ սերտորեն առնչված է կենսաբանական պրոցեսների ռիթմիկ ընթացքի, այսինքն՝ բիոռիթմերի խնդրի հետ: Բիոռիթմերը այն պրոցեսների և ֆիզիոլոգիական ռեակցիաների փոխհաջորդման և ինտենսիվության տատանումն են, որոնց հիմքում ընկած են կենսաբանական համակարգերի նյութափոխանակման՝ արտաքին և ներքին գործոնների ազդեցությամբ պայմանավորված փոփոխությունները: Արտաքին գործոններից են՝ լուսավորության (ֆոտոպերիոդիզմ), ջերմության (թերմոպերիոդիզմ), հավանաբար և մագնիսական դաշտի, տիեզերական ճառագայթումների, մակընթացությունների ու տեղատվությունների, սեզոնային և արևալուսնային ազդեցությունները: Ներքին, այսինքն՝ ներածին (էնդոգեն) գործոններն են՝ որոշակի, ժառանգաբար ամրակայված տեմպով ու ռիթմով ընթացող նյարդահումորալ պրոցեսները: Բիոռիթմի հաճախականությունը



լինում է մի քանի երրորդական վայրկյանից մինչև մի քանի տարի:

Կենդանի համակարգերի ռեակցիաների ռիթմիկությունը դրանց գոյության կարևորագույն պայմանն է և կենսաբանական համակարգերի գործունեության հիմնարար, համընդհանուր հատկանիշը: Այժմ գրականության մեջ բավականին տեղեկություններ կան ինչպես ողջ օրգանիզմում, նույնպես և նրա օրգաններում ու համակարգերում հայտնաբերված բիոռիթմերի մասին: Պրոցեսների ռիթմիկությունը երևան է գալիս կենսահամակարգի հատվածների ամենատարբեր մակարդակներում (ընդհուպ մինչև բջջային, ենթաբջջային և մոլեկուլային):

Կենսաբանական պրոցեսների ռիթմիկության արտահայտությունն են բջիջների, հյուսվածքների, օրգանների, համակարգերի և ողջ օրգանիզմի գործունեության լարվածությունն ու թուլացումը: Դրանք ռիթմիկ կերպով կուտակում և արտաթորում են իրենց արտադրանքը, այսինքն՝ գեղձազատուքը, կրճատվում և թուլանում է սիրտը, ներշնչմանը հաջորդում է արտաշնչումը, նյարդային համակարգի գրգռականությանը հաջորդում է դրա ֆունկցիայի արգելակումը և այլն: Սակայն այդ չի նշանակում, թե կենդանի համակարգերի գործունեության մեջ գոյություն ունի հանգստի շրջան՝ իբրև շարժման ժամանակավոր ընդհատում. բջջի աշխատանքի յուրաքանչյուր հաջորդափուլ, օրինակ՝ գեղձազատուքի կուտակումն ու արտաթորումը, կապված է էներգիայի ծախսման հետ, ուստի և բիոլոգիապես ակտիվ է այն:

Հայտնի է, որ ո՛չ միայն կրճատումը, այլև թուլացումը դիտվում է իբրև սրտամկանի ակտիվ վիճակ: Այդ դեպքում սոսկ առերևույթ է ստեղծվում լարվածության ու հանգստի տպավորություն: Իրականում բջջի աշխատանքի ֆունկցիոնալ հանգիստը կամ լարվածությունը որոշվում է այդ ակտիվ պրոցեսների դանդաղ կամ արագ հաջորդականությամբ:

Օրգանիզմի և միջավայրի փոխներգործության ընթացքում «արտաքին» ռիթմերն անընդհատ փոխարինվում են «ներքինով» և նման համադրման արդյունքով էլ բնորոշվում է տարբեր օրգանների ու հյուսվածքների վիճակը: Նյարդային համակարգի ուսումնասիրությունը ցույց է տվել, որ գրգռիչի ներգործության ռիթմերի և իր՝ կենսաբանական համակարգի ռիթմերի համադրումը բարդ պրոցես է: Արտաքին ներգործության ռիթմի ազդեցությամբ ներվաբջիջն այնպես է վերակառուցում փոխանակման պրոցեսների իր սեփական ռիթմը, որ ընկլսում է համապատասխանել ներգործության ռիթմին, համընկնել դրան: Ա. Ուխտոմսկին այդ հատկությունն անվանել է բջջի՝ արտաքին ներգործությունների ռիթմի «յուրացման» ունակություն. այդ ունակության շնորհիվ պահպանվում է ֆունկցիոնալ ակտիվության անհրաժեշտ մակարդակը: Այդ բանն անհնար է առանց ներբջջային վերականգնող պրոցեսների տեմպի ու ինտենսիվության համապատասխան փոփոխության: Հաստատված է, որ ուլտրակառուցվածքների վերականգնման ռիթմը փոխվում է՝ գրգռիչի ներգործության ռիթմին համապատասխան, որի արդյունքը լինում է հյուսվածքների հարմարվողականությունը արտաքին աշխարհի ներգործությանը: Ներբջջային վերականգնման ռեժիմի հարմարվողական վերակառուցումն ապահովվում է միջուկային ապարատի ակտիվացմամբ (դեզօքսինուկլեինային և ռիբոնուկլեինային թթուների սինթեզի ինտենսիֆիկացիա և միջուկից նուկլեինաթթվի անցում բջջի պրոտոպլազմայի մեջ), ինչպես և բջջային պրոտոպլազմայի կառուցվածքի մեծացմամբ: Կենսաբանական պրոցեսների դինամիկայի հարմարվողական այս փոփոխություններում էլ հենց ամփոփվում է ֆունկցիաների ցիկլային տատանումների կարևոր նշանակությունը ֆիզիոլոգիայի և կլինիկական բժշկության համար: Այստեղ է դրսևորվում հարմարվողականության և բիոռիթմերի պրոբլեմների կապը: Միջավայրի գործոններին օրգանիզմի հարմարվողականության և խախտված ֆունկցիաների կոմպլեքսացման կարևորագույն մեխանիզմներից մեկը ֆիզիոլոգիական պրոցեսների ռիթմի ու լարվածության համապատասխան փոփոխությունն է. ահա թե որն է այս երկու պրոբլեմների օրգանական կապի էությունը:

Բազմաթիվ ուսումնասիրություններ ցույց են տվել, որ օրգանիզմի բնականոն գործելն ուղեկցվում է իր ֆունկցիաների տատանումների՝ իրեն բնորոշ ռիթմով, որի խախտումը հանգեցնում է այդ ֆունկցիաների խախտման, և հակառակը, արտաքին ներգործությամբ խախտված ռիթմի վերականգնումը հանգեցնում է դրանց նորմալացման: Մեր ինստիտուտի նյարդաէնդոկրինային փոխհարաբերությունների լաբորատորիայի ուսումնասիրություններով (1977—1979) ցույց տրվեց կպչուն միջավայրում գնդաձև մարմինների մազանոթային տատանումների կիրառելիությունը ներվաբջջի բիոռիթմի, ինչպես և մարդու առանձին օրգանների (սրտի, թոքերի) և ամբողջ օրգանիզմի քանակական գնահատման համար: Բացի դրանից, համեմատական անալիզի հիման վրա ցույց ենք տվել, որ ձևաբանական կառուցվածքի համապատասխան, աղիների շարժումը, սննդի հետ միասին, պտուտակաձև բնույթ ունի, որի պարբերույթները համընկնում են պարունակվածի՝ աղիների պատերին շըփ-

վելու ժամանակ ունեցած տատանումների պարբերույթներին: Օրգանիզմի գործելու նորմալ ռիթմի քանակական գնահատումն ունի գիտական ու գործնական մեծ նշանակություն, քանի որ ըստ այդ գնահատականի կարելի է ախտորոշել պաթոլոգիան, ինչպես և կանխանշել նորմայի վերականգնման լավագույն միջոցները:

Բիոռիթմերը որոշակի չափով համընկնում են համապատասխան գեոֆիզիկական ցիկլերին: Այսպես, երկրի՝ իր առանցքի շուրջը պտտվելու օրական ռիթմը պայմանավորում է միջավայրի ֆիզիկական գործոնների օրական փոփոխականությունը: Այս փոփոխությունների կոմպլեքսը բնության մեջ առաջացնում է «կյանքի ալիքներ»: Բույսերի էկոլոգիական ռիթմերը սովորաբար ունեն 23—28, իսկ կենդանիներինը՝ 23—25 ժամվա տևողություն: Այդպիսի ռիթմերը կոչվում են ցիրկադային (ցիրկա-մոտ, դիես-օրական): Գեոֆիզիկական փուլերի հետ բիոռիթմերի համաձայնեցման պրոցեսում ակտիվ դեր են խաղում օրգանիզմները: Փուլերի տևողությունը և փուլերի դիրքը կարգավորող արտաքին պայմանները կոչվում են ժամանակի սինխրոնիզատորներ (կամ տվիչներ): Երկարամյա փորձերով ցույց է տրվել, որ բիոռիթմերի սինխրոնիզատորներ կարող են լինել աղմուկը, հոտը, սնվելու ժամանակը, սեռական գրգիռները: Սակայն այս բոլոր գրգռիչներից ամենաէական նշանակությունն ունի լույսի ինտենսիվությունը: Լույսը միջավայրի այն հիմնական գործոնն է, որի հետ համաժամանակցվում (սինխրոնիզացվում) է կենդանի օրգանիզմների ցիրկադային պարբերականությունը: Լուսավորությունից է կախված օրգանիզմում ընթացող կենսաբանական պրոցեսների ինտենսիվությունը: Մենք ապրում ենք այնպիսի աշխարհում, ուր լույսն ու գույները մշտապես փոփոխվում են: Բավական է նշել, որ օրվա ընթացքում երկրի մակերեսի լուսավորվածությունը փոխվում է 300 միլիոն անգամ: Լուսավորվածության ամպլիտուդայի փոփոխականությունը պայմանավորված է ամենից առաջ երկրի պտույտով և մի շարք այլ պատճառներով (ծովի մակերևույթից ունեցած բարձրությամբ, տարվա ժամանակով, մթնոլորտի մաքրությամբ և այլն): Օրգանիզմների ժամանակը չափելու ունակությունն առաջին անգամ հայտնաբերել է ֆրանսիացի աստղագետ դը Մերոնը՝ ավելի քան 200 տարի առաջ: 1729 թվականին նա ցույց տվեց, որ բույսերն ունեն տերևների շարժման օրական պարբերականություն: Դը Մերոնն ապացուցեց, որ բույսերն օրվա ընթացքում ռիթմիկորեն մերթ բացում են իրենց տերևները և ծաղկեպսակները, մերթ փակում: Այդ հատկությունը բնորոշ է ո՛չ միայն բնական պայմաններում գտնվողներին, այլև նրանց, որոնք մշտապես պահվում են մթության կամ մշտական լուսավորվածության մեջ: Դը Մերոնի հետազոտություններն ու եզրակացությունները հաստատեցին շատ գիտնականներ:

Ինչո՞ւ են ծաղիկները ծաղկում տարվա որոշակի ժամանակում: Ինչո՞ւ մարդիկ իրենց ավելի առույգ են զգում օրվա որոշակի ժամերի: Ինչու են անտառի բնակիչներն արթնանում ձմռան քնից, իսկ թռչունները հեռանում ձմեռոցից: Պարզվում է, այդ ամենն արդյունք է այն բանի, որ կենդանիներն ու բույսերն ունեն ժամանակը չափող «ներքին մեխանիզմ»: Այդ երևույթի ժառանգական բնույթն ու էությունը՝ Երկրի մակերեսին նյութերի օրական փոխանակության հարմարեցումը լուսային պայմաններին, ապացուցել են շատ գիտնականներ: Շատ կենդանիների՝ օրվա ընթացքում քնելու և արթնանալու փոխհաջորդումը, ձմռան քնի, ամառային ակտիվության ու բազմացման ժամանակի ուսումնասիրությունն ունի ոչ թե սոսկ գիտական հետաքրքրություն, այլև՝ գործնական մեծ նշանակություն:

Ֆիզիոլոգիական պրոցեսների օրական ռիթմիկան ուսումնասիրվում է ո՛չ միայն երկրի վրա, այլև տիեզերատարածքում: 1975 թ. դեկտեմբերին Երկիր վերադարձավ «Կոսմոս—782» ուղեծրային բիոլոգիական արբանյակը: Սովետական մասնագետների հետ մեկտեղ փորձարկումներին մասնակցել են և Հունգարիայի, Ռումինիայի, Լեհաստանի, Չեխոսլովակիայի, ԱՄՆ-ի, Ֆրանսիայի գիտնականները: Արբանյականավում կային փորձակենդանիներ և կենսաբանական այլ օբյեկտներ: Տիեզերքի պայմաններում ժամանակի ֆիզիկական և սոցիալական հաղորդիչների (որոնք իրենց ներգործության ուժգնությամբ, տևականությամբ և այլնով մեծապես տարբերվում են երկրայիններից) ազդեցությամբ խախտվում է սովորական բիոռիթմը և ձևավորվում է նորը: Ժամանակի հիմնական ֆիզիկական հաղորդիչներից են նավախցի միջավայրի լուսավորությունն ու ջերմությունը, աղմուկը: Ժամանակի սոցիալական հաղորդիչներն են՝ տիեզերագնացների աշխատանքի ու հանգստի առանձնահատկությունները— քնելու և արթնանալու ռիթմը, արթնանալու ժամանակընթացքում գործունեության կարգը (անձնական հիգիենայի, ֆիզիկական վարժությունների, սնվելու, ռադիո և հեռուստասեանսների, մասնագիտական խնդիրների լուծման ժամանակը): Մարդու հարմարվողականությունը ժամանակի հաղորդիչների նոր սիստեմին, բիոռիթմերի վերակառուցումը տեղի են ունենում աստիճանաբար, օրգանիզմի տարբեր ֆունկցիաները տարբեր



ժամանակներում են նորովի ռիթմավորվում, ուղեղի մեծ կիսագնդի բարձրագույն կեղևային ֆունկցիաների տեղաշարժը տեղի է ունենում 1—2 օրում, սրտի խփոցի հաճախականությունը և մարմնի ջերմությունը՝ 5—7, մտավոր աշխատունակությունը՝ 3—10 օրվա ընթացքում: Նոր կամ մասամբ փոխված ռիթմը երկար ժամանակ մնում է անկայուն և շատ արագ կարող է խախտվել: Օրական ռիթմի վերակառուցման ընթացքը կարելի է բաժանել երեք փուլի— 1. գաղտնի փուլ (նախկին ռիթմի պահպանումը 1—3 օրով), 2. երևութական վերակառուցման փուլ (2—9 օր), 3. խոր վերակառուցման փուլ (նոր ռիթմի կայունացում): Տիեզերագնացների փոփոխված օրական ռիթմին և նոր ռիթմի ձևավորվելուն հարմարվելու ունակությունը որոշվում է օրվա սովորական ռեժիմից նոր ռեժիմի տարբերության աստիճանով, օրվա նոր ռիթմին և այլ գործոններին համապատասխան տիեզերագնացների օրգանիզմի վերափոխման ունակությամբ: Նոր բիոռիթմերի ավելի արագ ու կայուն ձևավորման, թռիչքի ժամանակ տիեզերագնացների լավ ինքնազգացումն ու բարձր աշխատունակությունն ապահովելու համար անհրաժեշտ է ապահովել քնի և արթնանալու ռիթմերի լրիվ համապատասխանություն օրգանիզմի բնական օրվա ռիթմերին, քնի և արթուն մնալու ժամանակների ռիթմիկության, օրվա ռեժիմի հիմնական պրոցեդուրաների կատարման համար ժամանակի՝ ֆիզիոլոգիապես լավագույն բաշխում, գործունեության տեսակների հոգեբանորեն հիմնավորված բաշխում (հաշվի առնելով դրանց լարվածությունը, տևողությունը և այլն), ռեժիմի խստիվ պահպանում, սովորական ռեժիմի «տատանումները» մինչև օրվա նոր կարգին անցնելը և նոր ռեժիմի «ներարկումը», նոր ռեժիմին օրգանիզմի հարմարվողականության արհեստական խթանումը (դեղորայքի օգնությամբ, գործողությունների ակտիվ ինքնակառավարմամբ և այլ միջոցներով):

Նկատենք, որ մարդն ապրում և աշխատում է աշխարհագրական որոշակի միջավայրում, որոշակի եղանակի մեջ, նա անբաժան է արտաքին միջավայրից: Հաստատված է, որ օրգանիզմի վիճակի վրա ավելի շատ ազդում են ոչ թե տարվա այս կամ այն եղանակին հատուկ օդերևութաբանական գործոնների բացարձակ չափերը (օդի ջերմաստիճանը, մթնոլորտի ճնշումը և այլն), որքան դրանց տատանումների ոչ պարբերականությունը, որոնք այդ իսկ պատճառով անակնկալ են օրգանիզմի համար: Այսպես, 1780 թվականի հունիսյան մի գիշեր Պետերբուրգում օդի ջերմաստիճանը —44-ից հասավ +6-ի: Այդ գիշեր քաղաքում հիվանդացան 40 հազար մարդ: 1967 թ. մեր երկրում ուսումնասիրվեցին արեգակնաերկրային կապերը սրտանոթային. հիվանդությունների ժամանակ: 1960—1963 թվականներին դիտվեց սրտի ինֆարկտի 8368 դեպք՝ Լենինգրադում: Հաստատված է, որ արևի բարձր ակտիվության ժամանակաշրջանում ավելանում է սրտի ինֆարկտի դեպքերի թիվը: Տարբե՛ր է սրտանոթային հիվանդություններով տառապողների զգայնությունը արեգակնային և եղանակային գործոնների նկատմամբ: Հիվանդների 55—60 տոկոսի մոտ բարձրանում է զգայնությունը տեզերական գործոնների ազդեցության նկատմամբ: Ամենից հաճախ սրվում է հիվանդության ընթացքը՝ կապված արեգակի ազդեցության և եղանակի արագ փոփոխության հետ: Իմանալով այս օրինաչափությունները՝ բժիշկները կարող են դեղամիջոցների օգնությամբ կանխել արեգակի ակտիվության շեշտակի բարձրացման բացասական հետևանքները՝ հաշվի առնելով հիվանդների անհատական առանձնահատկությունները: Կյանքի վրա արեգակի ազդեցության համալիրմանի, ավելի խոր իմացությունը կօգնի տարբեր մասնագիտության բժիշկներին արեգակնային «փոթորիկների» ժամանակ ձեռնարկելու մարդուն արեգակի ջերմամիջուկային բռնկումների վնասակար ազդեցություններից պաշտպանող, գիտականորեն հիմնավորված կանխարգելիչ միջոցների:

Մարդու և կենդանիների ֆիզիոլոգիական ֆունկցիաների օրական ռիթմիկության պահպանման համար կարևոր է արթնանալու շրջանի համընկնումը ցերեկվա լույսին և ոչ գիշերվա մթին: Ահա ինչու Արկտիկայի և Անտարկտիկայի բևեռախույզներն ավելի հեշտությամբ տանում են ամառային անընդմեջ ցերեկը, քան ձմեռվա անընդմեջ գիշերը: Ցերեկը մարդկային ողջ օրգանիզմը համակված է օրվա ռիթմով, ընդ որում, ցերեկը նրա մեջ գերակշռում են գործունեությունն ապահովող պրոցեսները, իսկ գիշերը՝ քնելուն նպաստող:

Կենդանիներն ու մարդիկ առանց ուտելու շատ ավելի երկար կարող են դիմանալ, քան առանց քնելու: Քունը հարմարվողական-նպատակային պրոցես է, որը պահպանում է օրգանիզմի բոլոր սիստեմների ճիշտ և անխափան աշխատանքը: Քնած ժամանակ ուժեղանում են սնող նյութերի մարսման ու ներծծման պրոցեսները, որը հույժ կարևոր է ուժերի վերականգնման, առողջության, աշխատունակության և երկարակեցության պահպանման համար: Ցերեկը մեծանում են շարժման ակտիվությունը, նյութափոխանակության ինտենսիվությունը և, դրանց հետ կապված, բարձրանում է մարմնի ջերմաստիճանը, ուժգնանում շնչառությունը: Մարմնի ջերմաստիճանի բարձրա-

ցում և շնչառության ուժգնացում է նկատվում և՛ ցերեկային, անշարժ ապրելակերպ ունեցող կենդանիների, և՛ նույնիսկ երկար ժամանակ անշարժ պառկած հիվանդների մոտ: Նյութափոխանակությունն ընթանում է սերընդից սերունդ ժառանգված ցիրկադային ռիթմով և պայմանավորված չէ շրջակա միջավայրի ջերմությամբ (երբ այն փոփոխվում է +5-ից 35 աստիճանի սահմաններում): Ջերմաստիճանն ազդում է միայն ռիթմի ամպլիտուդայի մեծության և ոչ թե բուն փուլի տևողության վրա: Օրգանիզմում ընթացող յուրաքանչյուր պրոցես ունի ջերմաստիճանի իր ամպլիտուդան, ընդ որում, տարբեր պրոցեսների համար այն տարբեր է:

Նորմալ կյանք վարող և օրական երեք անգամ սնվող մարդկանց մոտ մարսողության օրգանների աշխատանքի փուլն այսպիսին է. օրվա առաջին կեսում լյարդն արտադրում է լեղու առավել մեծ քանակություն, որն անհրաժեշտ է սպիտակուցներն ու ճարպերը մարսելու համար, այն ծախսում է իր կուտակած ածխածինը (գլիկոգենը) և վերածում այն սովորական շաքարի: Արտաթորելով ջուրը՝ լյարդն ստեղծում է շատ միզանյութ և կուտակում է ճարպը: Ուստի կարևոր է, որ առավոտյան և ցերեկը օրգանիզմն ստանա սպիտակուցների ու ճարպերի օրաբաժնի մեծ մասը: Օրվա երկրորդ կեսին լյարդը վերամշակում և յուրացնում է շաքարը, կուտակելով գլիկոգեն ու ջուր: Դրա հետևանքով նրա բջիջների ծավալը երեք անգամ մեծանում է: Ահա ինչու ցանկալի է, որ այդ ժամանակ սննդաբաժնում գերակշռեն ածխածինները, և երեկոյան սննդի բաժինը փոքրացվի առավոտվա ու կեսօրի համեմատությամբ: Լյարդի մեջ ամենից քիչ գլիկոգեն պարունակվում է ցերեկը (մոտավորապես ցերեկվա ժամը 15-ին), իսկ ամենից շատ՝ լուսաբացից առաջ (մոտավորապես գիշերը, ժամը 3-ին):

Մարսողական սիստեմի, լյարդի և լեղուղիների շատ հիվանդությունների բուժումը կազմակերպել, անալիզները գնահատել և բուժական սննդաբաժինը կազմել կարելի է միայն այս փուլերի իմացության հիման վրա: Չէ՛ որ աղիքների գալարակծկանքը, ստամոքսահյութի արտադրությունը, ստամոքսի կրճատումը, հետևաբար, և ախորժակը ունեն օրվա խիստ կարգ:

Ներկայումս հաստատված է, որ կենսաէներգետիկ պրոցեսների օրական փուլի առանձնահատկությունների առնչությամբ տարբեր օրգաններ օրվա որոշակի ժամին ձեռք են բերում հատուկ ընկալունակություն, որն արդեն հաշվի է առնվում որոշակի հիվանդություններ բուժելիս: Այսպես, պարզվել է, որ լյարդի սիստեմի վրա ամենից լավ է ներազդել գիշերվա մեկից մինչև երեքը, շնչառական սիստեմի վրա՝ երեքից մինչև առավոտյան հինգը: Ստամոքսը թերապևտիկ ներգործությունների նկատմամբ առավել զգայուն է առավոտյան հինգից ինը, սիրտը՝ տասնմեկից տասներեքը, սեռական և անոթային սիստեմները՝ տասնիննից քսանմեկը, երիկամները՝ տասնյոթից տասնինը, միզապարկը՝ տասնհինգից տասնյոթը, հաստ աղիքը՝ տասներեքից տասնհինգը, ենթաստամոքսային գեղձը և փայծաղը՝ իննից տասնմեկը, բարակ աղիքը՝ առավոտյան հինգից յոթը:

Օրգանիզմն անտարբեր չէ եղանակի սեզոնային (ձմեռ, գարուն, ամառ, աշուն) փոփոխությունների նկատմամբ: Էվոլյուցիայի ընթացքում կենդանի օրգանիզմների մոտ մշակվել են ֆիզիոլոգիական ռեակցիաներ, որոնք օգնում են օրգանիզմներին լավագույնս հարմարվելու այդ գեոֆիզիկական փուլերին: Ուսումնասիրված են ո՛չ միայն թռչունների չվելու ճանապարհները, այլև սեզոնային փոփոխություններին բնորոշ ռիթմիկ երևույթները՝ նրանց ֆիզիոլոգիական պրոցեսներում: Մասնավորապես հաստատված է, որ թռչունների տարեկան ցիկլում հատակ դրսևորվում են փետրափոխման, ճարպակալման շրջանը երևան հանող ռիթմերը: Այս ամենն օրգանիզմի անատոմիական և էներգետիկ վերակառուցման վկայությունն է: Թռչունների չվելուն, որպես օրենք, նախորդում է ճարպակալումը: Հեռավոր չվերթներում կուտակված ճարպը դառնում է օրգանիզմի էներգիայի զգալի ծախսումների աղբյուր:

Ֆիզիոլոգիական պրոցեսների սեզոնային փոփոխություններ նկատվում են և մարդու մոտ: Այսպես, հիմնական փոխանակման ավելացում է նկատվում գարնանը, այն պակասում է աշնանը և ձմռանը, գարնանը և ամռանը ավելանում է թթվածնի հիմնական կլանիչը՝ սպիտակուց-հեմոգլոբինը, փոխվում է շնչառական կենտրոնի գրգռականությունը: Սեզոնային փոփոխությունների նկատմամբ հատկապես զգայուն են անոթային սիստեմը և արյունը: Հեմոգլոբինի պարունակությունը և արյան կարմիր գնդիկների՝ էրիտրոցիդների քանակությունը մարդու մոտ ձմռանը 21 տոկոսով ավելի բարձր է, քան ամռանը: Ամռանը էրիտրոցիտների թիվը տղամարդկանց մոտ մի քանի անգամ մեծ, իսկ կանանց մոտ ավելի փոքր է, քան ձմռանը: Արյան առավելագույն և նվազագույն ճնշումն ամռանն ավելի ցածր է, քան ձմռանը:

Երկար ժամանակ կենսաբանության և բժշկության հրատապ խնդիրները լուծելիս անտեսվում էր ցիրկադային ռիթմերի դերը: Սակայն բժշկական պրակտիկայում կուտակվում էին փաստեր շատ հիվանդությունների ախտանշանների ռիթմիկ դրսևորման վերաբերյալ, ինչպես և այն մասին, որ որոշ հիվանդագին վիճակներ հետևանք են բիոռիթմերի խանգարման: Գաղտնիք չէ, օրինակ, որ ինֆարկտների մեծ մասը լինում է գիշերը:

Հիմա արդեն կասկածից վեր է, որ հատկապես դեղորայքի հետ զուգակցվող ճիշտ ռեժիմն է ապահովում շատ հիվանդությունների բուժման արդյունավետությունը: Պատահական չէ, որ այժմ կլինիկաներում, առողջարաններում և բուժական այլ հաստատություններում այնպես կարևորվում է օրվա ռեժիմը:

Յուրաքանչյուր օրգանիզմ մշակում է իր որոշակի ռիթմ-ստերեոտիպը: Եթե Անդրբևեռի բնակչի համար սովորական են կեստարյա գիշերն ու կեստարյա ցերեկը, ապա, ասենք, հասարակածին մոտ վայրերում ապրողների համար դժվար կլինի հարմարվել 12 ժամի չհասնող ցերեկվան ու գիշերվան:

Օրգանիզմի արտաքին և ներքին միջավայրի տատանումների նկատմամբ զգայուն են հատկապես գլխուղեղի կեղևի բջիջները: Կենսաբանական պրոցեսների՝ օրական ռիթմի հիմնական դրսևորումներից է պարբերական քնի միջոցով ուղեղի բջիջների պահպանումը հոգնությունից: Ահա ինչու օրգանիզմի բոլոր համակարգերի և, հատկապես, կենտրոնական նյարդային համակարգի նորմալ գործունեությունն ապահովող հիմնական բիոռիթմը քնի և արթուն մնալու ռիթմն է:

Մարդու օրգանիզմում պարբերական տատանումների է ենթարկվում ֆիզիոլոգիական պրոցեսների մեծ մասը: Այսպես, ջերմաստիճանի տատանումների ուսումնասիրությունը ցույց է տվել, որ օրվա ընթացքում այն տատանվում է 36-ի և 37-ի միջև, ընդ որում, ժամը 12—13-ին այն բարձրանում և այդ աստիճանի վրա է մնում մինչև 16—20-ը, ապա աստիճանաբար իջնում և առավոտյան մոտ ժամը 4-ին հասնում է նվազագույնի: Ջերմաստիճանի տատանումներին զուգահեռ տատանվում է կլանվող թթվածնի և օրգանիզմից արտազատվող ածխաթթվի քանակությունը: Առողջ մարդու զարկերակային ճնշումն առավոտյան ավելի ցածր է, քան երեկոյան (միջինը՝ 10 մմ-ով առավելագույնը, 5 մմ-ով՝ նվազագույնը): Հիպերտոնիկ հիվանդությունների նախնական շրջանում զարկերակային ճնշման տատանումներ օրվա ընթացքում զգալիորեն ուժեղ են լինում: Այդ երևույթի պատճառը վեգետատիվ նյարդային համակարգի տոնուսի ցիկլային փոփոխությունն է: Հիպերտոնիկ հիվանդության ժամանակ նման փոփոխությունները շատ ուժգին են արտահայտված: Հաստատված է, որ առողջական վիճակում օրական տատանումներ նկատվում են և հիվանդ մարդկանց մոտ: Այսպես, սրտանոթային սուր հիվանդություններն առավել մեծ քանակությամբ լինում են օրվա երկրորդ կեսին (մոտավորապես ժամը 14—24-ը): Այդ բացատրվում է հավանաբար նրանով, որ հիվանդության ընթացքում թուլացած սրտանոթային համակարգը օրվա առաջին կեսում հեշտ է դիմանում ծանրաբեռնվածությանը:

Հետաքրքրական տվյալներ են կուտակվել մոտ երկու տասնյակ տարի առաջ ստեղծված նոր դեղագիտության՝ ֆարմակոգենետիկայի կողմից, որը լուծում է դեղորայքային անհատական բուժման տեսական ու գործնական խնդիրները: Այսպես, օրինակ, փորձերի միջոցով հաստատված է, որ սպիտակ մկներին 1 կգ քաշին 0,175 գրամ դոզայով ներարկված քնաբեր դեղը (բարբիտալ-նատրի) նրանց քուն է բերում ձմեռը վեցժամյա, գարնանը՝ 8, ամռանը՝ 4, աշնանը՝ 3-ժամյա: Հետևաբար, դեղորայքի ներգործությունն առավել տևական է ձմռանը և գարնանը, նվազագույն՝ ամռանը և, հատկապես, աշնանը: Հաստատված է, որ քնաբեր դեղորայքի (բարբիտուրատների) ներգործման հետևանքով քնի տևողության սեզոնային տատանումները նույնատիպ կենդանիների մոտ կարող են հասնել 100 տոկոսի: Նովոկայինի հակաբորբոքային ներգործությունը հատակ արտահայտվում է գարնանը, թույլ՝ աշնանը:

Մահացության առավել մեծ և փոքր ռիթմերի գոյությունը հայտնի է դեռ Հիպոկրատի ժամանակներից: Ահա և ժամանակակից հետազոտողների դիտարկումները: Եթե մկներին 4 ժամը մեկ ենթարկեն վնասակար գործոնների (ռենտգենյան ճառագայթահարման, ուժեղ աղմուկի, միկրոբային թույնի, ուժգին ազդող ռեղորայքի) ներգործության, կպարզվի, որ որոշակի ժամի ընդունված թույնի միևնույն դոզան մահացու կլինի մկների 80 տոկոսի համար: Իսկ երբ այն տրվի 12 ժամ շուտ կամ ուշ, կենդանիների 80 տոկոսի համար այն կարող է անվնաս լինել:

Ֆրանսիական մամուլում հրապարակված էին հետաքրքրական տվյալներ: Համապատասխան փաստաթղթերի հիման վրա Փարիզի կլինիկաներից մեկում ուսումնասիրված է 6 տարվա ընթացքում հիվանդների 8111 մահացու դեպք: Մահվան յուրաքանչյուր պատճառի համար հաշվարկել են օրական և տարեկան ռիթմի ակրոֆազը (առավելագույն վերինը), միջին մակարդակը և դրա հարաբերությամբ՝ ամպլիտուդան: Պարզված է, որ տարեկան ռիթմում ակրոֆազը չարորակ ուռուցքների դեպքում համընկնում է դեկտեմբեր, անոթաուղեղային խախտումների և սրտի արյունա-

տար անոթների խանգարումների դեպքում՝ փետրվար ամիսներին: Ինքնասպանությունների մեծ մասը տեղի է ունենում մայիս—հունիս ամիսներին: Մահացության օրական ռիթմն առավել բարձր է ժ. 15-ին սրտի արյունատար անոթների խանգարման ժամանակ, և 5-ին՝ վարակիչ հիվանդությունների: Ընդհանուր մահացության պիկ ժամը 7-ի մոտերքն է:

Կենդանիների և մարդկանց օրական պարբերացման ուսումնասիրությունը ցույց է տվել, որ օրվա ընթացքում շատ ֆունկցիաներ ունեն օրինաչափ տատանումներ. շատ գիտնականներ այդ համարում են Երկրի՝ իր առանցքի շուրջը պտտվելու էվոլյուցիայի ընթացքում օրգանիզմի հարմարվողականության արդյունք: Գրանցված են ժամանակի առումով սրտի գործունեության, շնչառության, փոխանակման պրոցեսների խիստ կրկնվող ուժգնացում և թուլացում: Նշված են արթնանալու տարբեր փուլերում մարդկանց ընդհանուր աշխատունակության նվազում կամ մեծացում: Տեղի են ունենում համարյա բոլոր ֆիզիոլոգիական պրոցեսների ինտենսիվության ռիթմիկ տատանումներ:

Մարդու և կենդանիների ընդհանուր վարքագծի դիտարկումները, բնական և արհեստական պայմաններում օրվա տարբեր ժամերին նրանց ֆիզիոլոգիական տարբեր պրոցեսների գրանցմամբ, հնարավորություն ընձեռեցին ստանալու տվյալներ, որոնք, մի կողմից՝ վկայում են օրական ֆիզիոլոգիական ռիթմերի կայունության, մյուս կողմից՝ դրանց փոփոխականության (նոր ռիթմին օրգանիզմի հարմարվողականության) մասին: Ապացուցվել է, օրինակ, որ ինքնաթիռում մի քանի ժամային գոտիներ անցնելիս խախտվում է մարդու օրգանիզմի բիոռիթմերի բնական պարբերականությունը: Նոր պայմաններին հարմարվելը շարունակվում է մի քանի օր: Անհրաժեշտ է հաշվի առնել այդ միջմայրցամաքային թռիչքների ժամանակ:

Տվյալներ կան այն մասին, որ սպորտսմենների մարզումների ժամանակի համապատասխանեցումը նյութափոխանակության ռիթմին, որը համընկնում է ժամը 12—15-ին, հնարավորություն է ընձեռում 11 տոկոսով ավելացնելու ուժը, իսկ սովորական մարզումների ժամանակ, երբ հաշվի է առնվում շաբաթական ցիկլը, մարզումները մկանների ուժն ավելացնում են ընդամենը 4 տոկոսով:

Նյարդաբջիջների բիոլոգիական ժամերին հատուկ են նյութափոխանակության տատանումները վայրկյանի տասներորդական և հարյուրերորդական մասով: Այդ ռիթմերը դրսևորվում են բջիջների հակազդման հատկությունների փոփոխմամբ: Դրանցով էլ պայմանավորվում են պսիխոֆիզիոլոգիական որոշ օրինաչափություններ— պարզ և բարդ զգայաշարժական ռեակցիաների տևողությունը, զգայության մեծության պայմանավորվածությունը ազդանշանների ուժգնությամբ, հիշողության ինֆորմացիոն ծավալի առավելագույն նշանակությունը և այլն: Բիոռիթմերի ուսումնասիրության արդյունքները լայնորեն օգտագործվում են մասնագիտական աշխատանքը կազմակերպելիս, տիեզերական թռիչքների ժամանակ աշխատանքի ու հանգստի ռեժիմը սահմանելիս, սպորտային մարզումների, մրցումների գրաֆիկը կազմելիս և այլն:

Բիոռիթմերի վերաբերյալ հետաքրքրական տվյալներ կան կենդանական աշխարհի ներկայացուցիչների մոտ: Այսպես, օրինակ, ոստրեները խեցին երկփեղկում են մակընթացության ժամանակ, իսկ Կալիֆոռնիայի ափերի մոտ ապրող ձկները՝ «ատերինա գրունիոնը», ձգտում է դեպի ափ և ձկնկիթը դնում ջրագծի ավազի վրա, ամսվա ամեն մի երկու ամենաբարձր մակընթացություններից մեկից ճիշտ 15 րոպե հետո: 1735-ից մինչև 1969 թվականները Կանադայում գտնվող լուսանների թվի ուսումնասիրությունը ցույց է տվել, որ այդ կենդանիների թիվն առավելագույնի է հասնում միջին հաշվով 9,6 տարին մեկ անգամ: Ատլանտյան լուսանները գերբարձր թվաքանակ են ունենում դարձյալ 9,6 տարին մեկ անգամ: Կանադական սպիտակամորթ նապաստակի իլինոյական սպիտակաթև փայտոջիլների, մորեխների, բուերի և բվեճների թիվը գերբարձր է լինում 9,6 տարին մեկ անգամ: Այս թիվը չի վերաբերում բոլոր կենդանիներին: Այսպես, մկների ժանտախտի համաճարակը լինում է չորս տարին մեկ: Մորեխներն ունեն երեք փուլ— 9,2 տարի, 15 տարի, 22,7 տարի: «Սև կրաչկա» թռչունը Վոզնեսենիա կղզում (ոչ հեռու Աֆրիկայի արևմտյան ափից) բազմանում, ճուտեր է ունենում միջին հաշվով 9,6 ամիսը մեկ անգամ, իսկ այլ աշխարհամասերում նույն թռչունն ունի այլ ռիթմեր: Այդ ևս հաստատում է, որ արտաքին միջավայրը վճռական դեր է խաղում բիոռիթմերի ծագման գործում:

Բիոռիթմերի տևողությունը կապված է լույսի և մթության հաջորդման հետ, իսկ դրանց ամպլիտուդայի մեծությունը պայմանավորված է մթնոլորտային գործոններով (ջերմություն, օդի ճնշում, խոնավություն և այլն): Հետևաբար, եղանակների փոխհաջորդման ընթացքում, որի ժամանակ փոխվում են շրջակա միջավայրի բոլոր հատկությունները, ստեղծվում է բույսերի ու կենդանիների կենսագործունեության որոշակի գրաֆիկ: Տարվա ընթացքում արեգակի՝ հորիզոնից ունեցած բարձրության փոփոխությունները և օրվա տևողությունը այն ամենակարևոր ազդանշաններն են, որոնց զգայուն կերպով արձագանքում են մարդը, կենդանիները և բույսերը: Տարվա ընթացքում փոխվում է մարդու մարմնի ջերմաստիճանը, նյութափոխանակության ինտենսիվությունը, արյան շրջանառության համակարգը, արյան և հյուսվածքների բջիջների կազմությունը: Սակայն մարդու օրգանիզմում տեղի ունեցող սեզոնային (եղանակային) ցիկլիկ տատանումներին հետևելն ավելի դժվար է, քան օրականինը, քանի որ եղանակային տարբեր պայմաններում (հյուսիսում և հարավում, լեռներում և հարթավայրերում, ծովափերին և մայրցամաքի կենտրոնական մասերում) դրանք տարբեր կերպ են ընթանում: Օրինակ, հյուսիսում կենդանիների մեծ մասի արյան մեջ հեմոգլոբինի ամենամեծ քանակությունը լինում է ամռանը, իսկ ամենափոքր քանակությունը՝ ձմռանը և գարնան սկզբին:

Մայրցամաքային եղանակային պայմաններում արյան սպիտակ գնդիկների (լեյկոցիտների) առավելագույն քանակությունը նկատվում է աշնանը, իսկ նվազագույնը՝ գարնան վերջին կամ ամռան սկզբին: Գիտնականների մի մասն այդ տատանումները բացատրում է երկրի՝ արեգակի նկատմամբ ունեցած դիրքով և դրա հետ կապված հելիոակտիվ ռադիացիայի փոփոխությամբ: Այլ ուսումնասիրողներ այդ բացատրում են տարվա տարբեր ժամանակներում օրգանիզմի վիտամինահագեցվածության փոփոխությամբ: Նկատվում են նաև ներքին սեկրեցիոն գեղձերի ֆունկցիաների եղանակային տատանումներ:

Հաստատված է, որ մի շարք հիվանդություններ տարբեր կերպ են ընթանում, նայած տարվա եղանակին: Գրիպը, անգինան, թոքերի բորբոքումը, պլևրիտը ունեն սեզոնային ցիկլայնություն, ամենից հաճախ հանդիպում են աշնան, ձմռան շրջանում, տարվա «անկայուն» ժամանակաշրջանում: Թոքերի տուբերկուլյոզը սրվում է գարնանը: Ստամոքսի և տասներկումատնյա աղիքի խոցն արթնանում է գարնանն ու աշնանը: Հիպերտոնիան, ստենոկարդիան սրվում, ինֆարկտը, ուղեղի արնազեղումը հիմնականում լինում են տարվա ցուրտ ժամանակներին և գարնան ու աշնան անցումնային ամիսներին, եղանակի՝ հատկապես բարոմետրային ճնշման սուր, թռիչքային փոփոխությունների, օդի խոնավության, ջերմաստիճանի և քամու սուր փոփոխությունների ժամանակ:

Քանի որ հիվանդների ինքնազգացումը վատթարանում է եղանակի այդ փոփոխություններից առաջ (սովորաբար՝ նախօրյակին կամ 1—2 օր առաջ), հավանաբար, ճիշտ են այն գիտնականները, որոնք մեծ նշանակություն են տալիս մթնոլորտում էլեկտրական պրոցեսների փոփոխություններին: Իմանալով այդ ամենը, ճիշտ խորհուրդների միջոցով կարելի է կանխել հիվանդության նորացումը:

Բիոռիթմերի և դրանց մեխանիզմի բացահայտումը գիտագործնական կարևոր նշանակություն ունի կենսաբանության, ֆիզիոլոգիայի, բժշկության, անասնաբուժության, գյուղատնտեսության, օդագնացության, տիեզերագնացության և մարդկային գործունեության շատ այլ բնագավառների համար: Այս ասպարեզում դեռևս անելիքները շատ են:

## Նամակ խմբագրությանը

*Հարգելի խմբագրություն:*

*Կարդալով «Լենինյան ուղիով» ամսագրի այս տարվա 5-րդ համարը, շատ ուրախացա, որ Հաղթանակի 35-ամյակի կապակցությամբ տպագրվել էր Սիմոն Նալբանդյանի հոդվածը՝ Հայկական 89-րդ լեգենդար դիվիզիայի մասին: Դիվիզիան իրոք համապատասխանում է «լեգենդար» կոչմանը. այն մարտական ուղի է անցել Կովկասյան նախալեռներից—Ղրիմ—Լեհաստան և մասնակցել Բեռլինի փողոցային մարտերին:*

*Հոդվածում կարդացի շատ զոհվածների ու մահացածների անուններ, որոնց շիրիմների առջև ծնկաչոք խոնարհվում եմ:*

*Կարդացի նաև շատ ընկերներիս ազգանունները, որոնց թվում նաև իմ և կնոջս՝ բուժքույր Ն. Միքայելյանի (աշխատանքի վետերան) ազգանունները, որոնցով հպարտանում եմ: Այն հանգիստացավ ռազմահայրենասիրական դաստիարակության մի դաս մեր 5 տղաների, հարսների և 7 թոռների համար, եթե չհաշվենք աշխատանքային ընկերներին, որոնք նույնպես մեծ բավականություն ստացան այդ հայրենասիրական հոդվածից: Որքա՜ն հաճելի է, երբ թափված ջանքերը գնահատվում և տարիներ անց վերհիշվում են:*

*Ձեր միջոցով մեր ընտանիքը սրտագին շնորհակալություն է հայտնում Սիմոն Նալբանդյանին այդ փորձածավալ, բայց հանգամանալի ու բովանդակալից հոդվածի համար և ցանկանում երկար կյանք, ամենայն հաջողություններ:*

*Հաճելի էր նաև ընկ. Հ. Սիմոնյանի «Մայիսյան ժողովրդական հերոսամարտը» հոդվածը, որտեղ գրված է «Վարդան զորավար» զրահագնացքի, Սարգիս Մուսայելյանի մասին... Նորից կենդանի իմ առջև կանգնեց հանրությանը հայրս՝ այդ զրահագնացքի մեքենավար Արգար Սողոմոնի Միքայելյանը... ու խոր հուզմունքով ուղարկեցի ձեզ այս նամակը:*

Հարգանքներով՝ Ս. Մ. Կիրովի անվան «Նաիրիտ»
Գ. Ա. Մ. աշխատանքի պատվավոր վետերան
Ա. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ




Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 04813 Պատվեր 1729 Թղթի չափսը 70×108¹/16: Տիրաժ՝ 15.832 Գինը՝ 20 կոպ.*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 30/VII 1980 թ.*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խասհակյան փող. № 28:*




## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՍՍՀՄ օրենքը ՍՍՀՄ գերագույն դատարանի մասին, ՍՍՀՄ դատախազության մասին, ՍՍՀՄ-ում պետական արբիտրաժի մասին, ՍՍՀՄ-ում փաստաբանական ծառայության մասին: *«Հայաստան» հրատ., 1980:*

Մ. ՀԱԿՈԲՅԱՆ— Սովետական Հայաստանի սոցիալ-տնտեսական նվաճումները և բուրժուական «ճննադատության» սնանկությունը: *Ե., «Գիտելիք» հրատ., 1980:*

Յ. ՎԱԳԱՆՈՎ— Աչ թեքումը ՀամԿ(բ)Կ-ում և նրա ջախջախումը: *«Հայաստան» հրատ., 1980:*

Հ Ր. ԱՃԱՌՅԱՆ— Հայերեն արմատական բառարան: *Հ. Դ.: Փ—Ֆ: Հայագիտական ուսումնասիրությունների մատենաշար: ԵՊՀ հրատ., 1980:*

Վ. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ— Մարտիրոս Սարյանի էսթետիկական հայացքները: *Ե., ԳԱ հրատ., 1980:*

Հ. ԵԳԱՆՅԱՆ— Իրանական պատմագրությունը Իրանում իմպերիալիստական տերությունների գաղութատիրական քաղաքականության մասին *(19-րդ դարի երկրորդ կես): Ե., ԳԱ հրատ., 1980:*

Ս. ՀԱԿՈԲՅԱՆ— Հասարակական գիտակցությունը և նրա ձևերը: *ԵՊՀ հրատ., 1980:*

Վ. ԼԵՎԻ— Ինքնատիրապետման արվեստը: *«Հայաստան» հրատ., 1980:*

Վ. ԼԻՍՈՎՍԿԻ— Ինչ է նշանակում լինել ժամանակակից: *«Հայաստան» հրատ., 1980:*

В. И. ЛЕНИН — **Избранные произведения.** В трех томах. Т. 3. Октябрь 1918—март 1923 г. М., Политиздат, 1980.

В. И. ЛЕНИН — **Империализм, как высшая стадия капитализма.** (Популярный очерк). М., Политиздат, 1980.

**В. И. Ленин, КПСС о социалистическом соревновании.** Изд. 2, испр. и доп. М., Политиздат, 1980.

Б. ПОНОМАРЕВ — **Великая жизненная сила ленинизма.** М., Политиздат, 1980. **СССР и проблемы межгосударственного сотрудничества.** М., «Междунар. отношения», 1980.

Б. ЛЕЙБЗОН — **Международное единство коммунистов: исторический опыт, принципы, проблемы.** М., Политиздат, 1980.

М. ГРИГОРЯН — **Развитие структуры рабочего класса Армении в период зрелого социализма.** Изд. АН Арм. ССР, 1980.

Д. КЕРИМОВ — **Демократия развитого социализма.** М., Политиздат, 1980.

А. КАЛАНТАР — **Красота истины.** Об эстетическом начале научного познания. Изд. АН Арм. ССР, 1980.

Ю. ФЛАКСЕРМАН — **В огне жизни и борьбы.** Воспоминания старого коммуниста. М., Политиздат, 1980.

**Великая Отечественная в письмах.** Сборник. М., Политиздат, 1980.

П. ГУРЕВИЧ — **Буржуазная идеология и массовое сознание.** М., «Наука», 1980.

Б. БАДМАЕВ — **Элементы психологии и педагогики в партийной пропаганде.** Изд. 2, доп. и перераб. М., Политиздат, 1980.

Н. ГВОЗДЕВ — **НТР: проблемы стимулирования труда.** М., «Мысль», 1980.

В. ПАНЬКОВ — **Экономические теории современного социал-реформизма.** М., «Мысль», 1980.

Г. ХАЧАТРЯН — **Нормативное управление экономикой.** Изд. «Айастан», 1980.

Ф. ГОРЮНОВ — **В петле инфляции.** Серия «Экономика капитализма сегодня». М., Политиздат, 1980.

И. БОДЮЛ — **По пути интеграции общественного производства на селе.** М., Политиздат, 1980.

Գինը՝ 20 կ.
Индекс 77783

ISSN 0130—8114

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԴԵՏԱԼՆԵՐՆ ԱՎԵԼԻ ԱՄՈՒՐ ԿԼԻՆԵՆ

*Բելոռուսիայի գիտությունների ակադեմիային առընթեր հասարակական հիմունքներով գործում է կայունացնող տեխնոլոգիայի հանրապետական կենտրոնը, ուր ընդգրկված են ֆիզիկայի ինստիտուտները, «Բելավտոմազ» միավորումը, Մինսկի Վ. Ի. Լենինի անվան տրակտորների գործարանը և այլ հաստատություններ։ ԲՍՍՀ ԳԱ ինստիտուտներում մշակվել են մետաղների մակերեսի ու ներքին կառուցվածքի ամրացման ֆիզիկայի ժամանակակից մեթոդների տեսական հիմքերը։ Դրանցից են՝ դետալների ամրացման լազերային բարձրարդյունավետ եղանակը, փոշեմետալուրգիայի ժամանակակից մեթոդները։*

*Բելոռուս գիտնականների և մասնագետների ստեղծած սարքերն ու տեխնոլոգիական գծերն արդեն բանում են ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերում։ Միայն գյուղտնտտեխնիկայի պետական կոմիտեում արտադրություն է «վերադարձվում» կոմբայնների, մեքենաների, տրակտորների մաշված մասերի ավելի քան մեկ քառորդը։ Դա հնարավորություն է ընձեռում տնտեսելու 1000 տոննա արժեքավոր մետաղ, 2—3 անգամ մեծացնելու ագրեգատային հանգույցների օգտագործման տևողությունը, հետևաբար նաև՝ տեխնիկայի շահագործման ժամկետը։*

## ԱՐՅԱՆ ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ԱՆԱԼԻԶԸ

*Արյան մեջ կալիումի և կրածնի խտության բարձրացումը ախտաբանական հայտանիշ է։ Ուստի այդ իոնների խտության աստիճանը ժամանակին որոշելը էական նշանակություն ունի տարբեր հիվանդությունների ախտորոշման համար։ Անգլիայում, ԱՄՆ-ում և Ճապոնիայում նախագծվել են կայծքարային ամբողջական միկրոհանգույցների վրա ամրացվող հաղորդիչներ՝ քիմիական հատուկ ծածկույթով։ Այդ փոքրաչափ հաղորդիչները մրտցրվում են երակի մեջ և այնտեղ ծածկույթի նյութի և արյան մեջ լուծված աղերի միջև կատարվում է քիմիական փոխներգործություն։ Գոյացած կապերի թիվը, բնականաբար, պայմանավորված է աղերի կուտակմամբ, իսկ քիմիական կապերով պայմանավորված է ամբողջ միկրոհանգույցի մակերեսի էլեկտրական պոտենցիալը։ Փաստորեն նախնական ախտորոշման համար բժիշկն առանց արյան անալիզի որոշում է հիվանդությունը։ Բավական է նշել ինդիկատորի վրա պոտենցիալի հզորությունը։*

## «ԱԼՄԵՏ» ԿՏՐԻՉՆԵՐ

*Երևանի արհեստական ալմաստների և ալմաստե գործիքների գործարանի աշխատակիցները մշակել են ալմաստե-մետաղական կոմպոզիցիոն «Ալմետ» նոր նյութը։ Ալմաստե կտրիչները կրկնակի էժան են ալմաստից։ Դրանք կարելի է կիրառել ալյումինե ձուլվածքների, կերամիկական իրերի, լիտոգրաֆիական քարի ճշգրիտ մշակման համար։*

## ՈՒՂԵՂԻ ԱՋ ԿԻՍԱԳՈՒՆԴՆ ԱՎԵԼԻ ՇՈՒՏ Է ԾԵՐԱՆՈՒՄ

*Հիշողության ընթացքն ուսումնասիրելիս նման եզրակացության են հանգել Հավայան կղզիների համալսարանի մի խումբ հոգեբաններ։ 44-ից մինչև 79 տարեկանների քննվող խմբին ականջակալների միջոցով թելադրում են մի շարք թվեր՝ մեկ ձախ, մեկ աջ ականջին, ապա խնդրում են հիշել թվերը։ Մարդու լսողական նյարդերն անցնում են հետևյալ ուղիով. այն, ինչ լսում ենք ձախ ականջով, հիմնականում ընկնում է ուղեղի աջակողմյան կիսագունդը, իսկ ձախ կիսագունդը ինֆորմացիա է ընդունում աջ ականջով։ Պարզվում է, որ ավելի լավ է հիշվում ձախ կիսագնդի լսածը. ուղեղի կիսագնդերի միջև աշխատանքի բաժանման ժամանակ նրան բաժին է ընկնում բառային ինֆորմացիայի մշակումը։ Տարիների հետ հիշողությունը վատանում է։ Անակնկալն այն է, որ տարիքի հետ կապված հիշողության վատացումն առավել նկատելի է այն դեպքում, երբ թվերը թելադրվում են ձախ ականջով։ Այսինքն՝ աջ կիսագունդն ավելի շուտ է ծերանում։*